ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ



5

ՄԱՅԻՍ

ԵՐԵՎԱՆ 1958

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 5
ՄԱՅԻՍ
1958 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



### ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԻ ՄԱՍԻՆ

СОДЕРЖАНИЕ



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐԱԶԱՏ ԳՈՐԾԸ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի բոցերում ծնվեց ու առնացավ լենինյան կոմերիտմիությունը: Դասակարգային դառը մարտերում թրծվեց նրա հաղթունակ ոգին: Անձնուրաց մաքառելով հին աշխարհի դեմ, նա հերոսական շատ էջեր գրեց կոմունիզմի համար մարտնչողների գրքում: Հաստատակամ ընթանալով Կոմունիստական պարտիայի նշած ուղիով, անշեղորեն կենսագործելով Լենինի պատգամները, լենինյան կոմերիտմիությունը թե՛ քաղաքացիական կռիվներում, թե՛ Հայրենիքի ինդուստրացման և թե՛ կոլեկտիվացման աշխարհաշեն գործերում մասսայական սխրագործությունների անթառամ օրինակներ տվեց: Տասնյակ միլիոնավոր երիտասարդներին ներարկելով լենինյան ստեղծարար ոգին, նա ընձեռնեց և մեր կյանքում արմատավորեց սոցիալիստական մրցությունն իբրև մեր զարգացման խոշոր գործոն: Եվ վիրջապես, իր շարքերից ելած տասնյակ հազար հերոսների արյամբ լենինյան կոմերիտմիությունը սրբագործեց սոցիալիստական Հայրենիքի պաշտպանի իր պատվաբեր դերը:*

*Հանդիսանալով Կոմունիստական պարտիայի հավատարիմ և մերձավոր օգնականը, լենինյան կոմերիտմիությունն անցած քառասուն տարիներին եղել է և մնում է կոմունիզմ կառուցող մատաղ սերնդի դաստիարակության հոյակապ դպրոցը, որի կռած ու կոփած մարտիկները դիմացել են երբևէ մարդկության հայտնի ամենածանր փորձություններին: Սնվելով ռևոլյուցիոն տրադիցիաների լենինյան ակունքներից, կոմերիտմիությունը շարունակում է բարձր ծածանել իրեն վայել լենինյան դրոշը, օրավուր գործի վերածելով բոլշևիկյան փառապանծ ՍՄԿՊ-ի լուսավոր գաղափարները:*

*Հայտնի է, որ վերջերս կայացած ՀամԼԿԵՄ XIII համագումարում ունեցած իր ելույթում ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ս. Խրուշչովը մատաղ սերնդի դաստիարակությանը նվիրված մի շարք արմատական և խիստ այժմեական հարցեր արծարծեց, որոնք նոր լիցք ու նոր բովանդակություն են հաղորդում կոմերիտմիության գործունեությանը: Ելնելով այդ ելույթում տեղ գտած հրատապ խնդիրներից և ՀամԼԿԵՄ XIII համագումարի որոշումներից, կոմերիտմիությունը մեծ և կարևոր անելիքներ ունի այժմ:*

*Գոհունակությամբ պետք է հիշատակել, որ ակտիվորեն մասնակցելով մեր անծայրածիր Հայրենիքի բարգավաճման գործին, լենինյան կոմերիտմիությունը շեշտակի շրջադարձ է կատարել անտեսական շինարարության ասպարեզում: Արձագանքելով պարտիայի կոչին, մոտ երեք հարյուր հազար կոմերիտականներ մեկնեցին Սիբիր, Արևելք, Հյուսիս և Դոնբաս, որտեղ վճռական դեր խաղացին մեծագույն կառույցների շինարարության գործում: Երիտասարդ այդ հայրենասերների ջանքերի շնորհիվ, բառացի մի քանի տարում յուրացվեց*

36 միլիոն հեկտար խամ ու խոպան հող, որը մեր երկրի համար հացահատիկի հարուստ շտեմարան դարձավ։ Ինչպես նշվեց ՀամԼԿԵՄ XIII համագումարում, կոմերիտական գանձարկղն է մուծված հինգ միլիարդից ավելի գումար։ Հայաստանի կոմերիտմիությունը 1957 թ. մուծել է 80 միլիոն ռուբլի։ Անասնաբուծության զարգացմանը նպաստելու համար ֆերմաներն են ուղարկված 650 հազար պատանիներ ու աղջիկներ։ Ամենուր կոմերիտմիությունը երիտասարդական թարմ շնչով օգնում է պարտիային լուծելու մեր երկրի առջև ծառացած գլխավոր տնտեսական խնդիրը՝ շնչին ընկնող արտադրանքի տեսակետից մոտակա տարիներին հասնել և անցնել առաջավոր կապիտալիստական երկրներից։

Բայց և այնպես այսօր էլ կոմերիտական կազմակերպությունները երբեմն չեն կարողանում երիտասարդությանը հաղորդակից անել պրակտիկ գործին, կենդանի, կազմակերպչական աշխատանքը փոխարինում են բանաձևերով, երբեմն լրջորեն չեն վերաբերվում ստանձնած պարտավորություններին։ Անվիճելի է, որ տակավին անբավարար աշխատանք է տարվում երիտասարդության շրջանում նոր տեխնիկային տիրապետելու և արտադրության նորարարների փորձը արմատավորելու ուղղությամբ։ Մինչև օրս որոշ գյուղական կոմերիտական կազմակերպություններ նախաձեռնություն հանդես չեն բերում գյուղատնտեսության տարբեր ճյուղերի արագ զարգացման բնագավառում։ Սոցմրցման ասպարեզում եղած առաջավոր փորձի արմատավորման փոխարեն կոմերիտմիության որոշ օղակներում դեռևս ավելի շատ աղմկում են այս կամ այն առաջավորի վերաբերյալ, քան կիրառում նոր փորձը։ Մեր ռեսպուբլիկայում վատ է դրված երիտասարդության տեխնիկական ուսուցման գործը։ Չի կարելի բավարար համարել երիտասարդ կադրերի մասնակցությունը շինարարության մեջ։ ԼԿԵՄ Երևանի քաղկոմը մինչև օրս չի կատարել իր ստանձնած պարտավորությունը՝ շինարարությանը հազար երիտասարդներ ուղարկելու վերաբերյալ։ Անասնապահության գծով ռեսպուբլիկայում վերջին տարիներում գործի դրված հինգ հազար կոմերիտականների քանակը գոհացուցիչ չէ։ Չի կարելի չնկատել այն կարևոր թերությունը, երբ կոմերիտական կազմակերպությունները հաճախ անտարբեր են աշխատանքային կարգապահության խախտողների, դատարկապորտների և խոտանարարների նկատմամբ, որի պատճառով խոշոր վնասներ է կրում սոցիալիստական տնտեսությունը։

ՍՄԿԿ XX համագումարը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան հզորացնելու առնչությամբ նոր և պատասխանատու խնդիրներ դրեց Լենինյան կոմերիտմիության առջև։ Անշեղորեն կենսագործելով այդ խնդիրները, կոմերիտմիության յուրաքանչյուր կազմակերպություն պետք է լիովին հասնի այն բանին, որպեսզի նոր սերնդի դաստիարակության ուղին ու ծուծը լենինյան ջանասիրական ոգու պատվաստումը լինի։ Երիտասարդության և պատանեկության դաստիարակության հետ առնչություն ունեցող յուրաքանչյուր ոք, նամանավանդ կոմերիտմիության ակտիվը, պետք է քաջ գիտակցի այն ճշմարտությունը, որ դաստիարակության գործի դրվածքը պետք է ներծծված լինի հանրօգուտ աշխատանքի ազնվացնող հատկությամբ։

Պայքարելով ֆիզիկական աշխատանքի նկատմամբ աղայական, արհամարհական վերաբերմունքի դեմ, կոմերիտմիությունը կոչված է այնպես վարելու իր գործունեությունը, որ միջնակարգ և յոթամյա կրթություն ստացած



պատանիները սիրով զբաղվեն արտադրության մեջ հասարակական ազնիվ աշխատանքով։ Կոմերիտմիությունը պետք է պատանեկությանը, սկսած վաղ մանկությունից, դաստիարակի այն ոգով, որ «ով ընդունակ է և կարող է աշխատել, բայց չի աշխատում, նա գողանում է նրանցից, ովքեր աշխատում են, այսինքն՝ ապրում են այն մարդկանց հաշվին, ովքեր ստեղծում են նյութական և հոգևոր արժեքներ։ Հարկավոր է հասարակական անհանդուրժողության մթնոլորտ ստեղծել նրանց նկատմամբ, ովքեր արհամարհում են աշխատանքը։

— Յուրաքանչյուր մարդ, ապրելով կոմունիստական հասարակարգում, պետք է իր աշխատանքով մի լումա ներդնի այդ հասարակարգի կառուցման և հետագա զարգացման մեջ» (Ն. Խրուշչով)։

Այսպիսով, Լենինյան կոմերիտմիությունը մեծ պարտականություն ունի իր վրա՝ ամեն կերպ նպաստել դպրոցի վերակառուցմանն այն տեսանկյունով, որ դպրոցը լիովին ծառայի կյանքի առաջընթացին։ Սրա հետ մեկտեղ, կոմերիտմիությունը ժողտնտխորհի գործակցությամբ պետք է հոգա դպրոցն ավարտած պատանիներին աշխատանքի ուղարկելու մասին։

Մեկընդմիշտ վերացնելով գաղափարական-դաստիարակչական աշխատանքի կտրվածությունը պրակտիկայից, հարձակողական պայքար վարելով թշնամի իդեոլոգիայի և բուրժուական մորալի մնացուկների դեմ, կոմերիտմիությունը պետք է սիստեմատիկ և համառ դաստիարակչական աշխատանքով հասնի նրան, որպեսզի չլինեն ակամա բուրժուական ստահոդ պրոպագանդայի ծուղակն ընկնող առանձին երիտասարդներ, որոնք գերի են դառնում մարքսիզմ-լենինիզմին խորթ հասկացողություններին ու ճաշակներին։ Վաղուց է հասել ժամանակը արմատախիլ անելու այն ողորմելի հայացքը, ըստ որի արտադրության մեջ պետք է աշխատեն երկրորդ կարգի մարդիկ, այլ ոչ բոլորը։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում պետք է առանձին ուշադրություն հատկացնել այն բանին, որպեսզի լիովին օգտագործվեն ռևոլյուցիոն տրադիցիաները, որպեսզի յուրաքանչյուր երիտասարդ և պատանի խոր հարգանքով վերաբերվի մեր պարտիայի և պետության հիմներին, մեր պետական դրոշին։

Լայնորեն օգտագործելով մատաղ սերնդի ռոմանտիկան, յուրաքանչյուր կոմերիտական կազմակերպություն պարտավոր է հասնել այն բանին, որ երիտասարդների ֆանտազիան ու ձգտումները ամենուր նպաստեն աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, մթերքների առատությանը և կուլտուրայի բարգավաճմանը։ Եթե յուրաքանչյուր կոմերիտական (քաղաքում և գյուղում), ամեն օր գործնականապես լուծի թեկուզ ամենահասարակ և առօրյա մի խնդիր, դա կլինի մեծ ու շնորհակալ աշխատանք, որն արժանի է հասարակական խրախուսանքի։

Վերցնենք ՄՏԿ-ների վերակազմման հարցը։ Այս մեծագույն հասարակական ձեռնարկմամբ նոր ու լուսավոր հեռանկարներ են բացվում հարյուր հազարավոր երիտասարդների առջև՝ անմիջականորեն մասնակցելու գյուղի տնտեսության վերելքին։ Օգնության գալով կոլտնտեսական գյուղին, իրենց ուշիմ և բանիմաց մեխանիզատորներով կոմերիտական կազմակերպությունները խոշոր չափով ազդակելու են գյուղի շեշտակի վերելքին։ Այժմ արդեն ավելի են

ընդարձակվում տեխնիկայի տիրապետման ու կատարելագործման ընդունակ մեծաթիվ կադրերի առաջխաղացման հասարակական շրջանակները։

Սովորեցնելով երիտասարդներին Լենինի պես խոր համոզմամբ և հավատով նայել ապագային, կոմերիտմիությունը կոչված է նաև երիտասարդներին սովորեցնելու լենինաբար մաքառել մեր այսօրվա երջանկության համար։

Սովետական երիտասարդության կոմունիստական դաստիարակության լավագույն միջոցներից մեկն էլ պատանիների և աղջիկների խոստումնալի նախաձեռնության հրահրումն է, մի բան, որը, դժբախտաբար, շատ տեղերում անբավարար չափով է արվում։ Մինչդեռ ջահելների ծփանք տվող ձեռներեցությունը կարող է լեռներ շարժել. նրանց եռացող կյանքի հորձանքը հսկայական չափով կնպաստի մեր առաջընթացին, կթաղի ֆորմալիզմի մնացորդները և ձանձրույթը կոմերիտմիության պրակտիկայում։ Սակայն, բարձրացնելով իր բոլոր օղակների ստեղծագործական ակտիվությունը, կոմերիտմիությունը երբեք չպետք է մոռացության մատնի առանձին երիտասարդների կյանքն ու վերապրումները, հոգա ոչ միայն նրանց արտադրական աճի, այլև կուլտուրական ծաղկման վերաբերյալ։ Դեռ ավելին։ Յուրաքանչյուր կոմերիտական կազմակերպություն պարտավոր է ամենօրյա հոգատարությամբ օգնել որոշ երիտասարդների՝ անցավ հաղթահարելու կյանքի դժվարությունները, ձախորդությունները, համառորեն պայքարել քաղքենիական բարքերի դեմ, ընկերական լուրջ քննադատությամբ վերացնել որոշ երիտասարդների մոտ նկատվող հակահասարակական արարքները։

Այժմ երիտասարդության • դաստիարակությունը պետք է լինի առավել կոնկրետ և ուղղված իմպերիալիզմի իդեոլոգիական գրոհների դեմ. այս նպատակով կիրառվող բոլոր միջոցները պետք է երիտասարդներին ներարկեն սրբազան ատելություն դեպի բուրժուական նեխած գաղափարախոսությունը, դեպի մարքսիզմ-լենինիզմի ամեն կարգի ռևիզիան։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորներին գոհունակություն է պատճառում այն հանգամանքը, որ Շամշադինի շրջանի երիտասարդները ոչ միայն բարձր որակով են խնամում իրենց այգիները, այլև եգիպտացորենի մշակմամբ արժանացան համամիութենական երկրորդ մրցանակի։ Սակայն չի կարելի անտեսել Աշտարակի, Կոտայքի կոմերիտականների վատ աշխատանքը այգեգործության բնագավառում։

Հայտնի է, որ Հայաստանի Լենինյան կոմերիտմիության XVIII համագումարը պարտավորություն ստանձնեց լինելու թռչնաբուծության և խոզաբուծության շեֆը։ Բայց թե՛ ՀԼԿԵՄ Կենտկոմը և թե՛ գյուղական շրջկոմները գրեթե մոռացության տվին իրենց պարտավորությունը։

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Ս. Թովմասյանը քանիցս իր ելույթներում արծարծել է այն հարցը, որ անհրաժեշտ է ճանապարհների շուրջը տնկել ընկուզենիներ։ Պետք էր սպասել, որ Հոկտեմբերյանի, Արտաշատի, Էջմիածնի, Վեդու, Իջևանի, Կիրովականի կոմերիտմիության շրջկոմները կրնձեռնեին այս միանգամայն շնորհակալ և խիստ օգտակար խնդրի լուծմանը։ Բայց այս հարցում ևս գրեթե ոչինչ շոշափելի չարվեց։ Անցյալ տարի կայացած երիտասարդ այգեգործների ռեսպուբլիկական հավաքի պարտավորությունների կատարումն էլ մնաց աննախանձելի վիճակում։

Այս ամենի գլխավոր պատճառն այն է, որ դեռևս պատշաճ մակարդակի վրա չի գտնվում կոմերիտմիության գաղափարական կազմակերպական աշ-



խատանքը, դեռևս նրա գործունեության թույլ օղակներից մեկն է մնում քաղաքական լուսավորությունը։ Թեև ռեսպուբլիկայի կոմերիտմիության քաղաքական լուսավորության ցանցում այս տարի ցուցակագրված են 82825 երիտասարդներ, բայց և այնպես այդ բնագավառում անբավարար է տարվող աշխատանքը։ Մարքսիզմ-լենինիզմն իր ամբողջ հարստությամբ պետք է դառնա կոմերիտական լուսավորության ցանցի խմբակների, սեմինարների, ռեֆեբատների, դասախոսությունների սիստեմատիկ ուսումնասիրության առարկա։ Պարտիական կազմակերպությունների օգնությունն այս բնագավառում պետք է լինի ավելի կանոնավոր, քան մինչև օրս է եղել։

Իր գործունեության հիմնական խնդիրներից մեկը դարձնելով երիտասարդությանը ժողովուրդների բարեկամության և ինտերնացիոնալիզմի ոգով կրթելը, կոմերիտմիությունը պետք է անդուլ աշխատանքով բարձրացնի իր անդամների գաղափարական-կուլտուրական մակարդակը, կուլտուրական օջախների, ակումբների և ինքնագործ խմբակների լիակատար օգտագործմամբ։ Ամեն կերպ երիտասարդ սերնդին պատվաստելով ազնիվ բարքեր ու սովորույթներ, կոմերիտմիության կազմակերպությունները պետք է լրջորեն զբաղվեն երիտասարդության էսթետիկական դաստիարակությամբ։ Այստեղ է, որ լայնորեն մեկ պետք է ծավալվի երիտասարդության ինքնագործունեությունը արվեստի բոլոր ճյուղերի տիրապետման իմաստով։

Անհրաժեշտ է, որ կոմերիտմիության կազմակերպությունները մեծ պատասխանատվությամբ վերաբերվեն երիտասարդության ֆիզիկական կոփվածության գործին և արմատապես լուծեն մասսայական ֆիզկուլտուրայի հարցը, որի հիման վրա նոր բարձրության հասցնեն սպորտային վարպետությունը։ Ամրացնելով ֆիզկուլտուրայի կոլեկտիվները, կոմերիտմիությունը նրա շարքերում պետք է ներգրավի երիտասարդության հոծ զանգվածներ, որոնք ձեռք բերեն անհրաժեշտ կոփվածություն։

Անցյալ տարվա երիտասարդական ֆեստիվալը սքանչելի կերպով ապացուցեց, թե ինչպիսի կուլտուրական գանձեր, որքան տաղանդներ կան թաքնված ժողովրդի ծոցում։ Ուրեմն պետք է շարունակել ու հարատև դարձնել երիտասարդության գեղարվեստական ինքնագործունեությունը։ Այդ գործը հաջողությամբ կպսակվի, եթե ռեսպուբլիկայի Կուլտուրայի մինիստրությունը պատշաճ նախաձեռնությամբ արձագանքի երիտասարդ ձայներին։

Ամեն կերպ ծավալելով Երևանի Երիտասարդի պալատի կառուցման աշխատանքները, կոմերիտմիությունը այժմ պետք է ավելի շատ զբաղվի բուհերի երիտասարդության հարցերով և հասնի նրան, որ բուհերի երիտասարդությունը կյանք մտնի բարձր կուլտուրայով և մեծ գաղափարայնությամբ։

Գաղափարական-դաստիարակչական իր աշխատանքները զուգորդելով արհմիությունների, կուլտուրայի հիմնարկների, ֆիզկուլտուրայի և այլ ստեղծագործական կազմակերպությունների հետ, կոմերիտական կազմակերպությունները հատուկ ուշադրություն պետք է դարձնեն սովետական ռազմական ուժերի հանդեպ իրենց ստանձնած շեֆության աշխատանքին, նպատակ ունենալով ԴՕՍԱԱՖ-ի հետ միասին Սովետական Բանակին տալ ռազմա-տեխնիկական գիտելիքներով զինված, ֆիզիկապես կոփված և անձնվեր համալրում։

Վերջին տարիներում լուրջ փոփոխություններ են տեղի ունենում պիոներական կազմակերպության գործունեության մեջ։ Օգտակար ինքնագործունեությունը հետզհետե ծավալվում է ջոկատներում և դրուժինաներում։ Պիո-

ներները լրջորեն ձեռնամուխ են լինում հանրօգուտ աշխատանքների: Սակայն բացառիկ չեն այն դեպքերը, երբ կոմերիտական ու պիոներական կազմակերպությունների գործունեությունը սահմանափակվում է դպրոցի ներսում, ուսումնական աշխատանքով, իսկ դպրոցների դիրեկտորներն իրենց ավելորդ խնամատարությամբ կաշկանդում են պատանիների ինքնագործունեությունը: Փաստերը խոսում են այն մասին, որ առանձին կոմերիտականներ ու պատանիներ ծուլանում են, լավ չեն սովորում, իրենց վատ վարքով աչքի են ընկնում ոչ միայն փողոցում, այլև ընտանիքում: Շատ կոմերիտական կազմակերպություններ աշակերտների մեջ բավարար չափով չեն պատվաստում բարոյական բարձր հատկություններ, պարտքի զգացմունք Հայրենիքի նկատմամբ, ծնողների հանդեպ:

Այս ամենի առնչությամբ Լենինյան կոմերիտմիության կազմակերպություններից պահանջվում է ուժերի նոր լարում և կազմակերպական խոշոր աշխատանք՝ մի նոր աստիճանի վրա դնելու երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը: Պարտիական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ և օգնությամբ կոմերիտմիությունը պատվով կիրագործի իր վեհ նպատակները: Հարցի էությունն այն է, որ կոմունիզմի կառուցման ներկա էտապում անսահման մեծ նշանակություն է ձեռք բերում երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցը:

Լենինյան կոմերիտմիությունը որպես կոմունիզմի շինարարների լավագույն դարբնոց՝ եղել է ու մնում է մեր պարտիայի ջերմ գուրգուրանքի առարկան: Պարտիական կազմակերպությունների և շրջկոմների կոնկրետ, ամենօրյա ղեկավարությունը կոմերիտմիության նկատմամբ՝ վերջինիս հաջողությունների վճռական գրավականն է: Այս առնչությամբ չի կարելի չնշել, որ Ազիզբեկովի, Աշտարակի, Ղափանի և Ալավերդու պարտիական շրջկոմները դեռևս անբավարար են զբաղվում կոմերիտմիության հուզող և կարևոր հարցերով: Անհրաժեշտ է անհապաղ հաղթահարել այդ թերությունը և ավելի սիստեմատիկ զբաղվել երիտասարդ սերնդի դաստիարակությամբ:

Այժմ կոմերիտմիությունն ամենուր նախապատրաստվում է այս տարի նշելու իր կյանքի ու պայքարի քառասնամյակը: Այս նպատակով տեղերում ծավալվող ֆեստիվալներն ու երգի տոները նոր լիցք են տալու հազարավոր երիտասարդների ստեղծագործական ձգտումներին: Այս տարի հունիսի 29-ին ամբողջ Սովետական Միության մեջ տոնվելու է երիտասարդության օրը: Երիտասարդության դաստիարակության համար խիստ կարևորություն ներկայացնող այս միջոցառումները պետք է արժանանան պարտիական, պրոֆմիութենական կազմակերպությունների և պետական օրգանների անմիջական ուշադրությանը:

Կոմունիստական պարտիան աճեցրել ու դաստիարակել է կոմունիզմ կառուցող մի սքանչելի սերունդ, որն ունի բոլոր պայմանները փարթամորեն զարգացնելու իր բազմաբեղուն ձիրքերը ի փառս մեր Հայրենիքի:

Միշտ առաջնորդ ունենալով ՍՄԿՊ-ն, կոմերիտմիությունը մեր երկրի ամբողջ աշխատավորության հետ ընթանում է՝

Դեպի երգի, կյանքի, լույսի մի անարատ ապագա.
Դեպի շքեղ խոյանքների մի խրախճան վարդակոխ:

---

# ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԱՆՄԱՀ ԱՌԱՋՆՈՐԴԸ

(Կարլ Մարքսի ծննդյան 140-ամյակի առթիվ)

Հ. ՌՈՒԹՄԱՋՅԱՆ

Մայիսի 5-ին լրացավ գիտական կոմունիզմի և կոմունիստական շարժ-
ման հիմնադիր, հանճարեղ տեսաբան և բոցաշունչ ռևոլյուցիոներ Կարլ
Մարքսի ծննդյան 140-ամյակը: Սովետական ժողովուրդը, սոցիալիստական
երկրների աշխատավորությունը, կոմունիստական ու բանվորական պարտիա-
ները և ողջ հողագնդի պրոլետարիատը ջերմ սիրով ու խորագույն երախտա-
գիտությամբ նշեցին համայն աշխարհի պրոլետարիատի ուսուցչի և առաջ-
նորդի ծննդյան այդ տարելիցը:

Կարլ Մարքսը ծնվել է 1818 թվականին Գերմանիայի Հռենոսյան մարզի
Թրիր քաղաքում:

Մարքսի հայացքների ձևակերպումը տեղի ունեցավ իր դարն ապրած ֆե-
ոդալիզմի դեմ բարձրացող արդյունաբերական կապիտալիզմի մղած պայքա-
րի, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիաների դարաշրջանում, երբ կապի-
տալիզմի զարգացումն ու հաղթանակին զուգընթաց որպես քաղաքական նոր
ուժ պատմական ասպարեզ էր իջել պրոլետարների նոր դասակարգը, որը դեռ
այն ժամանակ, թեև անգիտակից ու տարերայնորեն, բայց համարձակ ընդվզում
էր կապիտալիստական ճնշման դեմ՝ կապիտալիստորեն առավել զարգացած
երկրներում: Գերմանիան այդ ժամանակ կանգնած էր բուրժուա-դեմոկրատա-
կան ռևոլյուցիայի եզրին, ռևոլյուցիայի կենտրոնը Ֆրանսիայից տեղափոխ-
վել էր Գերմանիա:

1844 թվականից դառնալով արդեն ձևավորված ռևոլյուցիոներ, սոցիա-
լիստ, դիմելով մասսաներին ու պրոլետարիատին, Մարքսն ազդարարում է
բուրժուական հասարակարգի «գոյություն ունեցող ամենի անխնա քննադա-
տությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 45): Այդ ժամանակվանից
Մարքսն իր ամբողջ կյանքը, պայծառաշող հանճարն ու ռևոլյուցիոն եռանդը
նվիրաբերում է պրոլետարիատին, ծառայում նրա կազմակերպման ու
ուսուցման վեհ գործին:

Փարիզում Մարքսը 1844 թվականին հանդիպում է Ֆ. Էնգելսի հետ:
Բացահայտվում է նրանց գաղափարների, սոցիալիստական հայացքների
միասնությունը: Այդ պահից սկսվում է մեծ երկու տիտանների բարեկա-
մությունն ու մտերմությունը:

Երկու հանճարները քաջ ըմբռնեցին, որ 19-րդ դարի 30—40-ական
թվականներին Եվրոպայում ստեղծված բանվորական դավադրական ու անար-
խիստական կազմակերպությունները և գոյություն ունեցող սոցիալիստական
(կոմունիստական) ուտոպիական մանր-բուրժուական ուսմունքները ցույց չեն
տալիս պրոլետարիատի ազատագրության իսկական ու ճշմարիտ ուղին, որ

բանվորական շարժման հաղթանակի համար հավասարապես անհրաժեշտ է
ունենալ, ստեղծել կազմակերպական ճիշտ սկզբունք և ռևոլյուցիոն տեսու-
թյուն, պայքարի ծրագիր։ Նրանք իրենց ուժն ու կորովը, տիտանական միտքն
ու կամքը նվիրեցին այդ խնդրի լուծմանը, պայքարի ելնելով երկու ճակատով,
այն է՝ մի կողմից մանր-բուրժուական, ուտոպիական-սոցիալիստական ուս-
մունքների դեմ հանուն ռևոլյուցիոն տեսության, մյուս կողմից՝ անարխիստա-
կան, դավադրական կազմակերպությունների դեմ հանուն կազմակերպական
ճիշտ սկզբունքի։

Ինչպես նշում է Վ. Ի. Լենինը, Մարքսը շարունակողն ու հանճարեղ
ավարտողը հանդիսացավ երեք գլխավոր գաղափարական հոսանքների՝ գեր-
մանական կլասիկ փիլիսոփայության, անգլիական կլասիկ քաղաքատնտեսու-
թյան և ֆրանսիական ռևոլյուցիոն ուսմունքների հետ կապված ֆրանսիական
սոցիալիզմի։ Հաղթահարելով այդ հոսանքների բոլոր թերությունններն ու
սխալները, իդեալիստական ու ուտոպիստական կողմերը, դիալեկտիկական
խոր, բազմակողմանի մեթոդով հետևողականորեն կիրառելով մատերիալիզմը
բնության ու հասարակական երևույթների բնագավառում, Մարքսը հեղաշրջեց
այդ հոսանքները և ստեղծեց իր ուսմունքի երեք բաղկացուցիչ մասերը՝ մարք-
սիստական քաղաքատնտեսությունը, մարքսիստական փիլիսոփայությունը և
գիտական կոմունիզմի ուսմունքը։

Մարքսի մեծագույն հայտնագործությունը պատմական մատերիալիզմն է։
Մատերիալիզմը կիրառելով հասարակական երևույթների բնագավառում, նա
ցույց տվեց, որ պատմական երևույթների, հասարակական հարաբերություն-
ների ու գաղափարների հիմքը նյութական արտադրության զարգացման աստի-
ճանի, արտադրողական ուժերի կացության մեջ է, այսինքն՝ ոչ թե վերացա-
կան գաղափարներն են պատմության մոտիվները, այլ օբյեկտիվ օրինաչա-
փությունը, հասարակական կեցությունը, որը և որոշում է հասարակական գի-
տակցությունը, պատմությունը կերտող ժողովրդական մասսաների մոտիվնե-
րը։ Այս մեծագույն հայտնագործությունը իսկական հեղաշրջում էր։

Մարքսը տվեց դասակարգային պայքարի ամբողջական ու ավարտուն
տեսությունը։ Ուսումնասիրելով ողջ պատմության ընթացքը, նա հռչակեց այն
հանճարեղ դրույթը, որ գրի առած ամբողջ պատմությունը մինչև այժմ եղել
է դասակարգային պայքարի պատմությունը, որոշ հասարակական դասակար-
գերի՝ մյուսների վրա ունեցած տիրապետության ու տարած հաղթությունների
հերթափոխություն։ Եվ այդպես կլինի մինչև այն ժամանակ, քանի դեռ չեն
չքացել դասակարգային պայքարի ու դասակարգային տիրապետության հիմքե-
րը՝ մասնավոր սեփականությունը և հասարակական անկանոն արտադրությու-
նը (Վ. Ի. Լենին)։ Դրանով իսկ Մարքսը ձևակերպեց հասարակական-տնտե-
սական ֆորմացիաների հաջորդական փոփոխման օբյեկտիվ օրինաչափությու-
նը և այդ հիման վրա բացահայտեց կապիտալիզմի կործանման անխուսա-
փելիությունը, սոցիալիստական ռևոլյուցիայի անհրաժեշտությունը, որի կրո-
ղը բանվոր դասակարգն է, հիմնավորեց, որ «ամեն մի դասակարգային պայ-
քար քաղաքական պայքար է»։

Մարքսի և Էնգելսի մեծագույն ծառայություններից մեկը պրոլետարիատի
համաշխարհային պատմական դերի բացահայտումն է։ Հակառակ ուտոպիկ-
սոցիալիստների պնդմանը, թե բանվոր դասակարգն անօգնական, տառապող,
հասարակության համար խոց հանդիսացող դասակարգ է, Մարքսն ու Էնգելսն



ապացուցեցին, որ արդի հասարակության մեջ ամենակենսունակ, ամենառևո-
լյուցիոն դասակարգը բանվոր դասակարգն է։ Որ ո՛չ թե առանձին անհատ
հերոսների փորձերը, այլ բանվոր դասակարգի կազմակերպված, գիտակցա-
կան դասակարգային պայքարը մարդկությանը կազատի կապիտալիզմի շղթ-
թաներից։ Պրոլետարիատը կապիտալիզմի գերեզմանափորն է, նոր կոմունիս-
տական հասարակարգի ստեղծողը։ Նրանք անհողդողդ կամքով հայտարարե-
ցին՝ «Թո՛ղ սարսափեն տիրող դասակարգերը Կոմունիստական Ռևոլյուցիայի
առաջ։ Պրոլետարները ոչինչ չունեն կորցնելու այդ ռևոլյուցիայի մեջ՝ բացի
իրենց շղթաներից։ Իսկ ձեռք կբերեն ամբողջ աշխարհը։ ՊՐՈԼԵՏԱՐՆԵ՛Ր ԲՈ-
ԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք»։

Նրանք ցույց տվին, որ պրոլետարիատի դասակարգային պայքարի, սո-
ցիալիստական ռևոլյուցիայի առաջին պայմանը քաղաքական իշխանության
նվաճումը, այսինքն՝ պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծումն է։

Պրոլետարիատի հանճարեղ ուսուցիչների համար սոցիալիզմը (կոմունիզ-
մը) ոչ թե ուտոպիա էր, այլ կապիտալիստական հասարակության արտադրո-
ղական ուժերի զարգացման անհրաժեշտ արդյունքը, օբյեկտիվ օրինաչափու-
թյան անխուսափելի արդյունքը, որին պետք է հասնել պրակտիկ ռևոլյուցիոն
պայքարով։ Նրանք սոցիալիզմը ուտոպիայից վերածեցին գիտության, այն
դրեցին ռեալ հողի վրա, կապեցին պրոլետարիատի բախտի հետ։ Սոցիալիզմը
հանձին պրոլետարիատի գտավ իր կրողին, իսկ պրոլետարիատը հանձին
մարքսիզմի՝ իր հոգևոր զենքը։ «Բանվոր դասակարգին Մարքսի ու Էնգելսի
մատուցած ծառայությունները,— ասում է Լենինը,— միքանի բառով կարելի
է այսպես արտահայտել. Նրանք բանվոր դասակարգին սովորեցրին ինքնա-
ճանաչողություն ու ինքնագիտակցություն, և երազանքների տեղը գիտությունը
դրին» (Երկեր, հ. 2, էջ 7)։

Մարքսը գտնում է, որ բանվոր դասակարգի շարժման համար հսկայական
ներգործող, հեղափոխող նշանակություն ունի տեսությունը, որն անքակտելի
կերպով պետք է կապվի պրակտիկայի հետ։ Հին մատերիալիստները մարդու
էությունը հասկանում էին հասարակական հարաբերություններից կտրված,
վերացականորեն, այդ պատճառով էլ միայն բացատրում էին աշխարհը, մինչ-
դեռ Մարքսը հռչակեց ռևոլյուցիոն պրակտիկ գործունեությամբ այն փո-
փոխելու խնդիրը։ Նա ո՛չ միայն հռչակեց, այլև իր մեծ կյանքը, կազմակեր-
պական հզոր տաղանդը ամբողջապես նվիրաբերեց պրոլետարիատի ռևոլյու-
ցիոն շարժմանը։

Մարքսն ու Էնգելսը ցույց տվին, որ պրոլետարիատի պայքարի հաղթա-
նակի համար անհրաժեշտ է ունենալ հասարակության զարգացման օրենքնե-
րով զինված, կարգապահ և կազմակերպված, մինչև վերջը ռևոլյուցիոն պար-
տիա։ Այն պետք է կազմված լինի բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից
ջոկատից, մյուս բանվորական պարտիաներից տարբերվի նրանով, որ պաշտ-
պանի բոլոր պրոլետարների ընդհանուր, ազգությունից անկախ շահերը՝ պայ-
քարի բոլոր աստիճաններում, լինի առաջավոր մարտիկ, միշտ դեպի առաջ
մղի պրոլետարական շարժումը, հասկանա նրա պայմանները, ընթացքը և հե-
տևանքները։ Նրանք իրենց ամբողջ կյանքում պայքարեցին այդ տիպի պար-
տիա ստեղծելու համար։

Մարքսը և Էնգելսը ոչ միայն նոր ուսմունքի ստեղծագործողներն էին,
այլև նրա առաջին պրոպագանդիստները։ Նրանք հսկայական աշխատանք կա-

տարեցին իրենց տեսությունը բանվոր դասակարգի մեջ տարածելու, բոլոր երկրների առաջավոր գիտակից բանվորներին, սոցիալիստներին պրոլետարական նոր աշխարհայացքի հիմքի վրա համախմբելու, նրան կազմակերպված դասակարգ դարձնելու ուղղությամբ։

Մարքսը նախ և առաջ ռևոլյուցիոներ էր, ասում է Էնգելսը, նրա տարերքը պայքարն էր։ Եվ նա պայքարում էր տիրող դասակարգերի տապալման ու պրոլետարիատի ազատագրման համար այնպիսի կրքով, այնպիսի համառությամբ ու հաջողությամբ, ինչպես քչերն են պայքարում։

Փարիզում եղած ժամանակ (1844—1845 թթ.) Մարքսն ամենաջերմ մասնակցությունն ունեցավ Փարիզի ռևոլյուցիոն խմբերի եռուն կյանքին։ Շուտով պրուսական կառավարության պահանջով, որպես վտանգավոր ռևոլյուցիոների, նրան արտաքսեցին Փարիզից։ Նա գնաց Բրյուսել և պրուսական կառավարության հետապնդումից խուսափելու համար փոխեց իր հպատակությունը։ Բրյուսելում Մարքսը ստեղծեց Գերմանական բանվորական միությունը։ Մարքսն ու Էնգելսը կապեր հաստատեցին Անգլիայի, Ֆրանսիայի և Գերմանիայի բանվորական, կոմունիստական խմբերի, միությունների հետ, ձեռնամուխ եղան պրակտիկ ագիտացիայի։ Մարքսն անսքող պայքար ծավալեց բանվորական շարժումը սխալ ուղիներով տանող, մարքսիստական նոր տեսության տարածմանը խոչընդոտող մանր-բուրժուական, այսպես կոչված Վայտլինգյան կոմունիզմի, «Ճշմարիտ սոցիալիզմի» և այլ ուսմունքների դեմ, որոնք պրոլետարիատին քարոզում էին սեր և եղբայրություն բուրժուազիայի նկատմամբ, բուրժուազիայի և պրոլետարիատի միջև եղած հակոտնյա հակասությունների հարթեցում, շահագործվողների և շահագործողների հաշտեցում։

Մի քանի տարի տևող համառ պայքարը տվեց իր արդյունքը։ Առաջավոր, գիտակից բանվորներն արագությամբ մոտեցան գիտական կոմունիզմի ուսմունքին։ Լոնդոնում գաղտնի գործող բանվորների, այդ ժամանակ արդեն ինտերնացիոնալ կազմ ունեցող, «Արդարների միություն» կազմակերպության ղեկավարներն առաջարկեցին Մարքսին ու Էնգելսին մտնել միության մեջ և օգնել նրանց գիտական կոմունիզմի հիմքի վրա կազմակերպությունը վերակառուցելու գործում։ Մարքսն ու Էնգելսը համաձայնվեցին։ 1847 թվականին տեղի ունեցան այդ միության առաջին և երկրորդ համագումարները։ Միությունն արմատապես վերակառուցվեց, ոչնչացվեց այն ամենը, ինչ մնացել էր հին միստիկական, դավադրական գործելակերպից։ Կազմակերպությունը վերանվանվեց «Կոմունիստների Միություն», «Բոլոր մարդիկ եղբայրներ են» հին նշանաբանը փոխարինվեց «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք» նոր, մարտական լոզունգով, որը բացահայտորեն հուշակեց պայքարի միջազգային բնույթը։ Ընդունված նոր կանոնադրության առաջին կետը հայտարարում էր, որ «Միության նպատակն է՝ բուրժուազիայի տապալումը, պրոլետարիատի տիրապետությունը, հին, դասակարգերի անտագոնիզմի վրա հիմնված բուրժուական հասարակության ոչնչացումը և նոր հասարակության հիմնումը, առանց դասակարգերի ու առանց մասնավոր սեփականության» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, 1950 թ., էջ 445)։

Միության երկրորդ համագումարը Մարքսին ու Էնգելսին հանձնարարեց իրենց հայացքները մանիֆեստի ձևով շարադրել, որպես Կոմունիստների Միության ծրագիր։ Այդ հանձնարարությունը կատարվեց։ Շուտով հրապարակ իջավ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը» հանճարեղ աշխատությունը,



որը դարձավ բոլոր երկրների բազմամիլիոն բանվորների պայքարի ու հաղթանակի մարտական ընդհանուր ծրագիրը։

Մանիֆեստում և հետագա պրակտիկ ռևոլյուցիոն պայքարում Մարքսն ու Էնգելսը մշակեցին պրոլետարիատի ռևոլյուցիոն պարտիայի մերձավորագույն և հեռակա խնդիրները, նրա ստրատեգիական, տակտիկական սկզբունքները։

«Կոմունիստական պարտիայի մանիֆեստի» լույս ընծայումը զուգադիպեց 1848 թվականի ռևոլյուցիայի հետ Ֆրանսիայում և Եվրոպայի այլ երկրներում։ Սարսափահար եղած բելգիական կառավարությունը ձերբակալեց Մարքսին ու արտաքսեց Բրյուսելից։ Նա կարճ ժամանակով եկավ Փարիզ և ապա անցավ Գերմանիա՝ ծավալվող ռևոլյուցիոն շարժմանը մասնակցելու ու այն ղեկավարելու համար։ Քյոլնում նա Էնգելսի հետ միասին հիմնեց «Նոր Հռենոսյան Լրագիրը»։

Գերմանիայում արդեն բռնկել էր բուրժուա-դեմոկրատական ռևոլյու-
ցիան։ Իր պատմական զարգացման առանձնահատկությունների, թուլության
ու վախկոտության հետևանքով, ինչպես նաև պրոլետարիատի ապագայի
սպառնալիքից սարսափող գերմանական բուրժուազիան այդ ռևոլյուցիայում
հանդես էր բերում անհետևողականություն. կոմպրոմիսի էր գնում միապե-
տության ու ազնվականության հետ։ Ծավալված բուրժուա-դեմոկրատական
ռևոլյուցիայում գերմանական պրոլետարիատը հանդես եկավ որպես ծայրա-
հեղ ձախ թև, դեմոկրատական իրավունքներ նվաճելու ինքնուրույն դասակար-
գային պարտիա կազմակերպելու նպատակով։

Դասակարգային ուժերի ու պատմական պայմանների այս փոխհարաբե-
րությունն էլ որոշեց «Նոր Հռենոսյան Լրագրի» ուղղությունը, նրա դրոշը։ Այդ
«դրոշը — ասում է Էնգելսը — կարող էր լինել միայն դեմոկրատիայի դրոշ,
բայց այնպիսի դեմոկրատիայի, որն ամենուրեք, ամեն մի առանձին առիթով,
ցուցադրում էր իր սպեցիֆիկ պրոլետարական բնույթը, որի մասին նա դեռ
չէր կարող միանգամ ընդմիշտ գրել իր դրոշի վրա» (նույն տեղը, էջ 423)։

Մարքսը տակտիկական առումով հնարավոր էր համարում բուրժուա-
դեմոկրատական ռևոլյուցիայի ժամանակ կոմունիստների համագործակցու-
թյունը մանր-բուրժուական դեմոկրատների հետ, պայմանով, որ կոմունիստ-
ները ընդհանուր դեմոկրատական պայքարում լինեն առաջավոր մարտիկներ,
ոչ մի վայրկյան չմոռանան պրոլետարիատի ինքնուրույն խնդիրները։

«Նոր Հռենոսյան Լրագրի» առաջնակարգ խնդիրներից մեկը Մարքսը հա-
մարում էր ժողովրդի մեջ տարածված այն պատրանքի մերկացումը, որ իբր
թե Մարտյան դեպքերով ռևոլյուցիան Գերմանիայում վերջացել է, մնում է
միայն նրա պտուղները քաղել։ Նա ուսուցանում էր, որ ռևոլյուցիան պետք է
դառնա անընդհատ; վերածվի «տևական ռևոլյուցիոն շարժման, որի մեջ ժո-
ղովուրդը զարգանար իր սեփական պայքարի ընթացքում, պարտիաներն
ավելի ու ավելի խստորոշ առանձնանային», իսկ «պրոլետարիատը մի շարք
ճակատամարտերում մեկ դիրք մյուսի հետևից նվաճեր»։ Ըստ Մարքսի բուր-
ժուա-դեմոկրատական ռևոլյուցիան գերմանական պրոլետարիատի համար
լոկ պայքարի անցման մի աստիճան էր և ոչ թե վերջնական նպատակ։

Լրագրի էջերից Մարքսն անողոքաբար մերկացնում էր հակառևոլյուցիոն
ուժերին՝ «թագավորից ու ռեգենտից սկսած մինչև ժանդարմը», բուրժուա-
զիայի դավաճանությունը, քաղքենիական բոլոր խմբերի օպորտունիստական
տակտիկան, որոնք բանվորներին շեղում էին պայքարի ճիշտ ուղուց՝ բուր-

ժուա-դեմոկրատական խնդիրները մինչև վերջը կատարելուց: Ժողովրդական մասսաներին կոչ էր անում չվճարել հարկերը, զինել մասսաներին և բռնությանը պատասխանել բռնությամբ:

«Նոր Հռենոսյան Լրագիրը» Մարքսի ղեկավարությամբ դարձավ ո՛չ միայն գերմանական, այլև ողջ ռևոլյուցիոն Եվրոպայի պրոլետարիատի մարտաշունչ տրիբունան: Ղեկավարվելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ գաղափարով, մեծագույն արիությամբ նա պաշտպանում էր Գերմանիայի, Իտալիայի, Ֆրանսիայի, Հունգարիայի, Չեխիայի, Լեհաստանի մարտնչող ժողովրդական մասսաների շահերը, ռևոլյուցիոն Եվրոպային կոչում էր ընդհանուր պատերազմի ընդդեմ եվրոպական ռեակցիայի:

Թերթի պրոլետարական բնույթն առանձնապես դրսևորվեց այն բանում, որ նա անմիջապես ողջունեց Փարիզի բանվորների 1848 թվականի հունիսյան հերոսական ապստամբությունը, անցավ նրա կողմը, այն դիտելով որպես պրոլետարիատի ու բուրժուազիայի միջև մղվող առաջին քաղաքացիական պատերազմ: Ոչ թե խմբագրական սենյակում դրված 8 հրացանն ու 250 փամփուշտը, այլ այնտեղ իշխող պրոլետարական ռևոլյուցիոն ոգին, մարքսիզմի ամենահաղթ, ճշմարիտ խոսքը «Նոր Հռենոսյան Լրագրի» շենքը դարձրել էին Եվրոպայի ռևոլյուցիայի անառիկ ամրոցը, որի գլխին որպես դրոշ փողփողում էր պրոլետարիատի մեծագույն առաջնորդի, Կարլ Մարքսի անունը:

Երբ գերմանական բուրժուազիայի դավաճանության ու մանր-բուրժուազիայի վախկոտության հետևանքով ռեակցիոն ուժերին հաջողվեց պարտության մատնել 1848—1849 թթ. ռևոլյուցիան Գերմանիայում և այլ երկրներում, «Նոր Հռենոսյան Լրագրի» խմբագրության և, առանձնապես Մարքսի ու Էնգելսի համար, ստեղծվեց ծանր վիճակ: Խմբագրության կեսից ավելին դատի տրվեց, Մարքսը երկու անգամ կանգնեց դատարանի առաջ, ուր նա իրեն պահեց ոչ թե որպես մեղադրյալ, այլ որպես մեղադրող: 1849 թվականի մայիսի 19-ին լույս տեսավ թերթի կարմիր ներկով տպագրված վերջին համարը, որը վերջանում էր Քյոլնի բանվորներին ուղղված հետևյալ խոսքերով. ««Նոր Հռենոսյան Լրագրի» խմբագիրները, հրաժեշտ տալով ձեզ, շնորհակալություն են հայտնում իրենց ցույց տրված համակրանքի համար: Նրանց վերջին խոսքը միշտ և ամենուրեք կլինի՝ բանվոր դասակարգի ազատագրո՛ւմ» (նույն տեղը, էջ 430):

1852 թվականին Քյոլնի կոմունիստների դատավարությունից ու կենտրոնական կոմիտեի անդամների ձերբակալումից հետո Կոմունիստների Միությունը դադարեց գոյություն ունենալուց: Ողջ Եվրոպայում մոլեգնում էր ռեակցիան: Մարքսը հարկադրված էր առ ժամանակ հրաժարվել քաղաքական ագիտացիայից, պրակտիկ ռևոլյուցիոն գործունեությունից և, բնակություն հաստատելով Լոնդոնում, իրեն նվիրել գիտությանը:

Նյութական ծանր, թշվառության հասնող պայմաններում նա գրեց մի շարք աշխատություններ և ձեռնամուխ եղավ իր դարակազմիկ աշխատությանը՝ «Կապիտալին»: «Դասակարգային պայքարը Ֆրանսիայում 1848 մինչև 1850 թ.» (1850 թ.), «Լուի Բոնապարտի բրյումերի տասնութը» (1852 թ.) աշխատություններում Մարքսը խոր վերլուծության միջոցով ընդհանրացրեց 1848—1849 թթ. ռևոլյուցիայի հարուստ փորձը և պրոլետարիատի ուսմունքը հարստացրեց տեսական նոր հետևություններով:

Նա ցույց տվեց, որ բանվոր դասակարգը չի կարող բուրժուազիայի տիրապետությունը տապալել, եթե գյուղացիությունը չհարի նրան և հանձին նրա չտեսնի իր առաջնորդին: Գյուղացիության հետ դաշնակցելու քաղաքական այս կարևոր միտքը Մարքսը ձևակերպել է այսպես. «Ամբողջ գործը Գերմանիայում կախված կլինի պրոլետարական ռևոլյուցիային գյուղացիական պատերազմի որևէ երկրորդ հրատարակությամբ աջակցելու հնարավորությունից: Այդ ժամանակ ամեն բան հիանալի կլինի...» (նույն տեղը, էջ 585—586):



1850 թվականին Մարքսն առաջին անգամ տվեց պրոլետարիատի դիկտատուրայի կլասիկ ձևակերպումը, իսկ մի փոքր անց, 1852 թվականի մարտի 5-ին Վայդեմայերին գրած նամակում նա նշում էր. «Իմ արած նորն այն է, որ ես ապացուցել եմ հետևյալը. 1) որ դասակարգերի գոյությունը կապված է արտադրության զարգացման որոշ պատմական ֆազերի հետ միայն, 2) որ դասակարգային պայքարն անհրաժեշտաբար տանում է դեպի պրոլետարիատի դիկտատուրան, 3) որ այդ դիկտատուրան ինքը սոսկ մի անցումն է դեպի ամեն տեսակ դասակարգերի ոչնչացումն ու դեպի անդասակարգ հասարակությունը...» (նույն տեղը, էջ 584):

1860-ական թվականներին Եվրոպայի բոլոր երկրներում բանվորական շարժման վերելքը Մարքսին նորից ներքաշեց ռևոլյուցիոն եռուն աշխատանքի ոլորտը: Նա ձեռնամուխ եղավ իր նվիրական ցանկության իրականացման գործին, այն է՝ համախմբել պրոլետարիատի ուժերը, հիմնել բանվորների միջազգային մի ընկերություն, կազմակերպել ու դաստիարակել Ամերիկայի ու Եվրոպայի պրոլետարիատին գալիք գոտեմարտերի համար: 1864 թվականին Մարքսը հիմնեց I Ինտերնացիոնալը, որը Էնգելսի գնահատմամբ նրա ռևոլյուցիոն գործունեության պսակն է հանդիսանում: Ինտերնացիոնալի առաջնորդն ու ոգին, նրա հրապարակած բոլոր փաստաթղթերի հեղինակը Մարքսն էր:

Ինտերնացիոնալի գոյության ամբողջ ընթացքում Մարքսի տակտիկայի առանցքը ռևոլյուցիոն փորձի հիման վրա մանր-բուրժուական ամեն կարգի սոցիալիստական ու կիսասոցիալիստական ուսմունքների, աղանդների, օպորտունիստների մերկացումն էր, և դրանով իսկ ժողովրդական մասսաներին աստիճանաբար գիտական կոմունիզմի և ռևոլյուցիոն տեսության, ստրատեգիայի ու տակտիկայի կողմը նվաճելը: Առանձնապես մեծ նշանակություն ունեցավ Պրուդոնի և լասալականության դեմ Մարքսի մղած անհաշտ պայքարը:

Պրուդոնը Մարքսի արտահայտությամբ, ընդամենը սոսկ «զտարյուն մանր բուրժուա» էր, ձգտում էր «սավառնել բուրժուաների ու պրոլետարների վրա», «անվերջ տատանվում էր կապիտալի ու աշխատանքի միջև, «քաղաքատնտեսության ու կոմունիզմի միջև»: Մարքսը ոչնչացնող քննադատության ենթարկեց Պրուդոնի օպորտունիստական հայացքներն այն մասին, որ իբր կարելի է կապիտալիզմը «բարելավել», նրան հատուկ չարիքներն ու պակասությունները վերացնել:

Սկզբունքային անգնահատելի նշանակություն ունեցավ Գերմանիայի ռևոլյուցիոն պարտիայի ստեղծմանը լրջորեն խանգարող լասալականների «կայսերական Պրուսիայի կառավարական սոցիալիզմի» դեմ Մարքսի մղած պայքարը: Մարքսը գերմանական բանվորներին զգուշացնում էր, որ լասալականները պաշտպանում են Գերմանիան վերևից «արյունով ու երկաթով» միավորելու բիսմարկյան քաղաքականությունը, որ նրանց տված «պետական օժանդակության» լոզունգը նվաստացուցիչ է, որ նրանք պարզապես անուղղելի օպոր-

տունիստներ են, ձգտում են բանվոր դասակարգին հավատարիմ հպատակներ դարձնել պրուսական կայսրությանը։ Մարքսն ամենախիստ քննադատության ենթարկեց Գոթայի ծրագիրը, որում գերմանական սոցիալ-դեմոկրատիան սկզբունքային զիջումներ էր կատարում լասալականներին։ Նա վճռականապես պահանջում էր՝ «սկզբունքների ոչ մի սակարկություն չպիտի թույլատրվի»։

Առաջին Ինտերնացիոնալի պատմության վառ էջը 1871 թվականի Փարիզի Կոմունան էր։ Գլխավոր խորհուրդը Մարքսի ղեկավարությամբ ջերմորեն ողջունեց Կոմունան։ Ինտերնացիոնալի բոլոր սեկցիաներին գրած հարյուրավոր նամակներում Մարքսը բացատրում էր Կոմունայի էությունը և պահանջում էր ծավալել օգնության ու համերաշխության կամպանիա։ Գնահատելով «երկինքը գրոհի ենթարկելու պատրաստ» Փարիզի պրոլետարիատի սխրանքը, Մարքսը հիացմունքով նշում էր. «Պատմությունը հերոսության այդպիսի օրինակ չունի... Ինչ էլ որ լինի, Փարիզի այժմյան ապստամբությունը,— եթե նա նույնիսկ ճնշվի հին հասարակության գայլերի, խոզերի ու ստոր շների կողմից,— մեր պարտիայի ամենափառավոր սխրագործությունն է հունիսյան ապստամբությունից հետո» (նույն տեղը, էջ 597)։

Մարքսն իր խորհուրդներով օգնում էր կոմունարներին։ Հենց պայքարի ընթացքում նա բացահայտեց Կոմունայի սխալները։ Նա Փարիզի Կոմունայի համաշխարհային-պատմական նշանակությունը համարում էր այն, որ նրա շնորհիվ բանվոր դասակարգի՝ բուրժուազիայի դեմ մղած կռիվը մտավ նոր փուլ. «նվաճված է համաշխարհային-պատմական կարևորություն ունեցող մի նոր ելակետ», որ նա առաջին անգամ փորձեց ջարդել պետական հին մեքենան և ստեղծել առաջին պրոլետարական նոր պետությունը, հանդես բերեց շահագործողների էքսպրոպրիացիայի ենթարկելու տենդենցը։ Փարիզի Կոմունայի փորձով Մարքսը արեց մի նոր, խիստ կարևոր հետևություն, այն է, պրոլետարիատի դիկտատուրայի ավելի նպատակահարմար ձևը ո՛չ թե պառլամենտական ռեսպուբլիկան է, այլ Փարիզի Կոմունայի տիպի կազմակերպությունը։

Կոմունայի պարտությունից հետո միջազգային բանվորական շարժման մեջ վրա հասավ պատմական զարգացման նոր էտապ, որի պայմաններում «Ինտերնացիոնալն ավարտեց իր պատմական դերը՝ տեղը զիջելով բոլոր երկրների բանվորական շարժման անչափ ավելի խոշոր աճման դարաշրջանին, այսինքն նրա ընդլայնակի աճման, առանձին ազգային պետությունների հիման վրա մասսայական սոցիալիստական պարտիաներ ստեղծելու դարաշրջանին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 48)։

Մարքսն ու Էնգելսը պատմական նոր պայմաններին համապատասխան միջազգային պրոլետարիատի առաջ դրեցին նոր խնդիրներ՝ յուրաքանչյուր երկրում ստեղծել մասսայական ռևոլյուցիոն պարտիաներ և երկար ու համբերատար նախապատրաստվել սոցիալիստական ռևոլյուցիայի համար։

Որպես համայն աշխարհի պրոլետարիատի առաջնորդ, Մարքսն Ինտերնացիոնալի արձակումով իր դերն ավարտված չհամարեց։

«Ինչ վերաբերում է ինձ, ապա ես շարունակելու եմ իմ գործը և անդադրում աշխատելու եմ այդ, ապագայի համար այնքան բեղմնավոր, բանվորների համերաշխության ստեղծման վրա։ Ո՛չ, ես չեմ հեռանում Ինտերնացիոնալից, և ինչպես իմ նախորդ գործունեությունը, կյանքիս մնացորդը նվիրված է լինելու սոցիալական գաղափարների հաղթանակին, որոնք ինչպես մենք



խորապես համոզված ենք դրանում, վաղ թե ուշ կբերեն պրոլետարիատի տիրապետությանն ամբողջ աշխարհում» (К. Маркс, Ф. Энгельс, соч., т. XIII, ч. II, стр. 670)։

Արհամարհելով ռեակցիայի հալածանքներն ու բուրժուական և մանրբուրժուական գրչակների զրպարտությունները, Մարքսն իրեն հատուկ տոկունությամբ ու ներքին ռևոլյուցիոն ջերմ հավատի ուժով շարունակեց օգնել ո՛չ միայն գերմանական, այլև բոլոր երկրների պարտիաներին։ Օգնում էր նրանց իր իմաստուն խորհուրդներով, տեսական ցուցումներով՝ տակտիկական, ստրատեգիական, տեսական հարցերում, ծրագրերի կազմելու գործում։ Մարքսն ամենաանողոք պայքար էր մղում բոլոր երկրներում ի հայտ եկող ամեն կարգի ու գույնի օպորտունիստների դեմ։ Պայքարում էր պահպանելու տեսության անաղարտությունը, շարունակում էր բանվոր դասակարգի համախմբման, դաստիարակման, կազմակերպման մեծ գործը։

Այդ տարիներին նա առանձնապես սուր պայքար մղեց մարքսիզմի վտանգավոր թշնամի Բակունինի անարխիստական, դավադրական խմբի դեմ, մի հոսա՛նք, որը ժխտում էր պրոլետարիատի կազմակերպված դասակարգային պայքարը կապիտալիզմի դեմ, ժխտում էր պարտիայի դերը։

Մարքսը դաժան պայքար էր մղում բոլոր նրանց դեմ, ովքեր հասարակական երևույթների պարզաբանմանը, ռևոլյուցիոն ուսմունքին մոտենում էին տիրացուաբար, դոգմատիկ կերպով։ Նա ուսուցանում էր, որ մարքսիզմը դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց։ Նա բոլոր երկրների ռևոլյուցիոներներին զգուշացնում ու պահանջում էր, որպեսզի հաշվի առնեն իրենց երկրների պատմական առանձնահատկությունները։

Մարքսը հետաքրքրվում էր բոլոր երկրների բանվորական շարժման բախտով, գաղութային ու կախյալ երկրների ազգային ազատագրական շարժման բախտով և հռչակեց ազգային ու գաղութային հարցի հիմնական գաղափարական դրույթները։ Նա խարազանում էր բուրժուական նացիոնալիզմը և բոլոր երկրների բանվորներին դաստիարակում պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։

Երբ 1883 թվականին իր բազկաթոռի մեջ հավիտենական քնով հանգեց բոլոր ժամանակների մեծագույն մտածողի ու ռևոլյուցիոների պայծառաշող կյանքը, նրա ուսմունքն ու ռևոլյուցիոն գործը հաղթանակել էին միջազգային պրոլետարիատի շրջանում լայնությամբ ու խորությամբ։ Ռևոլյուցիոն փոթորիկների նախորդ շրջանը վերջացել էր, որին զուգակցվեց Մարքսի ողջ պայքարով կյանքը, և սկսվել էր համեմատաբար խաղաղ շրջան, որի իմաստը գալիք մարտերին նախապատրաստվելն էր։ 19-րդ դարի Եվրոպայի ողջ պատմությունն ապացուցել էր Մարքսի ուսմունքի ճշմարտացիությունը, որով նա դառնում էր ամենազոր՝ բուրժուական ողջ ռեակցիայի, օպորտունիստների, ռևիզիոնիստների ու ամեն գույնի մութ ուժերի հալածանքների ու զրպարտանքների հանդեպ։

XX դարի պատմությունը նոր, է՛լ ավելի զորեղությամբ ապացուցեց մարքսիզմի ճշմարտացիությունը։ Վ. Ի. Լենինը, Մարքսից և Էնգելսից հետո ամենախոշոր մարքսիստն ու ռևոլյուցիոները, պատմական նոր պայմաններում ստեղծագործաբար շարունակեց նրանց մեծ գործը։ Ռուսաստանը դարձավ ռևոլյուցիայի կենտրոն։ Ինչպես մարգարեաբար գուշակել էր Մարքսը, Ռուսաստանը բերեց ռևոլյուցիոն թարմություն։ Հանճարեղ Լենինը II Ինտերնա-

ցիոնալի օպորտունիստների հալածանքից ու մոռացումից փրկեց մարքսիզմի ռևոլյուցիոն ոգին՝ պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարը, ռևոլյուցիոն պարտիայի ստեղծման անհրաժեշտության միտքը, որոնք օպորտունիստները փորձում էին թաղել պատմության փոշու տակ՝ արդեն իր նեխումն ապրող կապիտալիզմը կործանումից փրկելու համար: Նա վեր պարզեց մարքսիզմի ռևոլյուցիոն դրոշը:

Ելնելով Մարքսի տեսական, ստրատեգիական, տակտիկական հիմնական դրույթներից, պատմական նոր պայմաններում, իմպերիալիզմի դարաշրջանում հարստացնելով դրանք նոր դրույթներով ու հետևություններով, Լենինն ստեղծեց ռևոլյուցիոն նոր տիպի պարտիա, բոլշևիկների պարտիան, որը ռուսական ամենառևոլյուցիոն պրոլետարիատին ու աշխատավոր գյուղացիությանը տարավ ռուսական երեք փոթորկոտ ռևոլյուցիաների միջով և Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով դրեց պրոլետարիատին ու աշխատավոր մարդկությանը կապիտալի, ազգային ու ամեն կարգի ճնշումից ազատագրելու սկիզբը, բացեց սոցիալիստական նոր հասարակարգի դարաշրջանը, որի հաղթանակին խորապես հավատում էր Մարքսը:

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի փորձով, մեր երկրում սոցիալիստական հասարակարգի կառուցման փորձով հարստացած մարքս-լենինյան ամենահաղթ ուսմունքի ճշմարտացիության նոր ապացույցը հանդիսացավ սոցիալիստական կարգերի հաղթանակը նոր երկրներում, սոցիալիստական համաշխարհային հզոր սիստեմի ստեղծումը: Եթե հարյուր տարի առաջ կոմունիզմը շրջում էր Եվրոպայում լոկ որպես ուրվական, ապա այժմ նա արդեն իրականացած ճշմարտություն է Եվրոպայի ու Ասիայի ընդարձակ տարածությունների վրա, որով ապրում ու շնչում են մոտ մեկ միլիարդ մարդ, հողագնդի բնակչության մեկ երրորդից ավելին: Եթե հարյուր տարի առաջ Մարքսի ջանքերով ստեղծված առաջին ռևոլյուցիոն պարտիայի մեջ կոմունիստները հաշվվում էին տասնյակներով, ապա այժմ նրանց թիվը հասնում է 33 միլիոնի, որոնք բոլոր երկրներում պայքարում են մարքս-լենինյան գաղափարների նորանոր հաղթանակների համար:

Այժմ մարքսիզմ-լենինիզմի հզորահաղթ գաղափարներով ապրում է մեր մոլորակի ողջ աշխատավոր մարդկությունը, պրոլետարիատն ու գյուղացիությունը, սևամորթն ու սպիտակամորթը, որոնք սոցիալիստական երկրների փորձով համոզվել են ու համոզվում են, որ կապիտալիզմին հատուկ սոցիալական ու ազգային ճնշումից, արյունահեղ պատերազմների սպառնալիքից փրկվելու միակ ելքը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներն են, նրանց հաղթանակը ամբողջ աշխարհում:

Մարքս-լենինյան ուսմունքն այժմ հարստացվում է սոցիալիստական երկրների ու բանվորական միջազգային շարժման նոր փորձով: Այդ փորձը ընդհանրացնում ու մարքսիզմ-լենինիզմի տեսական գանձարանն են մուծում ՍՄԿՊ-ն և սոցիալիստական երկրների կոմունիստական պարտիաները:

Մեր դարաշրջանը Մարքսի նշած կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանն է, երբ առաջինը ռևոլյուցիոն ձևով փոխակերպվում է երկրորդին: Տնտեսական անցման այդ շրջանին համապատասխանում է նաև անցման մի քաղաքական շրջան, որի պետությունը «ուրիշ ոչինչ չի կարող լինել, բացի պրոլետարիատի ռևոլյուցիոն դիկտատուրայից»:

Բոլոր ժամանակների օպորտունիստներն ու ռևիզիոնիստները բուրժուա-



զիային մատուցած իրենց ծառայությունը ամենից շատ դրսևորել են մարքսիզմ-լենինիզմի էությունը կազմող պրոլետարիատի դիկտատուրայի, ռևոլյուցիոն պարտիայի դերի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ժխտումով: Ժամանակակից ռևիզիոնիզմը անցած ժամանակների ռևիզիոնիզմի ու օպորտունիզմի հարազատ զավակն է, որը քայլում է իր նախորդների տրորված, պատմական փորձով բազմիցս ժխտված արահետով:

Սոցիալիստական համաշխարհային սիստեմի գոյացումը բանվոր դասակարգի ու աշխատավորության պատմական խոշորագույն հաղթանակն է, մարքսիզմի հաղթանակն ու իրականացումը: Սակայն համաշխարհային կոմունիստական շարժման շահերը պահանջում են բանվոր դասակարգի ուժերի համախմբում և առաջին հերթին հաղթանակած սոցիալիստական երկրների համախմբում իմպերիալիզմի դեմ:

Դա պահանջում է ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան սոցիալիստական երկրներում, անսասան պահել կոմունիստական, բանվորական պարտիաների ղեկավար դերը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը:

Երբ ժամանակակից ռևիզիոնիզմը և բոլոր այն վայ-մարքսիստները, որոնք իրենց երկրներում բուրժուազիայի տիրապետության տապալումից հետո մոռացության են տալիս բանվոր դասակարգի ինտերնացիոնալ շահերը, դավաճանում են մարքսիզմին: Ովքեր չեն ընդունում սոցիալիստական համաշխարհային սիստեմի երկրների համախմբվածության և միասնական լագերի անհրաժեշտությունը, նրանք պայքարի կես ճանապարհից հետ են կանգնում:

Սակայն զուր են ռևիզիոնիստների և ամեն կարգի թշնամիների հույսերը: Սոցիալիստական երկրների շահերի միասնությունը, սոցիալիստական հասարակարգի կառուցման ընդհանուր օրինաչափությունները ամրապնդում են այդ երկրների եղբայրական համագործակցությունը, որը ցեմենտվում է այդ երկրների տեսական հիմքը հանդիսացող մարքսիզմ-լենինիզմի ճշմարիտ, հզոր ու ամենահաղթ ուսմունքով:

Հին աշխարհը սոցիալիստական վերափոխումների ենթարկող այն հուրը, որը վառել էր ողջ տառապող մարդկության մեծ ուսուցիչ ու առաջնորդ Կարլ Մարքսը, դարձել է մի հզոր, անմար խարույկ, որն իր բոցերի մեջ այրում է հինը, իր դարն ապրածը: Ոչ մի ուժ չի փրկի հինը: Այն դատապարտված է մահվան:

---

# ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻ ՄԱՍԻՆ*

## Պ. ՖԵԴՈՍԵԵՎ, Ի. ՊՈՄԵԼՈՎ, Վ. ՉԵՊՐԱԿՈՎ

Ծրագրի քննարկումը և ընդունումը յուրաքանչյուր կոմունիստական պարտիայի կյանքում մեծ իրադարձություն է. դա պարտիայի ներքին գործն է, սակայն բնականաբար, այն հետաքրքրություն է առաջացնում նաև մյուս երկրների կոմունիստների մեջ։ ՀԿՄ ծրագրի նախագիծը ուշադրություն է գրավում նաև այն պատճառով, որ այստեղ քննարկվող հարցերը մեծ չափով դուրս են գալիս Հարավսլավիայի ներքին պրոբլեմների շրջանակներից։ Այդ մասին ծրագրի ներածական մասում ուղղակի ասված է.

«Հարավսլավիայի կոմունիստների Միության ծրագիրն իրենից ներկայացնում է աշխարհում եղած ժամանակակից հակասությունների վերլուծություն և սահմանում է հարավսլավյան կոմունիստների հայացքներն ու դիրքավորումը աշխարհի հասարակական, տնտեսական և քաղաքական հարաբերությունների ընդհանուր պրոբլեմատիկայի նկատմամբ։

Հարավսլավիայի կոմունիստների Միության ծրագիրը սկզբունքային տեսակետ է արտահայտում արդի միջազգային բանվորական շարժման և ամբողջ աշխարհում սոցիալիզմի զարգացման մի քանի առավել էական պրոբլեմների վերաբերյալ» (էջ 8)։

ՀԿՄ ծրագրի նախագծին ծանոթանալիս կարելի է տեսնել, որ նրա մեջ մտցված են մի շարք ընդհանուր մարքսիստական-լենինյան դրույթներ, այնտեղ քիչ չեն ճիշտ ընդհանրացումները։ Սակայն դրա հետ միասին, ցավոք սրտի, շատ են նաև այնպիսի դրույթները, որոնք բացահայտորեն հակասում են մարքսիզմ-լենինիզմի տեսությանը, համաշխարհային կոմունիստական շարժման տեսությանն ու պրոպագանդային։ Դա հատկապես վերաբերում է այնպիսի հարցերին, ինչպիսիք են՝ արդի միջազգային զարգացման, երկու համաշխարհային սիստեմների հարցերը, տարբեր երկրներում և ամենից առաջ ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության փորձի հարցը, սոցիալիստական պետության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական երկրների միջև, կոմունիստական պարտիաների միջև փոխհարաբերությունների, արդի ռևիզիոնիզմի ու դոգմատիզմի ըմբռնման հարցերը։

Չի կարելի անտեսել այն, որ ծրագրի նախագծում պարունակվող արդի միջազգային դրության, համաշխարհային սոցիալիստական սիստեմի և միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման գնահատականը մի շարք կարևորագույն հարցերում հակասում է այն գնահատականին, որ տրվել է կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 թվականի նոյեմբերի խորհրդակցությունների ընդունած Դեկլարացիայում և Խաղաղության մանիֆեստում։ Ծրագրի նախագիծը կազմողները նշում են, որ սոցիալիզմի համար մղվող պայքարի ներկա էտապում «մի քանի տեսական ու պրակտիկ հարցերի վերաբերյալ եղած տեսակետներում գոյություն ունեն

* Սույն հոդվածը աննշան հապավումներով արտատպում ենք «Коммунист» ամսագրի 1958 թ. վեցերորդ համարից։ Խմբ.։



որոշ տարբերություններ»։ Այսպիսով, խոսքը վերաբերում է ոչ թե մանավոր հարցերին, այլ սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի սկզբունքային հարցերին, որոնց վերաբերյալ ՀԿՄ ծրագրի նախագծում առաջ է քաշվում հատուկ կոնցեպցիա։

***

ՀԿՄ ծրագրի նախագծում աչքի ընկնող տեղ է գրավում ժամանակակից կապիտալիզմի և սոցիալիզմին անցնելու ուղիների հարցը։ Կենտրոնականն
այստեղ այն գաղափարն է, ըստ որի ռևոլյուցիոն սոցիալիստական վերափոխման հետ միասին տեղի է ունենում նաև կապիտալիզմը սոցիալիզմի վե-
րափոխվելու էվոլյուցիոն պրոցես։ Էվոլյուցիոն ուղիով նույնպես սոցիալիստական հասարակություն առաջանալու հնարավորությունն ապացուցելու փոր-
ձը իր հետևից բերել է հակագիտական, ոչ-մարքսիստական, ոչ-լենինյան դատողությունների մի շղթա այն երևույթների և պրոցեսների վերաբերյալ, որոնք
բնորոշ են ժամանակակից կապիտալիզմին։

Ծրագրի նախագծում մոնոպոլիստական կապիտալիզմի մասին եղած ճիշտ դրույթների հետ կան նաև անճիշտ դրույթներ, հատկապես այնտեղ, որտեղ խոսքը վերաբերում է զարգացած կապիտալիստական երկրներում ներկայումս տիրապետող պետական մոնոպոլիստական կապիտալիզմին։ Այդ
փաստաթղթում պետական մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման քաղաքական ֆակտորները առաջին պլան են մղվում ի վնաս ներքին, կապիտալիզմին յուրահատուկ տնտեսական օրինաչափությունների վերլուծության։

Ճիշտ նշելով կապիտալիստական էկոնոմիկայում բուրժուական պետության աճած դերը, նախագիծը կազմողները դրա հետ մեկտեղ ճիշտ չեն պատկերում մոնոպոլիստական կապիտալի և նրա պետության միջև եղած հարաբերությունները։ Պետությունը, ասված է ծրագրի նախագծում, «ավելի ու ավելի
է վերահսկում կապիտալը, մասնակիորեն սահմանափակելով կապիտալիստական սեփականության նկատմամբ մասնավոր կառավարման իրավունքը և
մասնավոր կապիտալատերերից խլելով էկոնոմիկայում և հասարակության
մեջ նրանց ունեցած առանձին ինքնուրույն ֆունկցիաները։

Մոնոպոլիաների վերնախավերը պետական կառավարման հետ միավորվելու պրոցեսը շարունակվում է։ Այդ վերնախավերն իրենց գործունեության
որոշակի բնագավառներում ավելի ու ավելի են կորցնում իրենց նախկին, լիովին ինքնուրույն դերը, իսկ մոնոպոլիաների առանձին ֆունկցիաներ ավելի
մեծ չափերով են անցնում պետությանը» (էջ 18)։

Այն միտքը, թե պետական միջամտությունը նեղացնում է մոնոպոլիստական կապիտալի տնտեսական հզորության բազան, չի համապատասխանում կապիտալիստական հասարակության մեջ եղած իրական վիճակին։ Մի՞
թե առանձին ձեռնարկությունների կամ առանձին ճյուղերի պետականացումը
Անգլիայում, Իտալիայում, Ֆրանսիայում նեղացրեց ամբողջությամբ վերցրած
մոնոպոլիստական կապիտալի տնտեսական հզորության բազան։ Բնավ ոչ։ Դա
ազատեց մոնոպոլիաների այն կապիտալները, որոնք վռվել էին արդյունաբերության տեխնիկապես հետամնաց և վնասակար ճյուղերում (ածխային և
այլն)։ Դա այդ ծանր բեռը գրեց հարկատուների ուսերին և կապիտալիստներին հնարավորություն տվեց իրենց կապիտալները ներդնելու ուրիշ, շահութաբեր ճյուղերում։ Դա բոլոր մոնոպոլիաներին հնարավորություն տվեց օգտաքաղելու նրանից, որ պետական բյուջեի հաշվին արդյունաբերության հետամնաց ճյուղերի վերասարքավորումը կատարվեց, և այժմ մոնոպոլիստները
կարող են էժան գնով ստանալ ածուխ, էլեկտրաէներգիա և այլն։

Մի՞թե կապիտալիստական պետության կողմից իրականացվող վերահսկողությունն ու կարգավորումը սահմանափակում են կապիտալիստների իրավունքները իրենց սեփականությունը տիրելու և տնօրինելու գործում, նվազեցնում են վարձու բանվորների շահագործման աստիճանը։ Հասկանալի է՝ ոչ։
Բավական է առաջադրել մի հարց, թե ով ում է վերահսկում, այսինքն՝ ո՞ր դասակարգն է վերահսկողը և ո՞րը վերահսկվողը, և պարզ կդառնա, որ բուր-

կամ նույնիսկ վերացնել պատմական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների գործողությունը։ Դա վերացող դասակարգի հավատի նշանաբանն է։ Սովետական Միությունն իր քաղաքականությունը կառուցում է մարքսիզմ-լենինիզմի բազայի վրա, որին խորթ է բուրժուական իդեալիստական «բռնության թեորիան» և որը ելնում է օբյեկտիվ օրինաչափություններից, որոնք պայմանավորում են իր դարն ապրած հասարակարգի փոխարինումը ուրիշ, առաջավոր հասարակարգով։

Վճռական բողոք և առարկություն են առաջացնում ծրագրի նախագծում պարունակվող միանգամայն անհիմն դատողությունները՝ այսպես կոչված «շահերի ոլորտների», «ազդեցությունների ոլորտների» բաժանման մասին, որին իբր թե մասնակցում է նաև աշխարհում առաջին սոցիալիստական տերությունը։ Ծրագրում ասվում է. «Շահերի ոլորտների բաժանման մեթոդը և մյուս նույնանման քաղաքական ձևերը դրսևորվել էին դեռևս Թեհրանի, Յալթայի և Պոտսդամի կոնֆերանսներում, և շարունակվեցին հետպատերազմյան ժամանակաշրջանում ևս» (էջ 68—69). Նախագծի մի այլ տեղում ասված է. «Շահերի ոլորտների քաղաքականությունը թունավորել և դեռ թունավորում է միջազգային հարաբերությունները։ Գերմանիայի, Կորեայի, Վիետնամի ժողովուրդները ապրում են բաժանված, տարբեր հասարակական կառուցվածք, արհեստական սահմաններ ունեցող պետություններում, և հանդիսանում են բացահայտ ընդհարումների քողարկված օջախներ» (էջ 68)։

Հանրահայտ է, որ ո՛չ Թեհրանում, ո՛չ Յալթայում և ո՛չ էլ Պոտսդամում Սովետական Միությունը չի ձգտել «շահերի ոլորտներ» և «ազդեցության ոլորտներ» ձեռք բերել իր համար։ Այդ կոնֆերանսներում Սովետական Միությունը պայքարել է Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի երկրների ազգային անկախության և պետական սուվերենիտետի համար, և ոչ թե իր ազդեցության ոլորտների համար։ Դա եղավ այն պայմաններից մեկը, որոնք ֆաշիզմի լծից ազատագրված մի շարք երկրների ժողովուրդներին թույլ տըվեցին ընտրելու զարգացման սոցիալիստական ուղին։

Ինչ վերաբերում է այն բանին, թե Գերմանիայի, Կորեայի և Վիետնամի ժողովուրդները բաժանված են, ապա դրանում մեղավոր են իմպերիալիստները, որոնք հակառակվում են այդ երկրներից յուրաքանչյուրի խաղաղ միավորմանը։ Ինչպես պաշտոնական փաստաթղթերից հայտնի է, մինչև այժմ այդ հարցերում, օրինակ, գերմանական հարցում, Սովետական Միության և Հարավսլավիայի դիրքերը իրարից չեն տարբերվել։ Մեզ թույլ տանք հիշեցնելու, որ ՀԺԴՌ-ի պրեզիդենտ Իոսիպ Բրոզ Տիտոյի Սովետական Միություն կատարած այցելության կապակցությամբ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի Կառավարությունների համատեղ հայտարարության մեջ նշվում է. «...Երկու Կառավարություններն էլ գտնում են, որ ներկայումս, երբ հետպատերազմյան Գերմանիայի տերիտորիայում առաջացել են երկու սուվերեն պետություններ, նրա միավորմանը հասնելու համար բանակցություններ են անհրաժեշտ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի միջև։ Նրանք գտնում են նաև, որ մնացած պետությունները և առաջին հերթին մեծ տերությունները, պետք է գործեն նույն ուղղությամբ՝ ինչպես գերմանական ժողովրդի շահերի, այնպես էլ ընդհանուր շահերի օգտին»։

Ծրագրի նախագիծը կազմողները վերստին երկու հասցեով են ուղարկում սպառազինությունների մրցավազքի, «սպառազինությունների միջոցով ուժերի հավասարակշռության» քաղաքականության, միջուկային էներգիայի օգտագործման մասին իրենց կշտամբանքները, թեև բոլորին է հայտնի, որ սոցիալիստական լագերը պատասխանատվություն չի կրում սպառազինությունների մրցավազքի համար։ Նրա կազմի մեջ մտնող երկրները իրենցից կախված ամեն ինչ անում են, որպեսզի դադարեցնեն սպառազինությունների մրցավազքը։ Բայց ինքնըստինքյան հասկանալի է, որ սոցիալիստական երկրները նաև ձեռնարկում են բոլոր անհրաժեշտ միջոցները իրենց անվը-



տանգության ապահովելու համար։ Այդ հանգամանքը ո՛չ պակաս կարևոր նշանակություն ունի նաև այն պետությունների անվտանգության ապահովման համար, որոնք չեն մտնում սոցիալիստական լագերի մեջ։

Աչքի է զարնում, որ նախագծում Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականության վրա կատարվող հարձակումները հակասում են այն բանին, ինչ իր ելույթում ասում էր ՀԺԴՌ-ի պրեզիդենտ Իոսիպ Բրոզ Տիտոն 1956 թվականի հունիսի 28-ին Բելգրադում կայացած միտինգում, Մոսկվայից Հարավսլավական կառավարական պատվիրակության վերադառնալուց հետո։ «Դեկլարացիայի միջազգային պրոբլեմներին նվիրված մասից,— ասում էր նա այն ժամանակ,— երևում է, որ մեզ մոտ գոյություն ունի հայացքների նույնություն շատ կարևորագույն հարցերում, որոնք վերաբերում են խաղաղության և միջազգային համագործակցության ամրապնդմանը, պետությունների և ժողովուրդների միջև եղած հարաբերություններին, տարբեր հասարակական սիստեմներ ունեցող պետությունների խաղաղասիրական գոյակցությանը»։ Ընկեր Տիտոն շատ համոզիչ էր խոսում այն մասին, որ «Սովետական Միության ժողովուրդների համար խաղաղությունը ամեն ինչից թանկ է և որ ժողովրդի այդ ձգտումները բաժանում են նաև սովետական բարձրագույն ղեկավարները»։

Չի կարելի ճիշտ համարել ՀԿՄ ծրագրի նախագծում շարադրված միջազգային հարաբերությունների նոր կոնստրուկցիան, որի մեջ հավասարության նշան է դրվում սոցիալիզմի լագերի արտաքին քաղաքականության և իմպերիալիզմի լագերի արտաքին քաղաքականության միջև։

Սովետական Միությունը մյուս սոցիալիստական երկրների հետ սերտորեն համագործակցած, աշխարհի բոլոր խաղաղասեր ժողովուրդների հետ ուս-ուսի տված, մեծագույն ջանքեր է ներդնում նոր պատերազմը կանխելու նպատակով։ Վերջին ժամանակներս ՍՍՌՄ-ը բազմաթիվ նոր կոնստրուկտիվ առաջարկություններ է արել, մի շարք արտաքին քաղաքական քայլեր է ձեռնարկել միջազգային լարվածության թուլացման, սպառազինությունների մրցավազքի դադարեցման, միջուկային զենքի արգելման հասնելու համար։ Վերջերս ՍՍՌՄ Գերագույն Սովետը որոշում ընդունեց Սովետական Միությունում ատոմային և ջրածնային զենքի փորձարկումները միակողմանիորեն դադարեցնելու մասին։ ՍՍՌՄ Գերագույն Սովետը Ամերիկայի Միացյալ Նահանգներին և Անգլիային կոչ արեց հետևել Սովետական Միության օրինակին։ Եվ մի՞թե Սովետական Միությունն է մեղավոր այն բանում, որ նրա առաջարկությունները դեռևս չեն հանդիպել ԱՄՆ-ի և մյուս արևմտյան տերությունների կառավարող շրջանների դրական վերաբերմունքին։ Մի՞թե Սովետական Միությունն է մեղավոր այն բանում, որ արևմտյան տերությունները չեն ցանկանում հետևել նրա օրինակին և դադարեցնել ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումները։ Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և սոցիալիստական լագերի մյուս երկրները, գիտակցելով իրենց վիճակված պատմական միսիան, հաստատակամորեն և հետևողականորեն վարում են խաղաղության և ժողովուրդների անվտանգության քաղաքականություն։

***

ՀԿՄ ծրագրի նախագծի հեղինակները, շոշափելով սոցիալիստական զարգացման փորձը Սովետական Միությունում և մյուս սոցիալիստական երկրներում, ընդունում են, որ այն «թանկարժեք փորձ է միջազգային սոցիալիզմի համար»։ Նախագծում նշվում է ՍՍՌՄ-ի՝ որպես սոցիալիզմի առաջին երկրի, պատմական դերը, որն օրինակ ցույց տվեց մյուս երկրներին հասարակության պրոգրեսիվ զարգացման գործում։ Նախագծում խոսվում է Սովետական Միության խոշոր հաջողությունների մասին՝ ինդուստրիալ բազայի ստեղծման և սոցիալիստական հարաբերությունների հետագա զարգացման բնագավառում, որոնք ՍՍՌՄ-ին հնարավորություն տվեցին հակահիտլերյան բլոկի մյուս երկրների հետ դաշինք կնքած հաղթանակ տանելու

րականգնելու, սոցիալիստական կարգերը վերացնելու իրենց մտադրություններից: Միջազգային իմպերիալիզմի առջև սոցիալիստական երկրները անզեն կլինեին, եթե կանգնեին պետության այնպիսի կարևորագույն ֆունկցիայի կծկման և վերացման ուղու վրա, ինչպիսին է երկրի պաշտպանությունը:

Երկրորդ, դեռ սոցիալիզմի ժամանակ էլ մնում է տարբերությունը բանվորների և գյուղացիների բարեկամ դասակարգերի միջև, դեռևս չեն վերացված էական տարբերությունները մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև, դեռևս ձեռք չի բերվել սպառման առարկաների առատություն, և բաշխումը իրագործվում է ըստ աշխատանքի: Այստեղից էլ՝ աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ հասարակության և պետության կողմից խիստ վերահսկողության անհրաժեշտությունը:

«Պետությունը,— գրել է Լենինը,— լիովին մահանալ կկարողանա այն ժամանակ, երբ հասարակությունը կիրականացնի՝ «յուրաքանչյուրն ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ իր պահանջմունքների» կանոնը, այսինքն՝ երբ մարդիկ այն աստիճան կսովորեն համակեցության հիմնական կանոնները պահպանել, և երբ նրանց աշխատանքն այնքան արտադրողական կլինի, որ նրանք հոժարակամ կսկսեն աշխատել ըստ ընդունակությունների» (Երկեր, հատ. 25, էջ 610—611):

Երրորդ, սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո ազգային տարբերությունները մնում են դեռ երկար ժամանակ. ազգային սուվերենիտետը ոչ միայն չի մահանում, այլև, ընդհակառակը, իսկապես ապահովվում է և ամրապնդվում: Բայց յուրաքանչյուրին է հայտնի, որ ազգային սուվերենիտետը կապված է պետական սահմանների հարցի հետ: Պետությունների բախտը քննարկելիս չի կարելի անտեսել նրանց սահմանները որոշելու հարցը: Լենինիզմն ուսուցանում է, որ հաղթանակած սոցիալիզմը բոլոր գծերով լիակատար դեմոկրատացում անցկացնելով՝ չի կարող հրաժարվել պետության սահմանները դեմոկրատորեն որոշելուց: Չէ՞ որ եթե չկա պետություն, չկա և նրա սահմանների հարց: «Ռեսպուբլիկան էլ չի լինի,— ասում էր Լենինը,— երբ պետությունը «մահանա»» (Երկեր, հատ. 22, էջ 435):

ՀԿՄ ծրագրի նախագծի հեղինակները խոսում են պետական անկախության ամրապնդման մասին և միաժամանակ որպես պրակտիկ խնդիր հռչակում են պետության մահացումը: Եթե նրանք հետևողական լինեին, ապա պետք է դնեին նաև պետական սահմանների անէացման հարցը: Բայց մի՞թե որևէ սոցիալիստական երկրում արդեն հասունացել է պետական սահմանների անէացման հարցը: Լենինը խորապես իրավացի էր, երբ պետության մահացման հարցը կապում էր ոչ միայն դասակարգերի լիակատար չքացման հետ, այլև ազգերի է՛լ ավելի սերտ մերձեցման և միաձուլման հետ: «Ազգային ճնշումը վերացնելու համար,— ասում էր Լենինը,— անհրաժեշտ է ֆունդամենտ — սոցիալիստական արտադրություն, բայց այդ ֆունդամենտի վրա անհրաժեշտ է ունենալ նաև պետության դեմոկրատական կազմակերպություն, դեմոկրատական բանակ և այլն... Այս բազայի վրա, իր հերթին, կծավալվի ազգային ամենափոքր բախումների, ամենափոքրիկ անվստահության գործնականորեն բացարձակ վերացումը, կստեղծվի ազգերի արագացված մերձեցում և միաձուլում, որը կավարտվի պետության մահացմամբ» (Երկեր, հատ. 22, էջ 438):

Այսպես ուրեմն, Լենինի տեսակետով, ազգերի մերձեցումը և միաձուլումը պետության մահանալով ոչ թե սկսվում է, այլ ավարտվում է:

Լենինյան այդ ցուցումները մեր ժամանակ իսկապես կենսական նշանակություն ունեն: Հայտնի է, որ շատ երկրներ իրենց ազգային ինքնուրույնությունը ձեռք են բերել միայն սոցիալիստական զարգացման ուղին անցնելու ժամանակ: Կասկած չկա, որ ապագայում ևս շատ երկրներ ազգային սուվերենություն կստանան սոցիալիզմի նոր հաջողությունների և կապիտալիզմի հետագա թուլացման շնորհիվ: Այդ պայմաններում պետության մահացման հարց դնել՝ նշանակում է վերացնել դարեր շարունակ գաղութային ստրկության մեջ գտնվող ժողովուրդների համար ազգային սուվերենիտետի նվաճման և պետական անկախության ապահովման վիթխարի կարևորության ամբողջ պրոբլեմը:



Հավանաբար, նախագծի հեղինակները ուշադրության չեն առել պետության մահացման արմատական նախադրյալների հարցը: Ինչպես երևում է, նրանք, ելնելով այն բանից, որ պետության մի քանի ֆունկցիաներ արդեն այժմ մահանում են, գործին մոտեցել են պարզապես քանակական տեսակետից, ենթադրելով, թե պետական ֆունկցիաների քանակական կրճատումն էլ նշանակում է պետության լիակատար մահացում:

Սակայն ճիշտ չէ շփոթել պետության առանձին ֆունկցիաների փոփոխման և վերացման հարցը ամբողջությամբ պետության մահացման հետ՝ որպես որոշակի սոցիալ-քաղաքական երևույթի: Սոցիալիստական պետությունը դեռևս բոլորովին էլ իրեն չի սպառել, որպեսզի կարելի լիներ դնել նրա արագ մահացման խնդիրը: Սոցիալիստական պետությունը սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ամենալայն ասպարեզն է:

Չի կարելի կարծել, թե իբր հնարավոր է այս կամ այն վարչական միջոցառումով, դեկրետավորման ճանապարհով արագացնել պետության լիակատար մահացումը: Պետության լիակատար մահացման հարցը, ինչպես արդեն նշվել է, դասակարգերի և դասակարգային տարբերությունների լրիվ չքացման, ազգերի հետագա մերձեցման և միաձուլման հարց է:

Քաղաքականությունը՝ հարաբերություն է դասակարգերի, ազգերի միջև: Այդ հարաբերություններն էլ հանդիսանում են պետական կառուցվածքի բնագավառը: Կարելի է վերանվանել պետական հիմնարկները, նրանց ֆունկցիաները կարելի է հանձնել հասարակական կազմակերպություններին, բայց դրանից ո՛չ հիմնարկները, ո՛չ էլ ֆունկցիաները չեն դադարի իրենց էությամբ քաղաքական լինելուց:

Հասարակական ֆունկցիաները կկորցնեն իրենց քաղաքական բնույթը և սոցիալական շահերի նկատմամբ հսկողության պարզ վարչական ֆունկցիաների կփոխարկվեն միայն լիակատար կոմունիզմի ժամանակ, այսինքն՝ դասակարգերի չքացման հետ մեկտեղ, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների ոչնչացման հետ մեկտեղ, ազգերի մերձեցման և միաձուլման հետ մեկտեղ:

Սոցիալիստական վերափոխումների առաջին էտապներում պետության մահացման թեզը պարտիայի ծրագրում հռչակելու պահանջը բոլորովին էլ նոր չէ արդի կոմունիստական շարժման մեջ: Այդպիսի պահանջով ՍՍՌՄ-ում մի քանի տեսաբաններ հանդես էին գալիս դեռևս 1918 թվականին, Ռուսաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի նոր ծրագրի նախագծի քննարկման ժամանակ: Լենինն այն ժամանակ առարկում էր նման պահանջի դեմ, բացատրելով, որ տեսական երկերում, հոդվածներում, դասախոսություններում, ճառերում կարելի է և պետք է այդպիսի հարցեր դնել, բայց դեռևս ո՛չ ծրագրում: «Նախապես հռչակել պետության մահացումը՝ պատմական հեռանկարի խախտում կլինի» (Երկեր, հատ. 27, էջ 166):

Հարավսլավիայի կոմունիստների Միության ծրագրի նախագիծը կարդալիս ստեղծվում է այնպիսի տպավորություն, որ հեղինակները ելնում են սոցիալիզմի ժամանակ պետության և դեմոկրատիայի անհամատեղելիության մասին սխալ պատկերացումից: Նրանք, ինչպես երևում է, գտնում են, որ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումն անհնարին է առանց պետության վերացման և մահացման:

Սակայն այդպիսի տեսակետը չի համապատասխանում մարքսիզմ-լենինիզմի հայացքներին և հասարակական զարգացման ընթացքին: Չի կարելի սոցիալիստական դեմոկրատիան հակադրել սոցիալիստական պետությանը և ենթադրել, թե դեմոկրատիայի զարգացումը հնարավոր է միայն պետական իշխանության թուլացման և մահացման հաշվին: Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները սոցիալիստական դեմոկրատիան չէին հակադրում պրոլետարիատի դիկտատուրային, այլ, ընդհակառակը, գտնում էին, որ պրոլետարիատի դիկտատուրան դեմոկրատիայի հենց բարձրագույն ձևն է: Պատահական չէ, որ

ըըստացմանը» նպաստելու իրենց ձգտման մասին, նրա մեջ մտցնում են շատ գաղափարներ, որոնք խորթ են մարքսիզմ-լենինիզմին։

Ընդ որում ծրագրի նախագծի հեղինակները իրենց վրա համարձակություն են վերցնում ապացուցելու, թե իբր «մարքսիստական միտքը վերջին տասնամյակներում ետ է մնացել արդի հասարակության զարգացումից»։

Մեր օրերում տարօրինակ է լսել մարքսիստական-լենինյան մտքի «ետ մնալու» մասին, երբ այն տիրապետում է միլիոնավոր մարդկանց մտքերին, երբ մարդկության գրեթե մեկ երրորդը մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո սոցիալիստական հասարակություն է կառուցում, երբ սոցիալիզմը հասել է այնպիսի համաշխարհային պատմական հաղթանակների, երբ սոցիալիստական շինարարությունն ընթանում է ոչ թե խարխափումներով, այլ պայծառ կերպով լուսավորված է մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, որոնք հարստանում են այդ շինարարության պրոցեսում։ Մարքսիստական-լենինյան մտքի հզոր զարգացման ինչպիսի՞ ամենահամոզիչ ապացույց է հանդիսանում արդի հասարակական զարգացման սկզբունքային պրոբլեմների մշակումը, որը կատարված է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի, Չինաստանի Կոմունիստական պարտիայի VIII համագումարի և մյուս մարքսիստական-լենինյան պարտիաների որոշումներում։ Խոշոր նշանակություն ունեցող տեսական ընդհանրացումներ են կատարված կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների՝ 1957 թվականի աշնանը Մոսկվայում կայացած խորհրդակցությունների կողմից։

Բուրժուական պրոպագանդան վերցրել և իր նպատակներին է օգտագործում ծրագրի նախագծում եղած դրույթները, որոնք հակասում են կոմունիզմի գաղափարական հիմունքներին։ Այն նախագծի հեղինակների հասցեին կոմպլիմենտներ է շռայլում, գովում է նախագիծն այն բանի համար, որ այն տալիս է «մի ընդարձակ տեսական արդումենտացիա, որը սկզբունքորեն բաժանվում է մոսկովյան գծից», այն բանի համար, որ նա «կրկնում է այն իդեոլոգիական հայացքները, որոնք 1956 թվականի աշնանը կտրուկ կոնֆլիկտի հասցրին Կրեմլի հետ»։ Բայց վաղուց է հայտնի, որ հարձակվելով «մոսկովյան գծի» և «Կրեմլի» դեմ, բուրժուական պրոպագանդան նկատի ունի միջազգային ամբողջ կոմունիստական շարժման գիծը։ Բուրժուական պրոպագանդան, որը մշտապես սխալվել է միջազգային կոմունիստական շարժման թուլացման վերաբերյալ իր հույսերի մեջ, հավանաբար այս անգամ էլ կսխալվի։

Հարավսլավիայի կոմունիստների Միության ծրագրի նախագիծը ընդհանրացված ձևով արտացոլում է այն տարաձայնությունները, որոնք այսօր չէ, որ հայտաբերվել են հարավսլավյան ընկերների մոտ միջազգային կոմունիստական շարժման հարցի կապակցությամբ։ Նախագիծը ցույց է տալիս, որ շատ կարևոր հարցերի գծով այդ տարաձայնությունները դեռևս մնացել են։

Հայտնի է, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիան և մյուս եղբայրական պարտիաները վերջին տարիներս շատ բան արեցին մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա, հօգուտ խաղաղության և սոցիալիզմի գործի շահերի, Հարավսլավիայի կոմունիստների Միության հետ մերձենալու համար։ Ընդ որում ՍՄԿՊ-ն միշտ ելել է այն բանից, որ մերձեցումը չի կարող տեղի ունենալ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների զիջման հաշվին։ Եվ այժմ, երբ ՀԿՄ ծրագրի նախագծում մի շարք կարևորագույն հարցերի գծով գոյություն ունի բացահայտ նահանջ մարքսիստական-լենինյան տեսության հիմունքներից, այդ բանը չի կարող մնալ առանց պատասխանի, առանց սկզբունքային ընկերական քննադատության։

Հասկանալի է, որ պարտիական ընկերական քննադատությունը պետք է խոչընդոտ չհանդիսանա մեր պարտիաների և երկրների միջև բարեկամական հարաբերությունների հետագա զարգացմանը։

---

# ԸՆԴԴԵՄ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՌԵՎԻԶԻԱՅԻ

## Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Մեր դարը՝ ամբողջ մարդկային հասարակությունը կոմունիզմի սկզբունքներով վերափոխելու դարն է, որի սկիզբը դրել է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան Ռուսաստանում։ Այժմ արդեն ամբողջ աշխարհի բնակչության ավելի քան մեկ երրորդը՝ ինը հարյուր հիսուն միլիոնից ավելի մարդ բռնել է սոցիալիզմի ուղին և նոր կյանք է կառուցում։ Սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման զարգացումը խիստ արագացրել է իմպերիալիզմի քայքայման պրոցեսը։ Իմպերիալիստական պետություններում հասարակությունը բզկտված է դասակարգային խոր հակասություններից։ Բանվոր դասակարգը ավելի ու ավելի վճռականորեն է հակադրվում իմպերիալիզմի և մոնոպոլիաների քաղաքականությանը, պայքարում է իր կենսապայմանների բարելավման, դեմոկրատական իրավունքների համար, խաղաղության ու սոցիալիզմի համար։ Բանվոր դասակարգը կոմունիստական պարտիաների ղեկավարությամբ հանդես է գալիս որպես իսկական ռևոլյուցիոն ուժ, որը իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում համախմբում է բոլոր աշխատավորներին և հասարակության առաջադեմ խավերին։ Բանվորական և կոմունիստական շարժումը շարունակում է աճել։ Նրա մասսայականության և կազմակերպվածության աճի մասին է վկայում այն փաստը, որ աշխարհում արհմիությունների անդամների ընդհանուր թիվը 40 տարվա ընթացքում ավելացել է 10 անգամ։ Եթե մեկ քառորդ դար առաջ ամբողջ աշխարհում հաշվվում էր ոչ ավելի քան 3,5 միլիոն կոմունիստ, ապա կոմունիստական պարտիաների շարքերում ներկայումս կա 33 միլիոն մարդ։

Կոմունիստական գաղափարների, սոցիալիզմի հաղթարշավի պայմաններում, երբ սոցիալիստական երկրների ժողովուրդները կոմունիստական պարտիաների ղեկավարությամբ կյանքում իրագործում են մարքս-լենինյան ուսմունքը, երբ սոցիալիզմի գաղափարներն իրենց կողմն են նվաճում կապիտալիստական աշխարհի միլիոնավոր աշխատավորների, իմպերիալիստական ռեակցիան ուժեղացրել է գաղափարական հարձակումները մարքսիզմ-լենինիզմի դեմ, Սովետական Միության և կոմունիստական պարտիաների դեմ, օգտագործելով ամեն տեսակի աջ օպորտունիստական, սոցիալ-դեմոկրատական, ռևիզիոնիստական և ազգայնական հոսանքներն ու հայացքները։

Բանվորական շարժման մեջ օպորտունիստական տարբեր հոսանքները բուրժուազիայի գաղափարախոսության տարածողներն են։ Դրանք հեշտացնում են իմպերիալիստական ռեակցիայի հարձակումը մարքսիզմ-լենինիզմի, կոմունիստական պարտիաների վրա, փորձում են պրոլետարիատին պառակտել ներսից և զինաթափել նրան։ Ահա թե ինչու կոմունիստական և բանվորական պարտիաներն իրենց առաջնահերթ խնդիրն են համարում ակտիվ և

անհաշտ պայքար ծավալել օպորտունիզմի և առաջին հերթին ռևիզիոնիզմի բոլոր և ամեն տեսակի դրսևորումների դեմ: Սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների 1957 թվականի նոյեմբերի 14—16-ը Մոսկվայում տեղի ունեցած խորհրդակցության Դեկլարացիայում ասված է. «Դատապարտելով դոգմատիզմը, կոմունիստական պարտիաները ժամանակակից պայմաններում գլխավոր վտանգը համարում են ռևիզիոնիզմը, այլ կերպ ասած՝ աջ օպորտունիզմը՝ որպես բուրժուական գաղափարախոսության դրսևորում, որը չլատում է բանվոր դասակարգի ռևոլյուցիոն եռանդը, պահանջում է պահպանել կամ վերականգնել կապիտալիզմը»:

* * *

Փորձը վկայում է, որ ռևիզիոնիզմը հատկապես ակտիվանում է պատմական կտրուկ շրջադարձերի ժամանակ: Այն որպես քաղաքական ուղղություն իր տարբեր տարատեսակներով հանդես եկավ անցյալ դարի 90-ական թվականներին, այնուհետև ակտիվացավ մեր դարի առաջին տասնամյակներին, երբ կապիտալիզմը գերաճել էր իմպերիալիզմի ստադիան և սկսվել էր պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանը, և Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայից անմիջապես հետո, երբ սոցիալիզմի գաղափարներն արդեն կենսագործվում էին պրակտիկայում: Ռևիզիոնիզմն աշխուժացել է նաև այժմ, երբ սոցիալիզմը վերածվել է համաշխարհային սիստեմի:

Թե ինչի է հասցնում ռևիզիոնիզմը, ցույց են տվել ներկա աջ օպորտունիստների նախորդները՝ Բեռնշտայնը, Կաուցկին, Միլյերանը, Հիլֆերդինգը և մյուսները, որոնք վերջի վերջո դավաճանեցին բանվոր դասակարգին՝ հանուն բուրժուազիայի շահերի պաշտպանության: Նրանք ծնունդ տվին ժամանակակից աջ սոցիալ-դեմոկրատիային, որն իր ուսուցիչներից ավելի աջ է գնացել: Դա իրենց վարքագծով պրակտիկայում ապացուցել են սպաակներն ու էտլիները, լեոնբլյումներն ու գիմոլեները:

Բեռնշտայնը և Կաուցկին, սրանց ռուսական հետևորդները և բանվորական շարժման մեջ ռեֆորմիզմի մյուս ներկայացուցիչները իրենց ներկայացնելով որպես մարքսիզմի կողմնակիցներ, իրականում վերանայում էին մարքսիզմի հիմնական դրույթները դասակարգային պայքարի, սոցիալիստական ռևոլյուցիայի, պրոլետարիատի դիկտատուրայի մասին: Նրանց գլխավոր ջանքերն արդեն այն ժամանակ ուղղված էին այն բանին, որպեսզի մարքսիզմը զրկեին ռևոլյուցիոն բովանդակությունից, ամորձատեին այն:

Սկսած իր սկզբնավորման շրջանից բոլշևիկների պարտիան նրա հանճարեղ հիմնադիր Վ. Ի. Լենինի գլխավորությամբ երկարատև և համառ պայքար մղեց ռևիզիոնիզմի դեմ: Վլադիմիր Իլյիչը խոր կերպով բացահայտելով ռևիզիոնիզմի էությունը, հարված հարվածի ետևից հասցրեց ինչպես նրա միջազգային, այնպես և ռուսական այլատեսակություններին՝ «լեգալ մարքսիստներին», «էկոնոմիզմին», «մենշևիզմին»» և լիկվիդատորությանը: Նա ցույց տվեց, որ «ռևիզիոնիզմը կամ մարքսիզմի «վերանայումը» ներկայումս հանդիսանում է պրոլետարիատի վրա բուրժուական ազդեցության և պրոլետարների բուրժուական այլասերման գլխավոր արտահայտություններից մեկը, եթե ոչ ամենագլխավորը: Հենց այս է պատճառը, որ օպորտունիստների պարագլուխ Էդուարդ Բեռնշտայնը ստացել է այդպիսի համաշխարհային (տխուր) հռչակ» (Երկեր, հ. 20, էջ 399):



Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ ռևիզիոնիստները միայն խոսքով են ընդունում մարքսիզմի այս կամ այն դրույթը, իսկ գործով այն մաքրում են ռևոլյուցիոնությունից, այն փոխարինում են բուրժուական հայեցակետով: Ռևիզիոնիստները, գրել է Վլադիմիր Իլյիչը, ձգտում են «...վերցնել մարքսիզմից այն ամենը, ինչ ընդունելի է լիբերալ բուրժուազիայի համար, ընդհուպ մինչև պայքարը հանուն ռեֆորմների, ընդհուպ մինչև դասակարգային պայքարը (առանց պրոլետարիատի դիկտատուրայի), ընդհուպ մինչև «սոցիալիստական իդեալների» և կապիտալիզմը «նոր կարգերով» փոխարինելու «ընդհանուր» ընդունումը ու դեն գցել մարքսիզմի «միայն» կենդանի հոգին, «միայն» նրա ռևոլյուցիոնությունը» (Երկեր, հ. 21, էջ 274):

Իր հանրահռչակ աշխատություններում, որոնք պատմական հսկայական դեր են խաղացել մարքսիզմը խեղաթյուրումներից և գռեհկացումից պաշտպանելու, ռևիզիոնիստների դավաճանական տակտիկան մերկացնելու գործում և որոնք այժմ էլ ամբողջապես պահպանում են իրենց նշանակությունը ժամանակակից ռևիզիոնիստների դեմ մղվող պայքարում, Լենինը բազմակողմանիորեն վեր է հանել ռևիզիոնիզմի առաջացման սոցիալական պատճառները: Նա նշում էր, որ բանվոր դասակարգի միասնությունը խախտելու նպատակով բուրժուազիան կաշառում է բանվորների վերնախավին և նրան իրեն հենարան է դարձնում: Ոչ պրոլետարական դասակարգերից եկածները և բանվորական արիստոկրատիան բանվորական շարժման մեջ նպաստավոր հող են ստեղծում օպորտունիստական տարբեր հոսանքների համար:

Բուրժուական գաղափարախոսության պրոպագանդան, որն այժմ իրականացվում է հարյուրավոր ռադիոկայանների, հեռուստակայանների, հազարավոր թերթերի և ամսագրերի միջոցով, ազդում է բանվոր դասակարգի մի մասի և անկայուն կոմունիստների վրա, մասնավորապես նրանց վրա, ովքեր չունեն գաղափարական անհրաժեշտ կոփվածություն, չեն անցել մարքսիստական-լենինյան դաստիարակություն, ռևոլյուցիոն պայքարի դպրոց: Բացի այդ, մոնոպոլիստական կապիտալիզմը քաղաքական և տնտեսական ճնշում է գործ դնում բանվոր դասակարգի վրա, փորձելով դրակոնյան մեթոդներով խեղդել կոմունիստական և բանվորական շարժումը:

Այսպիսի պայմաններում բանվոր դասակարգի անկայուն մասի շարքերում գտնվում են մարդիկ, որոնք քարոզում են ենթարկվել մոնոպոլիաների հարձակմանը, հրաժարվել մարքսիզմ-լենինիզմի «ծայրահեղություններից», այսինքն հրաժարվել նրա ռևոլյուցիոնությունից:

Կոմունիստական շարժման մեջ ռևիզիոնիզմի աշխուժացումն անմիջականորեն արտահայտվեց բանվորական շարժման զարգացման, առաջին հերթին սոցիալիստական ռևոլյուցիայի և յուրաքանչյուր երկրի ազգային պայմաններին համապատասխան՝ սոցիալիզմի կառուցման հարցերի շուրջը պարտիաներում ծավալված ստեղծագործական վեճերի ընթացքում: Մարքս-լենինյան վերլուծության զենքին անբավարար տիրապետելը, դասակարգային պայքարի դժվարությունները, եղբայրական պարտիաների առանձին անհաջողությունները տարբեր երկրներում որոշ անկայուն կոմունիստների հրեցին պարտիայի գլխավոր գծի նկատմամբ տատանումների և կասկածների, լիկվիդատորության ուղին: Սրանք մոռացան դասակարգային պայքարը, դեն նետեցին պրոլետարիատի դիկտատուրայի սկզբունքը, մյուսները ժխտեցին պրոլետարական ինտերնացիոնալիզմը և մոռացան կոմունիստական պարտիայի դերը: Որոշ

մարդիկ էլ «հանուն ազատության» համաձայնողական դիրք գրավեցին բուրժուական դիկտատուրայի նկատմամբ, «հանուն ազնվության» կորցրին իրենց կոմունիստական ազնվությունը:

«Ժամանակակից ռևիզիոնիզմը,—ասված է Դեկլարացիայում,— ձգնում է արատավորել մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքը, այն հայտարարում է «հնացած» և ներկայումս հասարակական զարգացման համար նշանակություն իբր կորցրած: Ռևիզիոնիստները ձգտում են վերացնել մարքսիզմի ռևոլյուցիոն ոգին, խարխլել բանվոր դասակարգի և աշխատավոր ժողովրդի հավատը սոցիալիզմի նկատմամբ: Նրանք հանդես են գալիս կապիտալիզմից սոցիալիզմին անցնելիս պրոլետարական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի պատմական անհրաժեշտության դեմ, ժխտում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, պահանջում են հրաժարվել պարտիական շինարարության հիմնական լենինյան սկզբունքներից և ամենից առաջ դեմոկրատական ցենտրալիզմից, պահանջում են Կոմունիստական պարտիան մարտական ռևոլյուցիոն կազմակերպությունից վերածել դիսկուսիոն ակումբի նման ինչ-որ բանի»:

Ինչպես անցյալում, այնպես էլ ներկայումս ռևիզիոնիզմը միջազգային բնույթ ունի: Նրա բոլոր տարատեսակությունների սոցիալական էությունը միևնույնն է: Բայց տարբեր երկրներում այն տարբեր ձևով է արտահայտվում: Իր «Ի՞նչ անել» հռչակավոր աշխատության մեջ Լենինը մատնանշել է, որ «...միջազգային օպորտունիզմի միանման սոցիալ-քաղաքական բովանդակությունն արտահայտվում է այս կամ այն տարատեսակությամբ՝ ազգային առանձնահատկություններին համապատասխան» (Երկեր, հ. 5, էջ 474—475): Ժամանակակից ռևիզիոնիզմը նախ և առաջ արտահայտվում է այն բանում, որ ռևիզիոնիստները սքողում են իմպերիալիզմի ագրեսիվ էությունը, միջազգային ռեակցիայի և ԱՄՆ-ի կողմից նախապատրաստվող համաշխարհային նոր պատերազմի ռեալ վտանգը, իսկ ավելի բացահայտ ռևիզիոնիստները ստորաքարշում են կապիտալիստական էկոնոմիկայի և ամբողջությամբ վերցրած կապիտալիստական սիստեմի հանդեպ:

«Նորագույն» ռևիզիոնիստները հարություն են տալիս մարքսիզմ-լենինիզմի կողմից վաղուց ջախջախված Բեռնշտայնի և մյուսների թեորիաներին, կապիտալիզմի «կայունության», բուրժուական հասարակության տնտեսական և սոցիալական հիմքերի պահպանման պայմաններում նրա արմատական հակասությունների հաղթահարման մասին: Բեռնշտայնականության ծագումից տասնամյակներ են անցել, աշխարհում պատմական փոփոխություններ են կատարվել, որոնք պերճախոս կերպով վկայում են համաշխարհային կապիտալիզմի լուրջ և խորացող քայքայման, սոցիալիզմի համաշխարհային ուժերի անհաղթահարելիության մասին, պրոլետարիատի և նրա ճշմարիտ գործի հաղթանակի անխուսափելիության մասին: Իսկ ռևիզիոնիստները առաջվա պես բարբաջում են, որ «կապիտալիստական կարգը ամուր և կայուն է», «իմպերիալիզմի հակասությունները հարթվում են», որ իբր թե սկսվել է կապիտալիստական էկոնոմիկայի «ոչ ճգնաժամային» զարգացման դարաշրջանը:

Սա փաստորեն մոնոպոլիստական կապիտալիզմի ճանաչված ջատագով,



բուրժուական վուլգար տնտեսագետ, անգլիացի Քեյնսի (1883—1946 թթ.), հայացքների կրկնությունն է, որով ավելի հաճախ սիրում են զբաղվել և «դեմոկրատական սոցիալիզմի» տեսական հիմք համարել աջ սոցիալիստներն ու լեյբորիստները: Լեյբորիստների գլխավոր տեսաբաններից մեկը, ֆաբիական ընկերության նախագահ Գ. Քոուլը իր «Սոցիալիստական էկոնոմիկա» գրքում գրում է, որ ««դեմոկրատական սոցիալիզմը» կարող է կառուցվել զգալի չափով հենվելով Քեյնսի ուսմունքի վրա» (G. D. H. Cole, «Socialist Economics», London, 1950, p. 47): Աջ սոցիալիստները, լեյբորիստները և ռեակցիոն արհմիությունների ղեկավարները պաշտպանում են «ժողովրդական կապիտալիզմի» տեսությունը: Նույն Քոուլը հայտարարում է, որ «ժամանակակից կապիտալիզմը խորապես տարբերվում է 1848 թվականի կապիտալիզմից». Նրան ձայնակցում է լեյբորիստ Ստրեչին «Ժամանակակից կապիտալիզմը» գրքում, իսկ սրանց կրկնում են ռևիզիոնիստները:

Ներկայումս հատկապես շատ են բարբաջում մարքսիզմի «հնանալու» մասին: «Պետք է հաշվի առնել այն փոփոխությունները, որոնք կատարվել են Մարքսից հետո,— հայտարարում են ֆրանսիական սոցիալիստ դեմոկրատները «Ռեվյու սոսիալիստ» ժուռնալում: Ֆրանսիական գրող և էքզիստենցիալիստ փիլիսոփա Սարտրը առաջարկում է մարքսիզմին փոխարինող նոր փիլիսոփայություն գտնել: Նույնն են որոճում նրա գաղափարակիցները «Թան Մոդեռն» ժուռնալում և կաթոլիկները «Էսպրի» ամսագրում:

Սրանց հետևում են մի շարք կոմունիստական ու բանվորական պարտիաներում հանդես եկած ռևիզիոնիստները, որոնք ամեն կերպ աշխատում են արատավորել մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքը: Նրանք այդ ուսմունքը «հնացած» և հասարակական զարգացման համար «նշանակությունը կորցրած» են հայտարարում: «Մարքսիզմը անցյալ դարի գիտական սոցիալիզմն է»,— գրում է ֆրանսիական ռևիզիոնիստների «թեորետիկներից» Լյուսիեն Լորանը, և գտնում է, որ դրա համար անմտություն է համակերպվել նրա ժամանակակից պաշտպանների հետ: Ռևիզիոնիստ Ժան Մարի Դոմենակը հայտարարում է, թե «խոսքը վերաբերում է ոչ թե 1850 թվականի պրոլետարիատի աղքատությանը, այլ 1957 թվականի ֆրանսիական բանվորների դրությանը»:

Ժամանակակից ռևիզիոնիստները փորձում են հարություն տալ Լենինի կողմից վաղուց ջախջախված, կյանքի կողմից մերժված բեռնշտայնական դրույթը՝ առանց դասակարգային պայքարի, առանց ռևոլյուցիայի սոցիալիզմի մեջ կապիտալիզմի ավտոմատիկ ներաճման մասին:

Օրինակ, ԱՄՆ-ի Կոմպարտիայի Ազգային կոմիտեի նախկին անդամ, Նյու-Յորքի «Դեյլի Ուորկերի» նախկին խմբագիր Ջոն Գեյտսը (1958 թ. հունվարին դուրս եկավ կոմպարտիայից) պնդում է, թե ԱՄՆ-ում իբր թե հնարավոր է «կանխել» տնտեսական ճգնաժամը և որ ամերիկյան տնտեսությունը «դիմացկուն» է: Այստեղից նա եզրակացնում է. «Սոցիալիզմին անցնելու համար ԱՄՆ-ում ռևոլյուցիայի անհրաժեշտություն չկա, բանվոր դասակարգի պայքարը ԱՄՆ-ում առանձնահատուկ, «էվոլյուցիոն» բնույթ ունի»: Այս տեսակետը փաստորեն վերարտադրում է «Ամերիկայի բացառիկության» մասին սակետը փաստորեն վերարտադրում է «Ամերիկայի բացառիկության» մասին հին, մաշված տեսությունը, որը բուրժուական և աջ օպորտունիստական հին, մաշված տեսությունը, որը Լենինը մերկացրել է դեռ 1915 թվականին:

Կապիտալիստական աշխարհում մեծ տարածում է գտել 1957 թվականին ԱՄՆ-ում հրատարակված հարավսլավյան ռենեգատ Ջիլասի «Նոր դասակարգ»

գիրքը, որը լի է հակասովետական, հակասոցիալիստական զրպարտություններով: Հեղինակը օպորտունիստական և հակալենինյան շատ այլ «թեորիաների» հետ մեկտեղ հրճվում է ամերիկյան կապիտալիզմի «ներքին հնարավորություններով», պնդելով, որ իբր ԱՄՆ-ում «ազգային մասշտաբով պլանային էկոնոմիկա է» ստեղծված:

Իսկ Կարլ Կաուցկու որդի և հետևորդ Բենեդիկտ Կաուցկին և այսպես կոչված «ավստրոմարքսիզմի» մյուս ներկայացուցիչները հավաստացնում են, որ արդեն «հնացել» է կապիտալիստական հասարակությունը բուրժուաների և պրոլետարների բաժանման մասին «Կոմունիստական մանիֆեստի» դրույթը: «Կապիտալիզմի մեջ սոցիալիզմի տարրերի» կարծեցյալ աճի մասին է պնդում լեհ կոմունիստ Ե. Կլեերը: Ոմանք էլ մարքսիզմը և բուրժուական քաղաքատնտեսությունը սինթեզելու փորձեր են անում:

Այս ամենի նպատակը մարքսիզմը բուրժուական գաղափարախոսությամբ նենգափոխելն է: Ըստ էության այդ մարդիկ կապիտալիզմի ջատագովներ են և նույնիսկ պնդում են, թե իբր «ընդհանուր բարօրության» ժամանակակից բուրժուական պետության գլխավոր նպատակը բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների և աստիճանաբար սոցիալիզմ ստեղծելու մասին խնամք տանելն է: Չի կարելի չհիշել Մարքսի և Էնգելսի հռչակավոր խոսքերը նման ջատագովության մասին. «Ազատ առևտո՞ւր՝ հօգուտ բանվոր դասակարգի, հովանավորող մաքսեր՝ հօգուտ բանվոր դասակարգի, մենախուց բանտեր՝ հօգուտ բանվոր դասակարգի,—ահա բուրժուական սոցիալիզմի վերջին, միակ անկեղծորեն ասած խոսքը:

Բուրժուազիայի սոցիալիզմի էությունն այն է հենց, որ նա պնդում է, թե բուրժուան բուրժուա է՝ հօգուտ բանվոր դասակարգի» (Ընտ. երկ., հ. 1, էջ 47):

Ո՞վ կարող է ժխտել, որ բուրժուական հասարակության մեջ դասակարգային բևեռացումը ընդունել է շատ ավելի կտրուկ բնույթ, որ մեկ բևեռում, մի բուռ մագնատների ձեռքում կենտրոնացված է ազգային հարստության առյուծի բաժինը, իսկ մյուս բևեռում, ժողովրդական մասսաների մոտ, իշխում են զրկանքը, աղքատությունը և իրավազրկությունը, որ դասակարգային պայքարը երբեք դեռևս չէր հասել այնպիսի թափի ու սրության, ինչպես այժմ: Ո՞վ կարող է ժխտել, որ վերջին տասնամյակներում կապիտալիզմն ապրում է բուրժուական երկրների տնտեսական և քաղաքական զարգացման անհամաչափության կտրուկ ուժեղացման նշանաբանի տակ, որի հետևանքով մրցակցությունը նրանց միջև դարձել է ավելի կատաղի և անխուսափելիորեն կվերածվի իմպերիալիստական զինված կոնֆլիկտների:

Կապիտալիզմը չի կարող վերացնել անհամաչափության, թռիչքաձև զարգացման, կոնֆլիկտայնության ուժեղացումը: Կապիտալիզմն ապրել է իր դարը, մեծագույն արգելակ է դարձել սոցիալական առաջադիմության ճանապարհին: Այդ մասին է վկայում այն փաստը, որ միայն մեկ քառորդ դարի ընթացքում այն երկու համաշխարհային արյունահեղ պատերազմներ սանձազերծեց, որոնց զոհ դարձան 85 միլիոնից ավելի մարդ:

Ներկայիս կապիտալիստական իրականությունը, ԱՄՆ-ի և այլ երկրների էկոնոմիկայում ճգնաժամային երևույթների ուժեղացումը մի ավելորդ անգամ ցույց են տալիս ժամանակակից կապիտալիզմի «անճգնաժամային» և «պլանային» բնույթի մասին ռևիզիոնիստական «թեորիաների» սնանկությունը, հիմնովին ժխտում են նրանց կողմից տարածվող բոլոր պատրանքները:



Ժամանակակից ռևիզիոնիստները փորձում են վարկաբեկել ոչ միայն գիտական սոցիալիզմի թեորիան, այլև միջազգային սոցիալիզմի պրակտիկան՝ սոցիալիզմ կառուցողների մեծ գործը: Եվ քանի որ սոցիալիզմի պատվարը Սովետական Միությունն է, որը առաջինն է դուրս եկել նոր կյանքի ուղին և կառուցել է սոցիալիստական հասարակություն, ապա ռևիզիոնիստների գլխավոր ջանքերն էլ ուղղված են այն բանին, որպեսզի արատավորեն ՍՄԿՊ-ն և ՍՍՌՄ-ը, թուլացնեն բոլոր երկրների համար նրանց ձգողական ուժը: Ռևիզիոնիստները հանդես են գալիս դոգմատիզմի կամ ինչպես նրանք են ասում «ստալինիզմի» դեմ պայքարի դիմակի տակ: Ընդ որում նրանք աշխատեցին օգտագործել Ստալինի անձի կուլտի քննադատությունը, որպեսզի վարկաբեկեն սոցիալիզմի այն մայրուղին, որով անցել է ՍՍՌՄ-ը: Ռևիզիոնիստները «ստալինյաններ», «դոգմատիկներ» են հայտարարում մարքսիզմ-լենինիզմին նվիրված կոմունիստական շարժման գործիչներին, կոչ են անում խզել կապերը նրանց հետ, փորձելով «ստալինիզմի» մասին աղմկելով թաքցնել իրենց հեռացումը մարքսիզմ-լենինիզմից:

Խեղաթյուրելով պրոլետարիատի դիկտատուրայի էությունը, ռևիզիոնիստներն ընդգծում են միայն նրա մի կողմը՝ բռնությունը, որը բնորոշ է ամենից առաջ սոցիալիզմի համար մղվող պայքարի նախասկզբնական շրջանին և լռության են մատնում նրա կարևորագույն՝ կազմակերպչական և դաստիարակչական ֆունկցիաները, լռության են մատնում սոցիալիստական դեմոկրատիայի առավելությունները բուրժուականի նկատմամբ:

Հայտնի է, որ մարքսիզմ-լենինիզմում գլխավորը՝ ուսմունքն է պրոլետարիատի դիկտատուրայի մասին: «Մարքսիստ է միմիայն նա,— ընդգծում է Լենինը,— ով դասակարգերի պայքարի ընդունումը տարածում է մինչև պրոլետարիատի դիկտատուրայի ճանաչումը» (Երկեր, հ. 25, էջ 531): Այս դրույթը պահպանում է իր ամբողջ իմաստը մեր օրերում: Որպեսզի ապահովել անցումը կապիտալիզմից սոցիալիզմին, անհրաժեշտ է այս կամ այն ձևով իրագործել սոցիալիստական հեղափոխություն և հաստատել պրոլետարիատի դիկտատուրա: Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունները, որոնք հաստատված են Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների փորձով, պարտադիր են բոլոր երկրների համար:

Թեև ժամանակակից պայմաններում կապիտալիստական մի շարք երկրներում հնարավոր է խաղաղ ճանապարհով անցումը սոցիալիզմին, այնուամենայնիվ այդ հնարավորությունը իրականություն կարող է դառնալ միմիայն բանվորների, գյուղացիական մասսաների և մյուս աշխատավորների դասակարգային լայն, անընդհատ պայքարի զարգացման միջոցով ընդդեմ խոշոր մոնոպոլիստական կապիտալի, ռեակցիայի, հանուն սոցիալական խոր բարենորոգումների, հանուն խաղաղության և սոցիալիզմի: Այս հնարավորությունը չժխտելով, մարքսիստ-լենինյանները ուղղակի հայտարարում են, որ անհրաժեշտ է նկատի ունենալ նաև մյուս հնարավորությունը՝ սոցիալիզմին ոչ խաղաղ ճանապարհով անցումը, եթե շահագործող դասակարգերը բռնության են դիմում աշխատավոր ժողովրդի դեմ: Այս նպատակով նրանք գտնում են, որ պետք է ամեն կերպ զարգացնել դասակարգային պայքարը, ուժեղացնել բանվոր դասակարգի և նրա պարտիայի ղեկավար դերը ռևոլյուցիոն պայքարում, որով և բանվոր դասակարգը հաղթանակի կհասնի:

Այս արմատական հարցում ռևիզիոնիստներն ուղղակի հակադիր դիրք են

գրավում։ Նրանք հանդես են գալիս սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի պատմական անհրաժեշտության դեմ։ Ժամանակակից ռևիզիոնիստներն ամբողջությամբ հենվում են պառլամենտարիզմի վրա։ Նրանց համար սոցիալիզմին անցնելու խաղաղ ճանապարհը ոչ միայն հնարավորություն է, որը բացվում է որոշակի պայմաններում և առաջին հերթին պրոլետարիատի և նրա դաշնակիցների ռևոլյուցիոն հաջող պայքարի հետևանքով, այլ միակ և պարտադիր ուղին ժամանակակից կապիտալիստական հասարակության պայմաններում։ Որոշ ռևիզիոնիստներ, ձգտելով պրոլետարիատին հեռու պահել իշխանության համար մղվող պայքարից, պրոլետարական ռևոլյուցիայից, փորձում են նրան վախեցնել ատոմային զենքով։ Ֆրանսիական ռենեգատ Էրվեն իր «Ռևոլյուցիա և ֆետիշներ» գրքույկում պնդում է, որ եթե երկրում նույնիսկ օբյեկտիվ և սուբյեկտիվ բարենպաստ պայմաններ հասունանան բանվոր դասակարգի կողմից իշխանությունը նվաճելու համար, ապա նա դրանից իբր թե պետք է հրաժարվի ատոմային ռումբից վախենալու պատճառով, որը, Էրվեի կարծիքով, ռևոլյուցիայի համար փակել է ճանապարհը։ Այս ինտելիգենտիկի գաղափարները փաստորեն արտացոլում են քաղքենու անասնական վախը ռևոլյուցիայի հանդեպ։

Իտալացի ռևիզիոնիստ Ջոլիտին հայտարարում է, թե «մարքսիստական սկզբունքների ու պատմական փորձի լույսի տակ անհրաժեշտ է վերանայել իշխանության նվաճման մասին լենինյան տեսությունը»։ Կանադական ռևիզիոնիստներ Գի Կարոնը, Սոլսբերգը, Սմիթը և ուրիշներ, վկայակոչելով երկրի «նոր իրադրությունը», փորձում էին ապացուցել, որ Կանադան սոցիալիզմին կհասնի էվոլյուցիոն զարգացման հետևանքով, որ պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարը օտար է նրա բանվոր դասակարգի համար։

Ժամանակակից ռևիզիոնիստները վերանայում են պրոլետարական պարտիայի կառուցման լենինյան սկզբունքները, հրաժարվում են դեմոկրատական ցենտրալիզմից։ Մարքսիզմ-լենինիզմի, դեմոկրատական ցենտրալիզմի և պարտիական կարգապահության վրա իրենց հարձակումները ռևիզիոնիստները կատարում են «քննադատության ազատության» պահանջելով, իսկ դրա տակ նրանք հասկանում են ֆրակցիոն աշխատանքի լրիվ օրինականացում, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի լրիվ վերացում։ Բրազիլիայի, Մեծ Բրիտանիայի, Կանադայի, ԱՄՆ-ի կոմպարտիաներում ռևիզիոնիստները հանդես եկան փոքրամասնությանը ֆրակցիա կազմակերպելու, ընդունված որոշումները քննադատելու իրավունք տալու պահանջով, դրանով իսկ փորձելով պարտիայի լենինյան կազմակերպչական սկզբունքները փոխարինել սոցիալ-դեմոկրատական սկզբունքներով։

Նյու-Յորքի նահանգի պարտիական կազմակերպության նախկին կոմունիստ ղեկավար Ու. Նորմանը հայտարարում էր. «Հարկավոր է մերժել դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը։ Անհրաժեշտ է հրաժարվել պարտիայի մոնոլիտ միասնության գաղափարից» («Коммунист», № 6, стр. 47)։

Նյու-Յորքի «Դեյլի Ուորկերի» էջերում երևան եկան հոդվածներ, որտեղ ժխտվում էր պարտիայի կառուցման լենինյան սկզբունքը, որը համարվում էր միայն «ռուսական առանձնահատուկ պայմանների արդյունք»։

Այսպիսի հարցադրումները փաստորեն ուղղված են մեկ նպատակի. օրինականացնել պարտիայի ներսում քայքայիչ գործունեությունը և այն իջեցնել բուրժուական սովորական պարտիաների մակարդակին։



Կոմունիստները վճռականորեն մերժում են ռևիզիոնիստների պահանջները պարտիաներում ֆրակցիաների և խմբավորումների ազատության մասին,
«ազատություն»՝ հակամարքսիստական հայացքներ քարոզելու համար։ Պար-
տիական շինարարության մասին լենինյան սկզբունքների մեծ ուժը ստուգ-
ված է կյանքով, դասակարգային մարտերով և ռևոլյուցիաներով։ Միայն նոր
տիպի պարտիան, որը խստորեն պահպանում է պարտիական կյանքի լենին-
յան նորմերը, ապահովում է իր անդամների կամքի ու գործողությունների
միասնությունը, կարող է կատարել բանվոր դասակարգի առաջնորդի իր խըն-
դիրները։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ իշխանության նվաճումը միայն
ռևոլյուցիայի սկիզբն է, այլ ոչ թե նրա ավարտը։ «Ով ում»՝ կապիտալիզմ թե
սոցիալիզմ հարցը լուծվում է դասակարգային երկարատև և կատաղի պայ-
քարի պրոցեսում։ Տապալված շահագործողական դասակարգերը, որոնց ոգե-
շնչում և օժանդակում է միջազգային ռեակցիան, աշխատում են վերադարձնել
հին կարգերը, վերականգնել կապիտալիզմը։ Եթե ճշմարտության չափանիշը
պրակտիկան է, ապա պատմական փորձով հաստատված է, որ սոցիալիզմի
հաղթանակի ապահովման համար բանվոր դասակարգը և նրա կոմունիստա-
կան ավանգարդը պետք է ամեն կերպ ամրապնդեն պրոլետարիատի դիկտա-
տուրան, վճռականորեն հաղթահարեն տապալված դասակարգերի դիմադրու-
թյունն ու քայքայիչ գործունեությունը։

Սոցիալիզմ կառուցող երկրներում ռևիզիոնիստները ժխտում են կապի-
տալիզմից սոցիալիզմին անցման շրջանում դասակարգային սուր պայքարի
անհրաժեշտության մասին լենինյան ուսմունքը, քաղաքականության և գաղա-
փարախոսության մեջ անձնատուր են լինում հակասոցիալիստական ուժերի
առջև, գովերգում են բուրժուական դեմոկրատիան։ Նրանք գրոհում են պրոլե-
տարիատի դիկտատուրայի դեմ, վարկաբեկում են սոցիալիստական կարգը և
պահանջում են լիկվիդացնել ժողովրդական դեմոկրատիայի կարգերը։
1957 թվականի մայիսին տեղի ունեցած Լեհաստանի Միացյալ բանվորա-
կան պարտիայի IX պլենումում մերկացվեց և գաղափարապես ջախջախվեց
ռևիզիոնիստ Լ. Կոլակովսկու հակառևոլյուցիոն կոնցեպցիան, որը շատ բանով
բնորոշ է և մյուս ռևիզիոնիստներին։ Կոլակովսկին, ինչպես նաև մյուս ռևի-
զիոնիստները, ժխտում է, որ մարքսիզմ-լենինիզմը բացահայտել է կապիտա-
լիզմից սոցիալիզմին անցման օրինաչափությունները, որ սոցիալիզմի գա-
ղափարները կենսագործվել և իրենց պրակտիկ մարմնացումն են գտել Սովե-
տական Միությունում։ Ժխտելով և անտեսելով իրական սոցիալիզմի գոյու-
թյունը, նա ուզում է բացել «նոր և այլ սոցիալիզմի հորիզոն»։ «Նոր և այլ
սոցիալիզմը», ըստ Կոլակովսկու, պետք է իր մեջ զուգակցի բուրժուական դե-
մոկրատիայի բոլոր գծերը, սոցիալիստական դեմոկրատիայի գծերի հետ, այ-
սինքն «ինտեգրալ դեմոկրատիայի» մեջ միավորի աշխատավորների և շահա-
գործողների շահերը։ Պրակտիկայում դա նշանակում է պրոլետարիատի դիկ-
տատուրայի լիկվիդացման և բուրժուական պարտիաներին հարություն տալու
կոնտրռևոլյուցիոն պահանջ։ Այս կոնցեպցիաները հատկապես ակտիվ կեր-
պով պրոպագանդում էին «Պետեֆիի խմբակը» Հունգարիայում և այժմ փակ-
ված լեհական «Պո պրոստու» շաբաթաթերթը, որտեղ բուն էին դրել ռևիզիո-
նիստական կարկառուն «թեորետիկները»։ Սրանք սիրախաղալով ազգային
զգացմունքների և հին հասարակարգից ժառանգված սովորությունների և հա-

յացքների հետ, չխորշելով ո՛չ զրպարտությունից, ո՛չ ստից ու կեղծիքից, փորձում էին արատավորել այն բոլորը, ինչ ձեռք է բերվել ժողովրդական դեմոկրատիայի իշխանության օրոք: Անվստահություն էր սերմանվում սոցիալիստական մյուս երկրների նկատմամբ, խոսքով հանդես էին գալիս հանուն սոցիալիզմի, բայց հանուն «սոցիալիզմի» առանց հասարակական կյանքի զարգացման մեջ պետության միջամտության, առանց պետական պլանավորման, առանց բանվոր դասակարգի պարտիայի ղեկավար դերի:

Գերմանական Դեմոկրատական ռեսպուբլիկայում տարածում էին գտել մի շարք տնտեսագետների ռևիզիոնիստական և լիկվիդատորական «տեսությունները», որոնք ամբողջապես ուղղված էին սոցիալիստական շինարարության դեմ: Բեռլինի համալսարանի պրոֆեսոր Խարիխը առաջարկում էր հրաժարվել պետական պլանավորումից, ԳԴՌ-ն կտրել Սովետական Միությունից և սոցիալիստական մյուս երկրներից և այլն:

Գտնվել են մարդիկ, որոնք նորից հարություն են տալիս Կաուցկու և K°-ի հնամաշ տեսակետներին, պնդելով, թե Լենինը միայն ռուսական բանվորական շարժման ղեկավարն էր և դրա համար նրա աշխատությունները իբր թե ոչ մի ընդհանուր նշանակություն չունեն արևմտյան բանվորական շարժման համար: Ոմանք էլ կրկնում են հին երգերը, փորձելով ապացուցել թե «Հոկտեմբերյան ռևոլյուցիան միայն ռուսական երևույթ էր», որ «Սովետների անցած ուղին պարտադիր չէ» մյուս երկրների համար:

Վկայակոչելով նման բազմաթիվ «փաստարկներ», ռևիզիոնիստները հրաժարվում են պրոլետարական ինտերնացիոնալիզմից, ժխտում են սոցիալիզմի ուղի դուրս եկած բոլոր երկրների համար հավասարապես պարտադիր գլխավոր օրինաչափությունները, «ազգային կոմունիզմ» են քարոզում:

«Ազգային կոմունիզմն» ըստ էության բուրժուական նացիոնալիզմ է, քողարկված կոմունիստական ցուցանակով: Նրա քարոզիչների նպատակն է չափից ավելի ուռճացնելով ազգային առանձնահատկությունները, պառակտել սոցիալիստական ուժերը, զրպարտել ՍՍՌՄ-ին, խրախուսելով շովինիստական տենդենցները մեկուսացնել սոցիալիստական երկրները մեկը մյուսից, ստիպել նրանց հրաժարվելու առաջադիմության ուղուց և նրանց՝ «հանուն անկախության» կախման մեջ գցել իմպերիալիստական լագերից:

Ոչ մի առանձին օրիգինալություն չդրսևորելով, ժամանակակից ռևիզիոնիստները միայն վերարտադրում և խորացնում են օպորտունիստական հին թեքումը, որն իր ժամանակին պախարակել են թե Մարքսը և թե Լենինը: Այսպես, օրինակ, գերմանական սոցիալ-դեմոկրատիայի Գոթայի ծրագիրը քննադատելիս Մարքսը մատնանշել է, որ «ընդհանրապես պայքարել կարողանալու համար բանվոր դասակարգը պետք է իր տանը կազմակերպվի որպես դասակարգ, և որ նրա պայքարի անմիջական թատերաբեմը նրա սեփական երկիրն է: Այդ չափով էլ նրա դասակարգային պայքարն ազգային է, բայց ոչ թե ըստ իր բովանդակության, այլ, ինչպես «Կոմունիստական մանիֆեստն» է ասում, «ըստ իր ձևի»» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, Երևան, 1950 թ., էջ 23):

Թե՛ մինչև Հոկտեմբերը, և թե՛ նրանից հետո Վ. Ի. Լենինը մատնանշել է «քաղաքական ձևերի ահագին առատության և բազմազանության» մասին, որոնք կծագեն դեպի սոցիալիզմ ժողովուրդների համընդհանուր շարժման ժամանակ, այն յուրահատկությունների մասին, որ յուրաքանչյուրը նրանցից



կմտցնի հասարակության վերափոխության ձևերի և տեմպերի մեջ: Նա տարբեր երկրների կոմունիստներին խորհուրդ էր տալիս ուսումնասիրել ռուսական ռևոլյուցիայի փորձը, բայց մեխանիկորեն չընդօրինակել բոլշևիկների տակտիկան, մեթոդներն ու աշխատանքի ձևերը: Սակայն ընդգծելով ազգային առանձնահատկությունների հետ հաշվի նստելու անհրաժեշտությունը, Լենինը երբեք չի ֆետիշացրել դրանք, հանուն ազգային կողմի չի նսեմացրել պրոլետարիատի դիկտատուրայի դերը, այլ վերջինս վեր է դասել ամեն ինչից:

Նա առաջինն է ուշադրություն դարձրել «ազգային կոմունիզմի» վտանգի վրա: Ազգային-գաղութային հարցի շուրջը Պ. Լևիի (հետագայում բանվոր դասակարգի գործի դավաճան) կազմած թեզիսների վերաբերյալ արած դիտողություններում Լենինը գրել է. «Ներեցեք, Դուք ընկնում եք «ազգային բոլշևիզմի» մեջ, Գերմանիան դիտելով, որպես աշխարհում միակ ազգ» (Ленинский сборник, т. XXXIV, стр. 338):

Պատահական չէ, որ իմպերիալիզմն անմիջապես որդեգրեց «ազգային կոմունիզմի» գաղափարը: Նրա գաղափարախոսները փորձում են շովինիզմի և բուրժուական նացիոնալիզմի թունավոր սերմեր սերմանել, որպեսզի սոցիալիստական մի երկիրը հակադրեն սոցիալիստական մյուս երկրներին: Թե ինչ նպատակ են նրանք հետապնդում շատ լավ երևում է ամերիկյան բուրժուական հրապարակախոս Լիպմանի խոսքերից: Վերջինիս կարծիքով «ազգային կոմունիզմը» ժողովրդական դեմոկրատիայի երկրներում պետք է «վերաճի» կապիտալիզմի: Ռեակցիոն ժուռնալիստ Սուլցբերգերը կոչ է անում պաշտպանել «ազգային կոմունիզմի» տենդենցները և սոցիալիստական երկրներում «մարքսիզմի շրջանակներում նոր ձևեր ստեղծել», նպատակ ունենալով քայքայել «արևելյան բլոկը»: «Ազգային կոմունիզմը» ջերմորեն ողջունեց Դալեսը:

Նման վերաբերմունքի էությունը բացահայտել է ընկ. Ն. Խրուշչովը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի մասին իր զեկուցման մեջ: «Մեր դասակարգային հակառակորդների համար,— ասում է ընկ. Խրուշչովը,— դժվար է կռվել սոցիալիզմի երկրների միասնական և ամուր ցեմենտված ճակատի հետ: Նրանք հույսը դնում են այն բանի վրա, որ յուրաքանչյուր սոցիալիստական երկրի հետ հաշիվ տեսնեն առանձին, որպեսզի այդպիսով փորձեն թուլացնել սոցիալիզմի բովանդակ համաշխարհային սիստեմը:

Սոցիալիզմի հակառակորդները երազում են, որպեսզի կոմունիստները զբաղվեն յուրաքանչյուր առանձին վերցրած երկրի համար դեպի սոցիալիզմն ընթանալու ինչ-որ միանգամայն «նոր», արհեստական ուղիներ որոնելով, իսկ սոցիալիստական շինարարության այն մեծ փորձը, որ կա Սովետական Միությունում, Չինաստանում և մյուս երկրներում, մոռացության տային: Նրանք առաջարկում են դեպի սոցիալիզմը շարժվել առանձին-առանձին, այսպես ասած, ցրիվ եկած, դեգերել անջատ-անջատ և ընդմին՝ տարբեր կածաններով: Եթե կանգնենք այդպիսի տեսակետի վրա, ապա թերևս կգտնվեն այնքան «ուղիներ», որ մարդիկ կմոլորվեն, ինչպես անտառում, և չեն գիտենա թե ինչպես հասնեն իրենց վեհ նպատակին»:

Այս տեսակետից չի կարելի չնշել Հարավսլավիայի կոմունիստների Միության VII համագումարում քննարկված ծրագրի մասին, որը փաստորեն պաշտպանության տակ է վերցնում «ազգային կոմունիզմի» գաղափարը, հակասում է մարքսիզմ-լենինիզմին և իր էությամբ օպորտունիստական է, ռևիզիոնիս-

տական։ Ծրագրում շատ դրույթներ կան, որոնք իրականում մարքսիզմ-լենինիզմի ռևիզիա են նշանակում։ Հատկապես դա վերաբերում է այնպիսի կարևորագույն հարցերի բնորոշմանը և գնահատմանը, ինչպիսիք են ժամանակակից միջազգային դրությունը, երկու համաշխարհային սիստեմները և երկու լագերները, ՍՍՌՄ-ում և մյուս երկրներում սոցիալիզմի կառուցման փորձի նշանակությունը, նոր հասարակության կառուցման գործում կոմունիստական պարտիաների և սոցիալիստական պետության դերը, մարքսիստական-լենինյան տեսության և բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարի զարգացումը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, փոխհարաբերությունները սոցիալիստական երկրների միջև, եղբայրական կոմունիստական պարտիաների միջև և մարքսիզմի տեսության ու համաշխարհային կոմունիստական շարժման պրակտիկայի մի շարք կարևորագույն հարցեր։

Դա մի փաստաթուղթ է, որն ուղղված է ո՛չ թե կոմունիստական և բանվորական պարտիաների միասնության, սոցիալիստական երկրների միասնության ամրապնդման նպատակին, այլ նրանց թուլացման նպատակին, համաշխարհային երկու սիստեմների՝ կապիտալիստական և սոցիալիստական լագերների արմատական տարբերությունը սքողելու նպատակին։ Այդ փաստաթուղթը ոտնահարում է մարքսիզմ-լենինիզմի արմատական սկզբունքները, հակադրվում է կոմունիստական և բանվորական պարտիաների Դեկլարացիային և Խաղաղության մանիֆեստին, որի տակ իրենց ստորագրությունն էին դրել նաև Հարավսլավիայի ներկայացուցիչները։ Այս տեսակետից շատ բնական է, որ այդ օպորտունիստական ծրագիրը միահամուռ կերպով դատապարտում են կոմունիստական պարտիաները։

Սոցիալիստական երկրների համախմբվածությունը յուրաքանչյուր սոցիալիստական երկրի ազգային անկախության և սուվերենության միակ երաշխիքն է, միջազգային բանվոր դասակարգի և նրա կոմունիստական ավանգարդի համախմբվածությունը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի գործի հետագա հաղթանակների երաշխիքը։ Սոցիալիստական երկրների, բանվոր դասակարգի ջոկատների մասնատվածությունը մի ճանապարհ է դեպի բանվոր դասակարգի գործի պարտությունը։

Ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, կոմունիստական և բանվորական պարտիաները հաջողությամբ ետ են մղում աջ օպորտունիստական, ռևիզիոնիստական տարրերի գրոհները։ Ռևիզիոնիզմին հուժկու հարված է հասցվել, բայց այն վերջնականապես չի ջախջախված։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

*ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի քարտուղար

Այն պայքարում, որ մեր պարտիան մղում է կոմունիստական հասարակարգի կառուցման համար, կոմունիստական իդեոլոգիայի տարածման համար, մեծ դեր է պատկանում պարտիական պրոպագանդային։

Որքան բարձր է մեր կադրերի տեսական մակարդակը, այնքան ավելի էֆեկտիվ և արդյունավետ է նրանց աշխատանքը։ Կոմունիստների իդեական մակարդակի աճը նրանց ավանգարդային դերի բարձրացման, պարտիական մասսաների ակտիվության զարգացման վճռական պայմանն է։ Կադրերի մարքսիստական-լենինյան դաստիարակության իրենց ամենօրյա աշխատանքում պարտիական կազմակերպությունները ղեկավարվում են ՍՄԿՊ Կենտկոմի այն ցուցումով, որ պարտիական պրոպագանդայի գլխավոր խնդիրը կոմունիստների զինումն է մարքսիզմ-լենինիզմի հիմունքների իմացությամբ, հասարակական զարգացման օրենքների, կոմունիզմի կառուցման օրենքների իմացությամբ, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ներքին և արտաքին քաղաքականության խոր ըմբռնմամբ։

Այժմ, երբ ավարտվում է պարտիական լուսավորության ուսումնական տարին, անհրաժեշտ է հանրագումարի բերել կատարվածը, նշել պարտիական պրոպագանդան ավելի բարձր մակարդակի վրա դնելու միջոցառումներ։

Պարտիական լուսավորության ընթացիկ ուսումնական տարին հագեցված էր պատմական նշանակություն ունեցող խոշոր իրադարձություններով։ 1957 թվականին երկիրը նշեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը, Մոսկվայում տեղի ունեցան Կոմունիստական և Բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունները, կայացան ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան, Փետրվարյան և Մայիսյան պլենումները, ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիաները։ Այդ ժամանակաշրջանում հրապարակվեցին քաղաքական, տեսական և պրակտիկ հսկայական նշանակություն ունեցող փաստաթղթեր, որոնք դարձան պարտիական լուսավորության սիստեմի ուսումնասիրության հիմնական նյութը։

Հասկանալի և օրինաչափ է այն հսկայական հետաքրքրությունը, որ հանդես բերեցին պարտիական և անպարտիական լայն մասսաները դեպի այդ փաստաթղթերի ուսումնասիրությունը։ Մարքսիզմ-լենինիզմը հավերժ զարգացող ուսմունք է։ Պարտիայի Կենտկոմի պլենումների որոշումները նոր, արժեքավոր ավանդ են մարքսիզմ-լենինիզմի գանձարանում, մարքսիզմ-լենինիզ-

մը ստեղծագործաբար զարգացնելու օրինակ, գործողության մարտական ծրագիր: Այդ փաստաթղթերը մեր կադրերին զինում են բուրժուական իդեոլոգիայի, ռևիզիոնիզմի և դոգմատիզմի դեմ պայքարի փորձով, օգնում են նրանց ճիշտ կողմնորոշվելու իրադրության մեջ, հաջողությամբ լուծելու իրենց առջև դրված խնդիրները:

Ուսումնական տարվա արդյունքները ցույց են տալիս, որ պարտիական կազմակերպությունները լուրջ աշխատանք են կատարել կոմունիստների գաղափարական մակարդակի բարձրացման, մարքսիստական-լենինյան դաստիարակության ուղղությամբ: Ստեղծվել է պարտիական լուսավորության ավելի ճկուն ու բազմակողմանի սիստեմ, որը հնարավորություն տվեց բարձրացնել կոմունիստների և անպարտիականների հետաքրքրությունը քաղաքական գիտելիքների նկատմամբ, զգալիորեն հաղթահարել իդեոլոգիական աշխատանքի կտրվածությունը կյանքից, տնտեսական և կուլտուրական շինարարության գործնական խնդիրներից:

***

Երևանն ունի պարտիական լուսավորության լայն ցանց: Ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված են ավելի քան 21 հազար մարդ: Պարտիական լուսավորության ցանցը կոմպլեկտավորելիս քաղաքի պարտիական կազմակերպությունների աշխատանքի հիմքում դրված է եղել ՍՄԿՊ Կենտկոմի այն պահանջը, որ անհրաժեշտ է պարտիայի անդամների մեջ պատվաստել մարքսիստական-լենինյան աշխարհայացք, կոմունիստական գաղափարականություն, ստեղծագործական մոտեցում դեպի տեսության ուսումնասիրությունը, անհաշտվողականություն բուրժուական գաղափարախոսության դրսևորումների նկատմամբ:

Հաղթահարված է պրոպագանդիստական աշխատանքի լուրջ թերությունը, երբ մարքսիզմ-լենինիզմը չէր ուսումնասիրվում պրակտիկայի սերտ առնչությամբ, զգալիորեն ընդլայնվել է ՍՄԿՊ պատմությունը, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, քաղտնտեսության հիմունքները, մարքս-լենինյան տեսության, միջազգային բանվորական և կոմունիստական շարժման պրակտիկայի առանձին պրոբլեմներն ուսումնասիրող խմբակների և սեմինարների ցանցը:

Այսպես, անցյալ ուսումնական տարվա համեմատությամբ պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակների թիվը գրեթե կրկնապատկվել է. անցյալ տարվա 219 տեսական սեմինարի դիմաց այս տարի գործում է 448 սեմինար: ՍՄԿՊ պատմության ուսումնասիրությունը կազմակերպվեց սկզբնաղբյուրներով՝ պարտիայի համագումարների, կոնֆերանսների, պլենումների որոշումներով, Լենինի և Կոմունիստական պարտիայի մյուս ականավոր գործիչների աշխատություններով: Ուժեղացել է ինքնուրույն աշխատանքը գրքի վրա: Լայնորեն օգտագործվում են այնպիսի փորձված ձևեր, ինչպես, օրինակ, ռեֆերատը, տեսական զրույցը, տեսական կոնֆերանսը:

Այդ զրույցներում և կոնֆերանսներում քննարկվել են հետևյալ թեմաները. «Պարտիայի թեորիան և ծրագիրը ազգային հարցի մասին», «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և ագրարային հարցի լուծումը», «Սոցիալիզմի կառուցումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի գլխավոր հանրագումարն է», «ՍՄԿՊ XX համագումարը նոր էտապ է կոմունիզմի համար մղվող պայքարում», «Վլադիմիր Իլյիչ Լենինը Կոմունիստական պարտիայի և Սովետական ժողովրդի մեծ առաջնորդն է»:



Ընդլայնված է քաղդպրոցների ցանցը: Դա պարտիայի մեջ նոր ընդունված և տեսական քիչ գիտելիքներ ունեցող կոմունիստներին հնարավորություն է տալիս քաղաքական պատրաստության պարտադիր նախնական աստիճան անցնել:

Առաջվա նման լուրջ ուշադրություն է դարձվել կադրերի տնտեսագիտական կրթությանը: Եվ դա հասկանալի է:

Վ. Ի. Լենինը դեռևս 1922 թվականին խոսելով պրոպագանդայի խնդիրների մասին, ասել է. «Մեր գլխավոր քաղաքականությունն այժմ պետք է լինի պետության տնտեսական շինարարությունը, որպեսզի ավել փթերով հաց հավաքենք, որպեսզի ավել փթերով ածուխ տանք, որպեսզի որոշենք, թե ինչպես ավելի լավ օգտագործենք այդ փթերով հացն ու ածուխը... Եվ դրա վրա պետք է կառուցվի ամբողջ ագիտացիան ու ամբողջ պրոպագանդան» (Երկ. հատոր 31, էջ 465-466):

Անցյալ տարվա համեմատությամբ երկու անգամ ավելացել է կոնկրետ
էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների և սեմինարների թիվը: Այդ տեսակե-
տից ուշադրության է արժանի Ստալինյան շրջկոմի փորձը: Ահա երկրորդ
տարին է, ինչ շրջկոմին կից գործում են սեմինարներ՝ ըստ առանձին բնա-
գավառների, արդյունաբերության ճյուղերի, որտեղ ընդգրկված են հիմնարկ-
ձեռնարկությունների ղեկավար աշխատողներ, պարտիական ու կոմերիտական
կազմակերպությունների քարտուղարներ, արհմիութենական աշխատողներ: Սե-
մինարները հիմնականում ղեկավարում են գործարանների դիրեկտորները,
գլխավոր ինժեներները, ժողտնտխորհի համապատասխան վարչությունների
աշխատողները: Սեմինարներում զեկուցումներով հանդես են գալիս քաղաքի
գիտնականները, դասախոսները: Կիրառվում է սեմինարները ձեռնարկություն-
ներում անցկացնելու պրակտիկան, որը դրական արդյունք է տալիս:

Փետրվար ամսից պարտիական լուսավորության ցանցն անցավ մարք-
սիզմ-լենինիզմի ուսումնասիրությանը՝ հիմնական ծրագրերով: Խմբակները
ձեռնամուխ եղան առավել ակտուալ թեմաների ուսումնասիրությանը. հաշվի
առնելով մինչև ուսումնական տարվա վերջը մնացած կարճ ժամանակը, խըմ-
բակների մեծ մասը գլխավոր ուշադրությունը դարձրեց պարտիայի պատմու-
թյան հետհոկտեմբերյան շրջանի կարևորագույն էտապների և պարտիայի
վերջին համագումարների նյութերի ուսումնասիրությանը:

Համառոտակի հանրագումարի բերելով ուսումնական տարվա արդյունք-
ները, պետք է նշել, որ մեր շատ պարտիական կազմակերպություններ ձեռք
են բերել մարքսիզմ-լենինիզմի տեսությունը պրոպագանդելու, կոմունիստնե-
րի քաղաքական ուսուցումը կազմակերպելու լավ փորձ, որը հարկավոր է
խորացնել և տարածել:

Բերենք մի քանի օրինակ:

Ինչպես միշտ, իդեոլոգիական աշխատանքի խնդիրն է՝ պրոպագանդել
մարքսիզմ-լենինիզմը, պարտիայի ու կառավարության որոշումները, ժողո-
վրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման պլանները, ամրապնդել
հավատը մեր գործի վերջնական հաղթանակի նկատմամբ:

Կոմունիզմը հեռավոր նպատակ չէ: Պարտիայի XX համագումարը նշեց,
որ մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցումը ներկայումս

արդեն ոչ թե հեռավոր, այլ սովետական մարդկանց և նրանց ղեկավար ուժի՝ ՍՄԿՊ արդի ամբողջ գործունեության անմիջական պրակտիկ գործն է։ ՍՍՌՄ-ում ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլանում նշված են այն խնդիրները, որոնց լուծումով մեր երկիրը նոր, վճռական քայլ կկատարի կոմունիզմի կառուցման ճանապարհին։

Պրոպագանդայի խնդիրն է՝ կոնկրետ, համոզիչ փաստերով ցույց տալ պարտիայի առաջադրած այդ պատմական խնդրի լուծման ռեալ հնարավորությունները, մոբիլիզացնել աշխատավորներին նորանոր հաջողությունների հասնելու համար։

Այս տեսակետից բնորոշ է Երևանի 2-րդ բուժմիավորման ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակի փորձը։ «ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության հեռանկարների ու խնդիրների մասին» թեման ուսումնասիրելիս պրոպագանդիստ ընկ. Հ. Փարիկյանը պատասխանում է այն հարցին, թե մեզ մոտ ինչ ռեալ հնարավորություններ կան բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրության տեսակետից առաջիկա 10-15 տարում կապիտալիստական առաջավոր երկրներին հասնելու և անցնելու համար։ Նա բերում է հետևյալ թվերը, որոնք վառ կերպով ցույց են տալիս Սովետական Միության ժողովրդական տնտեսության և հատկապես ծանր ինդուստրիայի վերընթաց աճը կապիտալիստական երկրների համեմատությամբ։

Եթե 1913 թվականին մեր երկրում բնակչության մեկ շնչին ընկնում էր 13-14 անգամ քիչ արդյունաբերական արտադրանք, քան ԱՄՆ-ում, ապա ներկայումս ընկնում է 2,6 անգամ քիչ, քան ԱՄՆ-ում։ Եթե 1927 թվականին ՍՍՌՄ-ն արտադրում էր 4,3 միլիոն տոննա պողպատ, ԱՄՆ-ը 52,4 միլիոն տոննա, այսինքն 13 անգամ ավելի, ապա 1957 թվականին ՍՍՌՄ-ն արտադրում էր 51 միլիոն տոննա պողպատ, իսկ ԱՄՆ-ը 106 միլիոն տոննա, այսինքն միայն 2 անգամ ավելի։

Պրոպագանդիստը փաստերը համոզիչ դարձնելու համար հաճախ կատարում էր համեմատություններ և հակադրություններ։ Ցարական Ռուսաստանին բաժին էր ընկել երկաթի համաշխարհային հայտնի պաշարների միայն մեկ տոկոսը, ֆոսֆորիտների՝ մեկ տոկոսը, ածխի՝ 3 տոկոսը։ Այժմ աշխարհի հետախուզված երկաթաքարի առկա պաշարների 42 տոկոսը, մարգանեցի 88 տոկոսը, կալիական աղերի 54 տոկոսը, ֆոսֆորիտների 33 տոկոսը, քարածխի 57 տոկոսը գտնվում են Սովետական Միությունում։

Պրոպագանդիստը տեղին վկայակոչում է արտասահմանյան գրողներին, հրապարակախոսներին, գիտնականներին։ Այսպես, նա մեջ է բերում ամերիկյան գրող Մայկլ Հոլդի հետևյալ խոսքերը. «Քառասուն տարի գրել են, թե շուտով կխորտակվի Սովետների երկիրը։ Ասում էին, որ ռուսը գյուղացի է, որն ընդունակ չէ մեքենա տիրապետելու։ Այժմ այդ գյուղացին հերկում է երկինքը» (նկատի ունի Երկրի արհեստական արբանյակը)։ Իտալական հրապարակախոս Ցելիչե Կիլանտին գրում է. «Արբանյակի թողարկումը դա ոչ միայն սովետական ինժեներների և բանվորների հաջողությունն է։ Դա սոցիալիզմի հաղթանակն է, սոցիալիստական արտադրաեղանակի հաղթանակը»։

Ահա և ամերիկյան գիտնական, ատոմագետ դոկտոր Թելլերի դառն խոստովանությունը. «Միացյալ Նահանգներին հարկավոր կլինի 20 տարի հասնելու Ռուսաստանին, որն այժմ գիտության ասպարեզում գրավում է առաջատար տեղը»։



Այս կարգի մեջբերումներն, անշուշտ, գրավում են ունկնդիրների ուշադրությունը, շարժում են նրանց հետաքրքրությունը և, հասկանալի է, պարապմունքը դարձնում ավելի աշխույժ։

Պարապմունքների ընթացքում լինում են շատ հարցեր, որոնց պրոպագանդիստը պարտավոր է պատասխանել։ Պետք է նկատի ունենալ, որ մեր մարդիկ աճել են կուլտուրապես, բարձրացել է նրանց տեսական մակարդակը և չի կարելի ընդհանուր պատասխաններով տակից դուրս գալ։ Պրոպագանդիստի խոսքը պետք է տեղ հասնի, լինի համոզիչ։

Շինարարական տրեստներից մեկի պարտկազմակերպության ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակի պարապմունքի ժամանակ պրոպագանդիստը խոսեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտկոմի՝ բնակարանային շինարարության զարգացման վերաբերյալ որոշման մասին։ Երբ պրոպագանդիստն ասաց, թե պարտիան և կառավարությունը խնդիր են դրել մեր երկրում առաջիկա 10—12 տարում լուծել բնակարանային պրոբլեմը, ունկնդիրներից մեկը հետաքրքրվեց այն հարցով, թե Երևան քաղաքում ինչ ռեալ հնարավորություններ կան այդ ժամանակամիջոցում բնակարանային պրոբլեմը լուծելու համար։ Պրոպագանդիստը տվյալ դեպքում ճիշտ վարվեց, ասելով, թե ինքը այդ հարցին ավելի հանգամանորեն կպատասխանի հաջորդ անգամ։ Պրոպագանդիստը մինչև պարապմունքը եղավ քաղաքային Սովետում, Շինարարության մինիստրությունում, մի շարք տրեստներում և գերատեսչություններում և հարուստ փաստեր հավաքեց բնակարանային շինարարության վերաբերյալ, որոնք նրան հնարավորություն տվեցին լավ ուսումնասիրել հարցը և սպառիչ պատասխան տալ ունկնդիրներին։ Ահա, մոտավորապես այն, ինչ ասաց պրոպագանդիստը այդ հարցի առթիվ։

Պարտիան և կառավարությունը, սկսում է զրույցը պրոպագանդիստը, հսկայական նշանակություն են տալիս բնակարանային շինարարությանը, որը աշխատավորների բարեկեցության բարձրացման կարևոր գործոն է։ Երևան քաղաքում կառուցվել և կառուցվում են ոչ քիչ բնակարաններ. միայն վերջին երկու տարում բնակարաններ են ստացել 4000-ից ավելի ընտանիքներ։ Այնուամենայնիվ, ասում է նա, բնակարանային հարցը մնում է որպես պրոբլեմ։ Ներկայումս Երևանում մեկ շնչին ընկնում է ընդամենը 4,1 քառ. մետր բնակելի տարածություն։

Որն է դրա պատճառը՝ հարցնում և ապա բացատրում է պրոպագանդիստը. Երևանը մեր Միության այն քաղաքներից է, ուր արդյունաբերության բուռն վերելքի շնորհիվ չափազանց արագ է աճում բնակչությունը. այսպես, եթե 1926 թվականին քաղաքը ունեցել է 64600 բնակիչ, իսկ 1939 թվականին՝ 200000 բնակիչ, ապա ներկայումս ունի ավելի քան 400000 բնակիչ։ Այսպիսով, վերջին 19 տարվա ընթացքում քաղաքի բնակչությունը աճել է երկու անգամ։ Այնուհետև, շարունակում է նա, հայտնի է, որ քաղաքի գլխավոր պլանին համապատասխան նոր փողոցների, պողոտաների և հրապարակների բացման կապակցությամբ հարկ է եղել զգալի քանակությամբ հին շենքեր քանդել։ Սակայն միայն դրանք չեն բնակարանային սղության պատճառները, ասում է պրոպագանդիստը։ Բնակարանային պահանջը զգալիորեն կմեղմանար, եթե մենք կարողանայինք ժամանակին իրացնել պետության կողմից այդ նպատակի համար հատկացված միջոցները։ Բանն այն է, որ ամեն տարի թերակատարվում են բնակարանային շինարարության պլանները։ Վեր-

չին հինգ տարիների ընթացքում նախատեսվածից պակաս է շահագործման հանձնվել մոտ 90000 քառ. մետր բնակելի տարածություն, դա նշանակում է, որ մոտավորապես 3000 ընտանիք զրկվել են բնակարան ստանալու հնարավորությունից։

Նշելով այդ մասին և գրավելով ունկնդիրների ուշադրությունը, պրոպագանդիստը խոսում է բնակարանային շինարարության ընթացիկ և առաջիկա տարիների պլանների մասին. նա մեջ է բերում հետևյալ թվերը և փաստերը, որոնք, մեր կարծիքով, ունկնդիրներին համոզում են, որ Երևան քաղաքում բոլոր հնարավորությունները կան բնակարանային շինարարության զարգացման մշակած ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար։

Այսպես, միայն այս տարի Երևանում պետք է կառուցվի 120 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն. դա նշանակում է, որ մինչև տարվա վերջը նոր բնակարաններ կստանան ավելի քան 4000 ընտանիք, մինչև 1960 թվականը նախատեսված է կառուցել 307 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն. այսպիսով, առաջիկա երեք տարում բնակարաններ կստանան ավելի քան 12 հազար ընտանիք։ Դա մոտ երեք անգամ ավելի է այն ընտանիքների թվից, որոնք այժմ բնակարան ստանալու համար հաշվառման մեջ են գտնվում Երևանի քաղաքային և շրջանային Սովետներում։

Արդյունաբերության և շինարարության կառավարումը վերակառուցելու և ժողտնտխորհների ստեղծման կապակցությամբ լուրջ նշանակություն է ստանում կոոպերացված մատակարարումների կազմակերպումը. ճիշտ են վարվում հայէլեկտրո, ավտոդողերի, կաբելի գործարանների խմբակների պրոպագանդիստները, որոնք պարապմունքների ընթացքում սրությամբ են դնում այդ հարցը, կոնկրետ փաստերով ցույց են տալիս, թե ինչպիսի բացասական ազդեցություն է ունենում տվյալ ձեռնարկությունների կողմից մյուս ձեռնարկությունների պատվերները իր ժամանակին չկատարելը, խնդիր են դնում ապահովել պլանների անխափան կատարումը, պատվով կատարել մյուս ձեռնարկությունների նկատմամբ ունեցած պարտքը։

Խոսելով աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման մասին, պարապմունքների ընթացքում հանգամանորեն վերլուծվում են տվյալ ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, կոնկրետ օրինակներով ունկնդիրներին պարզաբանվում են, օրինակ, աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման ուղիները, դրանց նշանակությունը արտադրության հետագա վերելքի համար։ Հայէլեկտրո գործարանում պրոպագանդիստներն ունկնդիրներին ցույց են տվել, որ իրենց գործարանում աշխատանքի արտադրողականության մեկ տոկոսի բարձրացումը տարեկան տալիս է 500 տրանսֆորմատոր, բազում գեներատոր, 100 էլեկտրակայան։ Այդ և մյուս կոնկրետ փաստերի ու օրինակների հիման վրա հստակ պատկերացում կազմելով աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորության մասին, գործարանի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական անձնակազմը հատկապես վերջին ժամանակներում լարված պայքար են տանում աշխատանքի արտադրողականությունն ավելի բարձրացնելու, որը, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, ամենակարևորն է նոր հասարակարգի կառուցման գործում։

Այսպիսի բազմաթիվ փաստեր կարելի է բերել նաև արդյունաբերական մյուս ձեռնարկություններից, ուր պարտիական պրոպագանդան մեծապես



նպաստում է բանվորների արտադրական ակտիվության և ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը, պլանների կատարմանն ու գերակատարմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։

Մի շարք պարտիական կազմակերպություններում գործադրվում են պրոպագանդիստական աշխատանքի հետաքրքիր ձևեր ու մեթոդներ։ Ռեսպուբլիկական Նախագծային ինստիտուտում կազմակերպված են տեսական սեմինարներ՝ ՍՄԿՊ պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության վերաբերյալ։ Այստեղ կիրառվում են ուշադրության արժանի այնպիսի ձևեր, որոնք նպաստում են ուսումնասիրվող նյութի խոր յուրացմանը։ Մի շարք կոմունիստներ ուսումնասիրում և ռեֆերատ են կազմում Լենինի՝ «Ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիայի խնդիրները Եվրոպական պատերազմում» աշխատության վերաբերյալ։ Մինչև հերթական սեմինար պարապմունքը նրանք փոխադարձաբար ընթերցում են միմյանց ռեֆերատները, անում համապատասխան դիտողություններ։ Նրանցից մեկը սեմինարում հանդես է գալիս ռեֆերատով, որը ենթարկվում է քննարկման, սեմինարի մասնակիցները ակտիվ ելույթներ են ունենում, արժեքավոր դիտողություններ անում։ Խորհուրդ է տրվում այդ թեմայով հանդես գալ կոլեկտիվի առջև։ Հասկանալի է, որ այս ամենը նպաստում է այն բանին, որ պարտիայի տեսությունն ուսումնասիրող կոմունիստները խորապես ուսումնասիրեն նյութը և լավ տիրապետեն թեմային։

Մեկ ուրիշ փաստ. փիլիսոփայությունն ուսումնասիրող սեմինարում, սեմինարի ղեկավար, փիլիսոփայական գիտությունների թեկնածու Խ. Ավագյանը երբ խոսում է էսթետիկայի մի քանի հարցերի մասին, ունկնդիրների մեջ ցանկություն է առաջ գալիս կոլեկտիվ կերպով դիտել Գ. Սունդուկյանի անվան պետական թատրոնի հերթական ներկայացումներից մեկը։ Այդպես էլ լինում է, նրանք դիտում են «Սրտի արատ» պիեսի բեմադրությունը և հերթական սեմինարներից մեկում այն քննարկում մարքսիստական-լենինյան էսթետիկայի լույսի տակ։

***

Մեր պրոպագանդայի ուժը նրա ճշմարտացիությունն է, մատչելիությունն ու ներգործուն լինելը։ Պրոպագանդան պետք է լինի առարկայական և հարձակողական։ Այն կոչված է ոչ միայն ցուցադրելու մեր հաջողություններն ու նվաճումները, այլև բացահայտելու մեր թերությունները, բացատրելու մեր ճանապարհին եղած դժվարությունները, դրանց պատճառներն ու ժամանակավոր բնույթը, նշելու դրանց վերացման ուղիներն ու հնարավորությունները։ Մեզ մոտ երբեմն պատահում են այնպիսի մարդիկ, որոնք չեն ուզում տեսնել ոչ մեր հաջողություններն ու նվաճումները, ոչ էլ մեր թերությունների պատճառները։ Նրանց համար ամեն ինչ վատ է։ Պրոպագանդիստը պարտավոր է նրանց բացատրել, համոզել, իսկ եթե անհրաժեշտ է՝ հակահարված տալ հետամնաց տրամադրություններին։

Մեր երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման, կոմունիստական շինարարության պատմական խնդիրների իրագործման համար անհրաժեշտ է արմատապես բարելավել պարտիական պրոպագանդան, մեր ամբողջ իդեոլոգիական աշխատանքը։

Սոցիալիստական շինարարության բոլոր ճյուղերի հաջող ղեկավարման խնդիրները պահանջում են, որ մեր բոլոր կադրերը, բոլոր աշխատողները սիստեմատիկ ու հաստատակամ ուսումնասիրեն մարքսիստական-լենինյան ռևոլյուցիոն մեծ գիտությունը, այն իսպաս դնեն կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների իրագործմանը։

Պարտիայի շրջանային կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները պարտավոր են կադրերի մարքսիստական-լենինյան դաստիարակության հարցերով զբաղվել ամեն օր և կոնկրետ կերպով, ժամանակին նկատել և վերացնել թերությունները։ Իսկ թերությունները դեռևս քիչ չեն։ Առաջվա նման տեղ-տեղ պրոպագանդիստական աշխատանքը տարվում է վերացականորեն, աշխատավորների կյանքից, ձեռնարկությունների, շրջանի, քաղաքի առջև դրված պրակտիկ խնդիրներից կտրված և հետևապես չի նպաստում նյութական ու կուլտուրական բարիքների առատության ստեղծմանը, սովետական մարդկանց գիտակցության բարձրացմանը։

Պարտիական որոշ կազմակերպություններ (Արարատ տրեստի, երկաթուղային հանգույցի վերանորոգիչ-վերահսկիչների ջոկատի և այլն) սխալ հասկանալով կամավորության սկզբունքը, պարտիական լուսավորության գործը մատնել են ինքնահոսի, պատշաճ պահանջկոտություն հանդես չեն բերում կոմունիստների նկատմամբ, որոնք ՍՄԿՊ Կանոնադրության համաձայն պարտավոր են աշխատել իրենց գիտակցությունը բարձրացնելու վրա, մարքսիզմ-լենինիզմը յուրացնելու վրա։ Կամավորության սկզբունքը ոչ թե նվազեցնում, այլ բարձրացնում է պարտիական կազմակերպությունների պատասխանատվությունը կոմունիստների քաղաքական ուսուցման գործի կազմակերպման համար։ Հաշվի չառնելով այդ, առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ չեն զբաղվում այն կոմունիստների հարցով, որոնք անհրաժեշտ աշխատանք չեն կատարում իրենց տեսական-քաղաքական մակարդակի բարձրացման համար և անտեսում են այդ ուղղությամբ պարտիայի Կանոնադրության պահանջները։ Ավելին, ներելի չէ, որ անցած 10 ամսվա ընթացքում Ժողտնտխորհի Սննդարդյունաբերության վարչության սովետական տնտեսությունների տրեստի և երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանի սկզբնական պարտկազմակերպությունները իրենց ժողովներում կամ բյուրոների նիստերում և՛ ոչ մի անգամ չեն անդրադարձել կոմունիստների քաղաքական ուսուցման գաղափարական մակարդակը բարձրացնելու, պրոպագանդիստներին ու կոնսուլտանտներին անհրաժեշտ օգնություն ցույց տալու և նրանց աշխատանքի նկատմամբ պահանջկոտությունն ուժեղացնելու հարցերին. և բնավ էլ պատահական չէ, որ այդ պարտիական կազմակերպություններում լուրջ թերություններ կան կոմունիստների քաղաքական ուսուցման գործում։

Չի կարելի, այնուհետև, չնշել, որ մինչև վերջ հաղթահարված չէ կոմունիստների քաղաքական ուսուցման հիմնական մեթոդի՝ մարքսիստական-լենինյան թեորիան ինքնուրույն ուսումնասիրելու մեթոդի թերագնահատումը։ Քիչ թվով կոմունիստներ չկան, որոնք ունենալով միջնակարգ և նույնիսկ բարձրագույն կրթություն, տարիներ շարունակ սովորում են նույն խմբակում և փորձ չեն անում քաղաքական ինքնակրթությամբ զբաղվելու։ Դրանց կողքին, իհարկե, կան նաև այնպիսի կոմունիստներ, որոնք թեպետ համարվում են ինքնակրթությամբ զբաղվողներ, բայց մատը մատին չեն խփում և պարտիա-



կան լուսավորության ամբողջ ուսումնական տարվա ընթացքում և ոչ մի աշխատություն չեն ուսումնասիրում։

Պարտիական լուսավորության նոր ուսումնական տարին նախապատրաստելիս քաղաքի պարտիական կազմակերպությունները պետք է հաշվի առնեն այդ թերությունները և վերացնեն դրանք։

Գլխավորը պարտիական լուսավորության գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացումն է, պրոպագանդիստական աշխատանքի բովանդակության բարելավումը։ Պարտիայի քաղկոմը, շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները պարտավոր են ավելի մեծ հոգատարություն ցուցաբերել քաղդպրոցներում ու խմբակներում պարապմունքների որակի, դասախոսական պրոպագանդայի բարձրացման նկատմամբ։

Վերջին ժամանակներում պարտիայի Երևանի շրջկոմների ապարատի վերակառուցման հետևանքով վերացվեցին բնագավառային բաժինները և ստեղծվեց հրահանգիչների ինստիտուտը։ Ներկայումս յուրաքանչյուր հրահանգչին ամրացված են մի խումբ պարտիական կազմակերպություններ և հրահանգիչը պատասխանատու է այդ կազմակերպությունների ամբողջ գործունեության համար։ Սակայն մենք հանդիպում ենք դեպքերի, երբ առանձին հրահանգիչներ տարվելով միայն տնտեսական հարցերով, անուշադրության են մատնում պրոպագանդիստական աշխատանքը, ինչպես հարկն է չեն զբաղվում կոմունիստների, մեր բոլոր կադրերի մարքսիստական-լենինյան կրթության, նրանց իդեական մակարդակի բարձրացման հարցերով։ Նրանք, ըստ երևույթին, մոռանում են, որ իրենց ամենօրյա աշխատանքում պետք է զբաղվեն ինչպես տնտեսական, այնպես էլ քաղաքական աշխատանքի հարցերով, որ այդ հարցերը երբեք չի կարելի միմյանցից անջատել։

Այս գործում, իհարկե, քիչ մեղք չունեն պարտիայի շրջկոմների քարտուղարները և քաղաքային կոմիտեի պրոպագանդայի ու ագիտացիայի բաժինը։ Նրանք հաշվի չեն առել, որ շրջկոմների հրահանգիչների կազմում կան ընկերներ, որոնք պրոպագանդիստական ու ագիտացիոն աշխատանքի բնագավառում դեռևս անհրաժեշտ փորձ չունեն, որ նրանց պետք է լուրջ օգնություն ցույց տալ և գործը կազմակերպել այնպես, որ նրանք զբաղվեն սկզբնական պարտիական կազմակերպությունների առջև դրված բոլոր խնդիրներով և տեղերում կազմակերպական աշխատանքի ծավալման միջոցով օգնեն այդ խնդիրների անթերի կատարմանը։

Լուրջ բարելավում է պահանջում դասախոսական պրոպագանդան։ Մեզ մոտ կարդացվում են ոչ քիչ թվով դասախոսություններ։ Պետք է, սակայն, խոստովանել, որ պարտիական կազմակերպությունները անբավարար են ղեկավարում դասախոսական պրոպագանդայի գործը. առայժմ քիչ են կազմակերպվում հետաքրքրական, բովանդակալից, նպատակասլաց դասախոսություններ, որոնք լուրջ օգնություն կհանդիսանային մարքսիզմ-լենինիզմն ուսումնասիրողներին։

Քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը պետք է հաշվի առնի այդ և պլանավորված, սիստեմատիկ աշխատանք կատարի դասախոսական պրոպագանդան իր կոչման բարձրության վրա դնելու համար։ Երևանի պարտիական կազմակերպությունները, անշուշտ, լայն հնարավորություններ ունեն այդ ուղղությամբ և պարտավոր են արմատապես բարելավել այդ գործը։

Պարտիայի քաղկոմը պետք է ավելի մոտիկից զբաղվի մարքսիզմ-լենինիզմի

երեկոյան համալսարանի գործունեությամբ, որը կոչված է խոշոր դեր խաղալու մեր կադրերի գաղափարական մակարդակի բարձրացման գործում:

Նոր ուսումնական տարին նախապատրաստելիս հարկավոր է ավելի պահանջկոտ, ավելի լուրջ մոտեցում ցուցաբերել պրոպագանդիստական կադրերի ընտրությանը, որոնցից է, առաջին հերթին, կախված քաղաքական ուսուցման մակարդակը: Պահանջվում է բարելավել պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը: Հարկավոր է լայնորեն կիրառել պրոպագանդիստական սեմինարների անցկացման պրակտիկան. դրանք պետք է լուրջ օգնություն հանդիսանան պրոպագանդիստներին, նրանց սովորեցնեն պարապմունքներն անցկացնելու հետաքրքիր, աշխույժ: Անհրաժեշտ է ուսումնասիրել և տարածել լավագույն պրոպագանդիստների փորձը, մի բան, որի վրա մեզ մոտ քիչ ուշադրություն է դարձվում:

Պրոպագանդիստներին օգնելու, կադրերի գաղափարական մակարդակը բարձրացնելու գործում կոչված են մեծ դեր խաղալու Երևանի քաղաքական լուսավորության տունը և կաբինետները: Պարտիայի քաղկոմը, շրջկոմները դրանց նկատմամբ պետք է ուժեղացնեն ղեկավարությունը և դրանք դարձնեն պարտիական լուսավորության իսկական օջախներ:

Պարտիական կազմակերպությունները պետք է լրջորեն մտահոգվեն կոմերիտականների, երիտասարդների քաղաքական ուսուցման գործով: Կոմերիտական կազմակերպություններում պրոպագանդիստական աշխատանքի միջոցով պետք է անդուլ կերպով դաստիարակել լենինյան գաղափարների, կոմունիստական պարտիայի քաղաքականության ակտիվ և կրակոտ մարտիկներ, երիտասարդությանը դաստիարակել սովետական վառ հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով: Կոմերիտական կազմակերպությունների պարտքն է պահպանել և բազմապատկել ռևոլյուցիոն տրադիցիաները, աշխատանքում, ուսման մեջ և պայքարում կոփել կոմունիզմի ակտիվ և գիտակից կառուցողներ, երիտասարդների մեջ զարգացնել սեր ու հարգանք դեպի ժողովրդին հարկավոր ամեն մի գործ, ամեն մի պրոֆեսիա:

ՀամԼԿԵՄ XIII համագումարում արտասանած իր ճառում ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Մեզ մոտ երիտասարդներն ուսումնասիրում են մարքսիզմ-լենինիզմը: Բայց եթե միայն սերտեն մարքսիզմի ճշմարտությունները, նշանակում է գիտությունը յուրացնել դատարկ տեղը, առանց օգտակար ծանրաբեռնվածության... Մենք պարտավոր ենք երիտասարդությանը տալ լենինիզմի կենսական իմաստություն, լենինիզմի պրակտիկ ուսումնասիրությունը պրակտիկայի հետ շաղկապելու ունակություն»:

Պարտիական կազմակերպությունները երիտասարդության շրջանում տարվող քաղաքական աշխատանքը կազմակերպելիս պետք է ելնեն դրանից և այնպես անեն, որ երիտասարդները խորապես ուսումնասիրեն Լենինին, նրա տեսական հսկայական ժառանգությունը գործադրեն կյանքում, լինեն լենինյան գաղափարների համոզված պրոպագանդիստներ:

Ամփոփելով պարտիական լուսավորության ուսումնական տարին և բազմակողմանիորեն նախապատրաստվելով նոր ուսումնական տարվան, մենք պետք է նոր հաջողություններ ձեռք բերենք մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարների պրոպագանդման գործում:

---

# ԺՈՂՏՆՏԽՈՐՀԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

Մ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Արդյունաբերության և շինարարության կառավարման ձևերի կատարելագործման ուղղությամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մշակած միջոցառումներն իրագործվեցին ժողովրդական լայն մասսաների ակտիվ մասնակցությամբ: Այդ վերակառուցումը կատարվեց մասսաների ստեղծագործական ուժերի ծաղկման պայմաններում և տեղական պարտիական ու սովետական կազմակերպությունների աճած ակտիվության և գործիմացության հիման վրա:

Հարկ չկա ապացուցելու արդյունաբերության կառավարման նոր եղանակի
առավելությունները: Այդ առավելություններն ապացուցված են արդյունաբե-
րության և շինարարության տասնամսյա գործունեության փայլուն ցուցանիշ-
ներում: Բոլորը, ում պետք էր, համոզվեցին այդ առավելությունների մեջ: Ձեռք
բերված հաջողությունները դեռ առաջին, բայց հաստատուն քայլերն են արդ-
յունաբերության և շինարարության հետագա բուռն զարգացման ճանապարհին:

Ժողովրդական տնտեսության խորհուրդները հաջողությամբ են իրակա-
նացնում տնտեսությունը ռացիոնալ վարելու, բնական ռեսուրսներն ավելի
լավ օգտագործելու և արդյունաբերության առանձին ճյուղերի զարգացման
գործում համամասնություններ սահմանելու բարդ խնդիրները: Արդյունաբե-
րության կառավարման ձևերի կատարելագործումը լայն ասպարեզ բացեց
արտադրության հիմնական հարցերի՝ ձեռնարկությունների մասնագիտացման,
կոոպերացման, առաջավոր տեխնիկայի արմատավորման, կառավարչական
ապարատի հետագա պարզեցման ու էժանացման համար:

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության խորհուրդն իր աշխատան-
քի հիմքում դնելով արտադրության կառավարման այդ սկզբունքները, նորա-
նոր հաջողություններ է ձեռք բերում:

Ժողտնտխորհի ձեռնարկություններն անցյալ տնտեսական տարին փակե-
ցին հաջողությամբ. նրանք համախառն արտադրանքի պլանային առաջա-
դրանքը կատարեցին 102 տոկոսով: Համախառն արտադրանքի աճը 1957 թվա-
կանին, 1956 թվականի համեմատությամբ կազմեց 10,1 տոկոս: Ձեռնար-
կությունները հաջողությամբ կատարեցին նաև այս տարվա առաջին եռամ-
սյակի արտադրական առաջադրանքները: Համախառն արտադրանքի եռամսյա
պլանը կատարվեց 105,6 տոկոսով, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի
համեմատությամբ տալով 15,8 տոկոսի աճ:

Եթե 1957 թվականի առաջին եռամսյակում արտադրական առաջադրանք-
ները չկատարած ձեռնարկությունների թիվը հասնում էր 58-ի, իսկ 1957 թվա-

կանի վերջին 33-ի, ապա 1958 թվականի անցած առաջին եռամսյակում հասավ
19-ի: Ժողտնտխորհին հանձնված մի շարք ձեռնարկություններ՝ Դաստակերտի
պղնձա-մոլիբդենային կոմբինատը, Զանգեզուրի հանքվարչությունը, Ախթա-
լայի հանքերը, կոմպրեսորների, ավտոպահեստամասերի, հեծանիվների, Հոկ-
տեմբերյանի հաստոցաշինության, լաքերի և ներկերի գործարանները, Կիրովի
անվան կաուչուկի, Կ. Ցետկինի անվան №1 կարի ֆաբրիկաները և այլ ձեռնար-
կություններ մինչև արդյունաբերության և շինարարության կառավարման վե-
րակառուցումը չէին կատարում իրենց արտադրական պլանները: Այդ ձեռ-
նարկություններն ազատվեցին գերատեսչական պատնեշներից և հնարավորու-
թյուն ստացան լրիվ օգտագործելու իրենց ռեզերվները և սկսեցին սիստեմա-
տիկորեն կատարել համախառն արտադրանքի պլանը:

Ժողտնտխորհի գործունեության ամիսների ընթացքում լուրջ քայլեր են
կատարված ձեռնարկությունների մասնագիտացման, նրանց կոոպերացման,
արտադրական ռեզերվային կարողությունների ավելի լրիվ օգտագործման,
առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորման ուղղությամբ: Երև-
վանի փոքր հիդրոտուրբինների գործարանը, որն արտադրում էր փոքր քանա-
կությամբ հիդրոտուրբիններ և կենտրոնախույս պոմպեր, մասնագիտացված է
թողարկելու միայն կենտրոնախույս պոմպեր: Այդ միջոցառումը հնարավորու-
թյուն է տալիս կրկնապատկել գործարանի արտադրական կարողությունը՝ ի
հաշիվ չօգտագործվող ռեզերվների: Հայէլեկտրոգործարանում կազմակերպ-
վում է էլեկտրոդի արտադրության ցեխ՝ տարեկան 300 տոննա կարողությամբ,
որը կապահովի ժողտնտխորհի ձեռնարկությունների պահանջները: Երևանի
էլեկտրոնորոգման գործարանը, որը թողարկում էր մի քանի տեսակ արտա-
դրանք, մասնագիտացված է առաջին և երկրորդ գաբարիտի էլեկտրաշարժիչներ
արտադրելու համար: Դրա շնորհիվ գործարանի նախագծային կարողությունը
1957 թվականի համեմատությամբ եռապատկվում է: Միայն այդ ձեռնարկու-
թյունը տարեկան տալիս է 483 հազար ռուբլու տնտեսում: Լենինականում է
կենտրոնացվում զոդման չափող տրանսֆորմատորների արտադրությունը,
որն անհրաժեշտ է գլխավորապես Հայէլեկտրոգործարանին՝ թողարկվող ար-
տադրանքի կոմպլեկտավորման համար: Ձեռնարկությունների մասնագիտա-
ցումը կատարվում է արդյունաբերության բոլոր ճյուղերում: Ժողտնտխորհի
ստեղծման օրից հայտաբերված է ավելի քան 16 հազար քառակուսի մետր
չօգտագործված և լրացուցիչ կարողություններ, որոնց վրա կազմակերպվում
է արդյունաբերական արտադրանք՝ տարեկան 175 միլիոն ռուբլի գումարով:
Արտադրության պատշաճ կազմակերպումը, որին հաջողությամբ ձեռնամուխ
է եղել ժողտնտխորհը, հնարավորություն կտա ավելի լայն մասշտաբներով
օգտագործելու արտադրական եղած կարողությունները: 1958 և 1959 թվա-
կանների ընթացքում շարք կմտնեն նոր ձեռնարկություններ, որոնք արտա-
դրանքի նոր տեսակներ կտան ժողովրդական տնտեսությանը և բնակչությանը:

Լուրջ աշխատանք է կատարվում ձեռնարկությունների կոոպերացման և
մանր ու համասեռ ձեռնարկությունների միավորման ուղղությամբ: Անցկաց-
ված միջոցառումների շնորհիվ 31 մանր ձեռնարկությունից ստացվեց 14 խո-
շոր նոր ձեռնարկություն, որը հնարավորություն տվեց բարելավել արտադրու-
թյան ղեկավարումը, 173 միավորով կրճատել կառավարչական ապարատը:
Միավորված ձեռնարկություններում կառավարչական և ցեխային ապարատնե-
րի կրճատման շնորհիվ ձեռնարկությունները տնտեսեցին տարեկան ավելի



քան երկու միլիոն ռուբլի: Ժողովրդական տնտեսության խորհրդի ստեղծման
առաջին օրերից ապարատում և ճյուղային վարչություններում հաստատված
էին 625 հաստիքային միավորներ: Աշխատանքի 6-ամսյա փորձը ցույց տվեց,
որ կան ավելորդ օղակներ: Այս տարվա հունվարի 24-ին ժողտնտխորհում
քննության առնվեց ապարատի բարելավման և ավելորդ օղակների կրճատման
հարցը: Որոշվեց փոփոխություններ մտցնել ապարատի կառուցվածքի մեջ և
վերացնել ավելորդ հաստիքները: Անցկացված միջոցառումների շնորհիվ կըր-
ճատվեց 63 միավոր: Այդ կրճատումը ոչնչով չանդրադարձավ ժողտնտխորհի
գործունեության վրա և տվեց աշխատավարձի ֆոնդից 554 հազար ռուբլի
տնտեսում:

Ժողովրդական տնտեսության խորհրդի ձեռնարկությունների վաղվա մեծ
հաջողությունները պայմանավորված են ղեկավարման կազմակերպական ձևե-
րի հետագա կատարելագործմամբ, արտադրության նկատմամբ կենդանի ղե-
կավարության կիրառմամբ: Հայտնի է, որ ոչ մի կազմակերպչական նոր ձև
հանդես չի գալիս պատրաստի և ավարտուն տեսքով: Այն զարգանում և կեր-
պարանափոխվում է ժողովրդական տնտեսության պահանջներին համապա-
տասխան՝ կախման մեջ լինելով արտադրողական ուժերի զարգացման մա-
կարդակից և տնտեսական ու քաղաքական խնդիրների տվյալ էտապի պա-
հանջներից:

Ժողովրդական տնտեսության խորհրդի 10-ամսյա փորձը նկատի ունե-
նալով, կարող ենք ասել, որ մատակարարման, վաճառահանման և պլանա-
վորման գոյություն ունեցող պրակտիկան չի համապատասխանում արտա-
դրության ղեկավարման նոր պահանջներին: Այդ պրակտիկան երբեմն ձեռ-
նարկությունները դնում է դժվարին վիճակում: Բանն այն է, որ Երևանում
մինչև հիմա պահպանվում են նախկին մինիստրություններից մնացած գերա-
տեսչական զանազան «սբիտները», որոնք դեռ չեն հանձնված նոր ստեղծված
մատակարարող կազմակերպությանը: Այդ կապակցությամբ անհրաժեշտ է
վերանայել գործող նյութա-տեխնիկական մատակարարման և վաճառահան-
ման վարչության կառուցվածքը, այն բարելավելու իմաստով: Անհրաժեշտու-
թյուն է զգացվում վերացնել գործող մատակարարման գրասենյակները, «սն-
կախ» գերատեսչական «սբիտները» և դրանց բազայի վրա ստեղծել նյութա-
տեխնիկական մատակարարման մի կազմակերպություն և նրան հանձնել
ամբողջ ժողովրդական տնտեսության մատակարարման և վաճառահանման
ֆունկցիան: Արդյունաբերության կառավարման նոր սիստեմը պահանջում է,
որ ժողտնտխորհի տնօրինությանը հանձնված ձեռնարկությունների գործու-
նեության պլանավորման հիմնական օղակները լինեն ձեռնարկությունները
և հետո ժողտնտխորհը: Բայց հաճախ ռեսպուբլիկայի Պետպլանը ուղղակի
փոխարինում է ժողտնտխորհին և կրկնում նրա աշխատանքը:
Ավտոտրանսպորտի օգտագործման պրակտիկան նույնպես չի համապա-
տասխանում արդյունաբերության զարգացման պահանջներին: Արդյունաբե-
րության ճյուղային վարչությունները իրենց սիստեմում ունեն 315 ավտոտըն-
տեսություններ: Այդ թվում 145 տնտեսություններ ունեն 1-3 ավտոմեքենա-
ներ: Ավտոտնտեսությունների այդպիսի գաճաճային դրությունը, մանրացումը
հնարավորություն չի ստեղծում ռացիոնալ օգտագործելու ավտոպարկը: Շատ
ձեռնարկություններ իրենց սեզոնային աշխատանքի բնույթով ավտոտրանս-
պորտն օգտագործում են ոչ լրիվ կարողությամբ՝ տարվա 3-4 ամիս, իսկ շատ

ձեռնարկություններ էլ տուժում են ավտոտրանսպորտի պակասից։ Չի կարելի ուշադրության չառնել նաև այն, որ ավտոտնտեսությունների այդպիսի մանրացումը բացասական ազդեցություն է թողնում մեքենաների տեխնիկական դրության վրա, վատ է կազմակերպվում ավտոմեքենաների պրոֆիլակտիկ սպասարկումը, որը հասցնում է մեքենաների արագ մաշմանը և ժամանակից շուտ անպետքացմանը։

Ձեռնարկությունների շահերը պահանջում են մասնատված 120 ավտոբազաները միավորել, խոշորացնել և ստեղծել խոշոր բազաներ, որը հնարավորություն կտա բարձրացնելու ավտոմեքենաների օգտագործման գործակիցը, իջեցնել բեռների փոխադրման ինքնարժեքը։

Ժողովրդական տնտեսության խորհրդի առջև բարդ և պատասխանատու խնդիրների լուծման ասպարեզում խոշոր անելիքներ ունի պարտիական կազմակերպությունը։ Պարտիական կազմակերպության խնդիրն է՝ օգնել ժողտնտխորհին բարելավելու ապարատի աշխատանքը, ամրապնդելու կենդանի կապը ձեռնարկությունների հետ, ժամանակին լուծելու արդյունաբերության զարգացման հասունացած հարցերը։

Պարտիական կազմակերպությունը, որն ունի 366 անդամ և 5 թեկնածու, սկսեց գործել ժողովրդական տնտեսության խորհրդի ստեղծման օրերից։ Նրա գործունեության երրորդ ամսում ստեղծվեց պարտիական կոմիտե, որի առաջ խնդիր դրվեց օգնել, ուղղություն տալ ճյուղային վարչությունների պարտիական կազմակերպությունների գործունեությանը։ Կոմիտեն այժմ միավորում է 12 ճյուղային և արդյունաբերական ճյուղային վարչությունների պարտիական կազմակերպություններ, որոնք օգտվում են սկզբնական պարտիական կազմակերպության իրավունքներից։

Ժողտնտխորհի պարտիական կազմակերպությունը աշխատանքի իր յուրահատուկ բնույթով տարբերվում է արտադրական և առևտրական ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններից։ Այդ կազմակերպություններին պարտիայի կանոնադրությամբ տրված է ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրավունք։ Ժողտնտխորհի պարտիական կազմակերպությունն իր իրավունքներով հավասարեցված է մինիստրությունների պարտիական կազմակերպություններին, որոնք օգտվում են ահազանգելու ֆունկցիայից։ Բայց այդ չի նշանակում, որ ժողտնտխորհի պարտիական կազմակերպությունը կրկնում է լիկվիդացված մինիստրությունների պարտիական կազմակերպությունների աշխատանքը։ Եթե ժողտնտխորհի պարտիական կազմակերպությանը տրված է ահազանգելու իրավունք, այդ չի նշանակում, որ նա պատասխանատու չէ ժողտնտխորհի գործունեության համար։

Հայտնի է, որ լիկվիդացված մինիստրությունների պարտիական կազմակերպությունները բարեխղճությամբ հրավիրում էին ժողովներ, լսում ապարատի աշխատանքին վերաբերող հարցեր, ղեկավարում կոմունիստների քաղաքական ուսուցումը և ահազանգում հասունացած հարցերի մասին։ Բայց լիկվիդացված մինիստրությունների պարտիական կազմակերպությունները պատշաճ ներգործություն չունեին մինիստրությունների աշխատանքի վրա այն պատճառով, որ նրանց ապարատը, հետևապես և կոմունիստները, կտրված էին ղեկավարվող ձեռնարկություններից։ Արտադրության ղեկավարման տերիտորիալ սկզբունքի հաստատումը՝ ժողտնտխորհի կազմակերպմամբ պայ-



մաններ ստեղծեցին պարտիական գործարար աշխատանքի համար։ Արդյունաբերության տերիտորիալ ղեկավարությունը պարտիական կազմակերպությանը հնարավորություն է տալիս էֆեկտիվ ազդեցություն գործել ապարատի գործունեության վրա։ Ժողտնտխորհի ստեղծումով ղեկավարությունը մոտեցվեց արտադրությանը, հնարավորություն ընձեռվեց օպերատիվ ձևով և արագ լուծելու տնտեսության զարգացման հարցերը։ Նոր պայմանների համապատասխան էլ պետք է գործի պարտիական կազմակերպությունը։

Պարտիական աշխատանքի փորձը, հիրավի, պետք է լրացվի աշխատանքի նոր մեթոդներով ու ձևերով, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ և ապարատի աշխատող գործի առավել արդյունավետությամբ։ Դրա կարևոր պայմանն է՝ միշտ անձնական շփման մեջ լինել արտադրությունում աշխատող մարդկանց հետ, իմանալ և հոգալ արտադրության կարիքները, օգնել ձեռնարկությանը՝ տեխնիկատնտեսական հաջողությունների հասնելու համար։ Դա է ապարատի աշխատողի բարոյական աճի աղբյուրը։

Ուրեմն աշխատանքն ապարատի ծառայողների, ինչպես նաև ձեռնարկությունների հետ, հանդիսանում է պարտիական կազմակերպության աշխատանքի առանձնահատկություններից մեկը։

Ժողտնտխորհի ստեղծման ժամանակ մեծ աշխատանք կատարվեց ապարատը որակյալ կադրերով կոմպլեկտավորելու նպատակով։ Կենտրոնական ապարատի և ճյուղային վարչությունների աշխատակիցների 54,7 տոկոսն ունի մասնագիտական բարձրագույն կրթություն և պրակտիկ աշխատանքի բավականաչափ փորձ։ Բայց ասվածից չի կարելի եզրակացնել, որ նրանց հետ լուրջ աշխատանք կատարելու անհրաժեշտություն չկա։ Բանն այն է, որ գի- տելիքները և բավարար փորձը իրենք իրենց չեն խոստանում լավ աշխատանք։ Այստեղից էլ կադրերի հետ տարվող աշխատանքը դառնում է պարտիական կազմակերպության կարևոր խնդիրներից մեկը։

Պարտիական լուսավորության սիստեմի տարբեր օղակներում ընդգրկված են 359 ընկեր. 166 ընկեր ուսումնասիրում են արդյունաբերության կոնկրետ էկոնոմիկան։ Նրանք հաճախ լինելով արտադրական ձեռնարկություններում, սեմինար պարապմունքների ժամանակ բերում են բազմաթիվ կենդանի օրինակներ և այն կապում իրենց խնդիրների հետ։ Նրանց օգնություն ցույց տալու նպատակով հաճախ կազմակերպվում են կոնսուլտացիաներ, զեկուցումներ, զրույցներ և դասախոսություններ։ Պարտիական լուսավորության այս ուսումնական տարում կազմակերպվել է այդպիսի 29 դասախոսություն՝ տարբեր թեմաներով։ Ճյուղային վարչություններում և կենտրոնական ապարատի ֆինանսական աշխատողների համար վերջերս պարտիական կոմիտեն կազմակերպեց զրույց-կոնսուլտացիա՝ արդյունաբերական ձեռնարկությունների ֆինանսավորման սկզբունքների մասին, որը անցկացրեց ժողտնտխորհի ֆի- նանսական բաժնի պետ Կ. Փարսադանյանը։ Պլանային բաժինների աշխատողների համար «Ժողովրդական տնտեսության պլանային և համաչափ զարգացման օրենքը» թեմայով զեկուցում կարդաց ժողտնտխորհի Պլանային բաժնի պետ Ս. Հովհաննիսյանը։ Ժողտնտխորհի պարտիական կազմակերպության առաջին ժողովը լսեց ժողտնտխորհի նախագահ Ս. Մովսիսյանի զեկուցումը՝ ժողտնտխորհի և պարտիական կազմակերպության խնդիրների մասին։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման շրջանում 109 կոմունիստ և անպարտիական ընկեր ագիտացիոն-մասսայական աշխատանք

տարան մայրաքաղաքի տարբեր թաղամասերում, 36 ընկեր հանդիսանում են պրոպագանդիստներ, սեմինարների ղեկավարներ և կոնսուլտանտներ, 70-ից ավելի մարդիկ ընդգրկված են պատի թերթերի խմբագրական կոլեգիաներում։ Կոմունիստներն ակտիվ մասնակցում են պարտիական ժողովի և կոմիտեի նիստի հարցերի նախապատրաստմանը. 36 կոմունիստի ակտիվ մասնակցությամբ նախապատրաստվեց և պարտիական ժողովի քննարկմանը ներկայացվեց «պարտիական և պետական կարգապահությունը ժողտնտխորհում» հարցը։ Վերջերս «Կոմունիստ» թերթում հրապարակված «Հարկավոր չեն գրասենյակները» հոդվածի կապակցությամբ ուսումնասիրվեցին մատակարարման գրասենյակներն ու բազաները և բացահայտվեցին լուրջ թերություններ, որոնց վերացման համար գործնական քայլեր են կատարվում։

Պարտիական կազմակերպությունը սերտորեն կապված է բոլոր կոմունիստների ու անպարտիականների հետ, ժամանակին լսում է նրանց ձայնը, հաշվի է առնում նրանց խելացի առաջարկությունները և կազմակերպում է դրանց կենսագործումը։ Պարտիական կոմիտեի նախաձեռնությամբ այժմ 23 կոմունիստ ուսումնասիրում են արդյունաբերության և շինարարության վերակառուցման կապակցությամբ ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսների համաժողովրդական քննարկման ժամանակ աշխատավորների արած առաջարկությունների իրականացման ընթացքը՝ ժողտնտխորհի կառուցվածքի և նրա աշխատանքի բարելավման մասին։ Այդ առաջարկություններից ընտրված են 117 առաջարկություն, որոնք ուսումնասիրվում են։ Օրինակ, ընկերներ Զոլախյանը, Փարսադանյանը, Սոչինսկին ուսումնասիրում են ձեռնարկությունների դիրեկտորների իրավունքների լայնացման մասին առաջարկությունը, ընկերներ Աշկինազին և Ախշարումովը ուսումնասիրում են դպրոցների պոլիտեխնիզացիայի գործում ժողովրդական տնտեսության խորհրդի ձեռնարկությունների ակտիվ մասնակցության անհրաժեշտության մասին առաջարկությունը, ընկերներ Կորոտկովը և Զամինյանը ուսումնասիրում են Շամլուղի հանքերի հաշվապահ Մանուչարյանի առաջարկությունը Շամլուղի և Ախթալայի հանքերի միավորումը մեկ ադմինիստրատիվ ղեկավարության մեջ։

Երբ ժողտնտխորհի պարտիական կոմիտեում քննության առնվեց ապարատի կադրերի ընտրության և տեղաբաշխման հարցը, միջոցառումներ մշակվեցին կադրերի ռեզերվներ ստեղծելու ուղղությամբ։ Վարչությունների պարտիական կազմակերպությունները և կոմիտեն սկսել են ըստ ամենայնի զբաղվել ապարատի աշխատանքների բարելավման հարցերով։ Կոմիտեի նիստում քննարկվեց ժողտնտխորհի Արտադրատեխնիկական բաժնի աշխատանքի ընթացքը։ Պարզվեց, որ Արտադրատեխնիկական բաժնի առանձին ընկերներ դեռ անբավարար են կապված արտադրական ձեռնարկությունների հետ, բաժինն անբավարար է մշակում արդյունաբերության զարգացման հեռանկարային հարցերը, օպերատիվությամբ չեն լուծվում ձեռնարկությունների տեխնիկական հասունացած հարցերը։ Բաժնի տեխնիկական ինֆորմացիայի սեկտորը «պլանավորել էր» մինչև տարվա վերջը (1957 թ.) օգնել Հայէլեկտրոգործարանին յուրացնելու նոր սերիայի (ՏՍՄ) տրանսֆորմատորների արտադրությունը, այն ժամանակ, երբ այդ սերիայի տրանսֆորմատորների արտադրությունը գործարանի կողմից հաջողությամբ վաղուց յուրացված է և որպես արտադրանքի լավագույն նմուշ ցուցադրված է Ռեսպուբլիկական հոբելյանական ցուցահանդեսում։ Զանգեզուրի հանքվարչությունն այս տարվա հունվա-



րին արտադրության պլանը բոլոր ցուցանիշների գծով չկատարեց՝ մի շարք նյութեր (օդափոխիչ խողովակներ, ներածիր ռելսեր) չունենալու պատճառով։ Երբ ժողտնտխորհում քննարկվում էր այդ հարցը, պարզվեց, որ այդ նյութերը Երևանում կան, բայց Գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության վարչության համապատասխան բաժնի ոչ օպերատիվության հետևանքով՝ միջոցներ ձեռք չեն առնվել այդ նյութերը ժամանակին տեղ հասցնելու համար։ Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության 13 ձեռնարկություն, առանձնապես ավտոպահեստամասերի և Ձերժինսկու անվան գործարանները ետ էին մնում բոլոր ցուցանիշների գծով։ Վարչությունը կոմիտեի օգնությամբ ձեռք առավ օպերատիվ միջոցառումներ և ձեռնարկությունները դուրս բերվեցին ետ մնալու վիճակից։ Այդ օրինակը ցույց է տալիս, թե ինչպիսի վճռական նշանակություն ունի օպերատիվությունը և ձեռնարկությունների բարձրացրած հարցերի ժամանակին լուծումը։

Ռեսպուբլիկայի ժողտնտխորհի պարտիական կազմակերպության կարևոր խնդիրներից է՝ ներգործուն միջոցներով օգնել ժողտնտխորհին անհրաժեշտ մակարդակի վրա պահելու պետական կարգապահությունը և պայքարելու բյուրոկրատիզմի ու քաշքշուկի դրսևորման ամեն մի երևույթի դեմ։ Ապարատում պետական կարգապահության բարձրացման միջոցառումներին էր նվիրված այս տարվա սկզբին տեղի ունեցած պարտիական կազմակերպության ժողովը։ Աշխույժ, գործարար բնույթ ընդունեց այդ հարցի քննարկումը։ Հարկ չկա կրկին անդրադառնալ հարցի քննարկման մանրամասնություններին, քանի որ ամսագրի հունվարի համարում բավական խոսվել է այդ մասին։ Մեզ մնում է ցույց տալ, թե ինչ դրական նշանակություն ունեցավ այդ ժողովը։ Ճյուղային վարչությունների պարտիական կազմակերպություններն սկսեցին ավելի սիստեմատիկ և կոնկրետ զբաղվել կարգապահության հարցերով, զգալի չափով կրճատվեցին գրագրությունները վարչությունների և ժողտնտխորհի միջև։ Ժողտնտխորհի որոշմամբ կարգ սահմանվեց աշխատավորների դիմում-բողոքներին ժամանակին ընթացք տալու մասին, մշակվեց և հաստատվեց բաժինների գործունեության և ֆունկցիաների վերաբերյալ կանոնադրություն, հատուկ քննության ենթարկվեց ձեռնարկություններում 74 միլիոն հասնող չօգտագործվող սարքավորումների շահագործման հարցը։ Պարտիական կոմիտեն սկսեց ուշի-ուշով ուսումնասիրել տեղերից և վարչություններից եկող քննադատական դիտողությունները։ Վերջերս, օրինակ, ուսումնասիրվեցին Կիրովականի քիմկոմբինատի պարտիական ժողովում ժողտնտխորհի Քիմիական արդյունաբերության վարչության հասցեին արված կոմունիստների քննադատական դիտողությունները։

Բայց չի կարելի ասել, որ այս բնագավառում այժմ ամեն ինչ կարգին է։ Բյուրոկրատիզմի և քաշքշուկների մնացորդները դեռ իրենց զգալ են տալիս ապարատի և ճյուղային վարչությունների առանձին օղակներում, որոնց դեմ պետք է հետևողական պայքար տանել։ Աշխատավորների դիմում-բողոքների պատասխանի ձգձգման և ձևական մակագրությունների փաստեր կան ժողտնտխորհի Գործերի կառավարչությունում, Աշխատանքի և աշխատավարձի բաժնում, Նյութատեխնիկական մատակարարման և վաճառահանման վարչությունում։ Բերենք մի քանի օրինակներ։ Ռոստովի մարզի ժողտնտխորհից վերջերս հեռագիր էր ստացվել, որ Անտառային և փայտամշակման վարչությունը «Սելմաշի» հասցեով հրաժարվում է բարձել 1311 խորանարդ մետր

հաճարի ալյուրը բերելու համար: Կալանավորված ընկեր է Նյութատեխնիկական մատակարարման և վաճառահանման վարչության միջամտությունը: Հեռագիրը մարտի 26-ին հանձնվում է վարչությանը, իսկ վարչության պետին՝ ապրիլի 4-ին, այնուհետև վարչության պետից կատարողին՝ ապրիլի 9-ին: Մինչ հեռագիրը 13 օր «թափառում» է զանազան սեղանների դարակներում, Ռոստովի մարզի ժողտնտխորհի ներկայացուցիչն անձամբ ժամանում է Երևան և հարցը լուծում առանց վարչության միջամտության: Մի ուրիշ փաստ. ռեսպուբլիկայի Պետպլանը այս վարչությանը հղում է 657 տոննա ածխաթթու գազի (հավանաբար հեղուկ վիճակով) կարգադիր (նարյադ)՝ Արզնիի հանքաջրերի գործարանից ձեռնարկություններին ֆոնդավորելու համար: Կարգադիրը ստանում է վարչության վաճառահանման բաժնի պետ Ավետիսյանը և մակագրում է բաժնի ավագ տնտեսագետ Խաչատրյանին, վերջինս էլ այն հանձնում է օժանդակ նյութերի բաժնին: Բաժինը 610 տոննա ֆոնդագրում է ձեռնարկություններին և գրությունը կարում գործին, առանց մնացած 47 տոննան ֆոնդավորելու: Հայտնվում է Հայկոոպի ներկայացուցիչը՝ ածխաթթու գազի պահանջով: Վարչությունում սկսում են երկար որոնումներ, թե որ բաժնի, որ գործում է կարված «տարաբախտ» կարգադիրը:

Սննդի արդյունաբերության վարչությունը վերջերս ստանում է գինու կոմբինատից գրություն՝ թերթավոր անկիզաքարի պահանջով: Վարչության պետի տեղակալ Գյուլխասարյանը փոխանակ ինքն օպերատիվ ձևով լուծելու հարցը, գրությունը վերադարձնում է, թե պետք է այդ գործողությունը կատարվի «Արարատ» տրեստի միջոցով: Կոմբինատի ընկերները ստիպված են լինում դիմել տրեստին, տրեստը՝ վարչությանը, վարչությունը՝ Նյութա-տեխնիկական մատակարարման վարչությանը, վերջինս էլ Մատակարարման գրասենյակին: Եվ այսպես օրեր են տևում մինչև կոմբինատին հաջողվում է ստանալ 300 կիլոգրամ թերթավոր անկիզաքար (չայրված թերթավոր քար):

Այդ փաստերը խոսում են այն մասին, որ ժողտնտխորհի ապարատից դեռ արմատախիլ չեն արված բյուրոկրատիզմի և քաշքշուկի մնացորդները: Պարտիական կազմակերպության խնդիրն է՝ խորանալ ապարատի աշխատանքի բովանդակության մեջ և քննության առարկա դարձնել բյուրոկրատիզմի և քաշքշուկի ամեն մի դեպք, ստեղծել այնպիսի կարգ, որ բացառվեն դրանց կրկնությունները: Պետք է միշտ հետևել ապարատի աշխատանքին և չմոռանալ Լենինի ցուցումն այն մասին, որ «Կառավարման բոլոր հարցերի կոլեգյալ քննությանն ու վճռմանը սովետական հիմնարկություններում պետք է հարակցի սովետական ամեն մի պաշտոնի մեջ գտնվող անձերից յուրաքանչյուրի ամենաճշգրիտ պատասխանատվության սահմանումը, պատասխանատվություն պարզ ու աներկմտելի գծված որոշ առաջադրումությունների և պրակտիկ աշխատանքների կատարման համար»:

---

# ՀԵՌԱՆԿԱՐԱՅԻՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

## Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Վ. Ի. Լենինը խոսելով սոցիալիստական շինարարության առաջին հեռանկարային պլանի մասին՝ ԳՈԷԼՌՈ-ի պլանի մասին, այն գնահատում էր որպես մեր պարտիայի երկրորդ ծրագիրը: Այդ պլանը, որը նկատի ուներ երկրի էլեկտրիֆիկացման և մանր արտադրողների կոոպերացման ճանապարհով կառուցել սոցիալիստական էկոնոմիկան, հաջողությամբ իրականացավ նախապատերազմյան առաջին և երկրորդ հնգամյակներում: Սկսած 1928 թվականից պարտիան և կառավարությունը սովետական էկոնոմիկայի զարգացման համար մշակում և իրականացնում են հեռանկարային հնգամյա պլաններ: Այդ հնգամյակները հանդիսացել են ՍՍՌՄ խաղաղ շինարարության պատմական ուղենիշները: Առաջին հնգամյակը, որն ընդգրկեց 1928—1932 թվականները, Երկրորդը՝ 1933—1937 թվականները, Երրորդն սկսվեց 1938 թվականին և ընդհատվեց պատերազմի հետևանքով՝ 1941 թվականին, Չորրորդը՝ 1946—1950 թվականները, Հինգերորդը՝ 1951—1955 թվականները, Վեցերորդը՝ 1956—1960 թվականները, ունեցել են իրենց առանձնահատկությունները, որոնք արտացոլել են Կոմունիստական պարտիայի կողմից առաջադրված ժողովրդատնտեսական խնդիրները տվյալ պատմական ժամանակաշրջանում: Այդ առանձնահատկություններով հանդերձ բոլոր հնգամյակներն էլ ունեցել են մի ընդհանուր նպատակ և մեկը կապված է մյուսի հետ, նախորդ հնգամյակը բազա է պատրաստել հաջորդ հնգամյակի համար:

XX համագումարի որոշումների կիրառման շնորհիվ մեր կյանքի բոլոր ասպարեզներում, տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառներում մեծագույն նվաճումներ ձեռք բերելու հետ միասին արմատապես բարելավվեց ժողովրդական տնտեսության պլանավորման, տնտեսական շինարարության կառավարման կազմակերպման գործը: Արդյունաբերության և շինարարության կառավարումը կազմակերպելու նոր սիստեմը ժողտնտխորհների միջոցով նշանավորվեց որպես նոր և բարձր աստիճանի տեղական նախաձեռնությունը խրախուսելու, համապետական և տեղական խնդիրները միմյանց հետ զուգորդելու նոր և բարձր աստիճան, որի հիմքում ընկած են դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքները: Պարտիայի և կառավարության կիրառած խոշորագույն միջոցառումներն արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը բարելավելու, միութենական ռեսպուբլիկաների և տեղական օրգանների իրավունքներն ընդլայնելու ուղությամբ, պլանավորման գործի չափից ավելի կենտրոնացման վերացնելը պլանավորման համար ստեղծեցին առավել նպաստավոր պայմաններ, այն առավել կատարելագործելու, միլիոնավոր աշխատավորներին պլանավորման գործի մեջ ներգրավելու համար:

Մինչև ժողովրդական տնտեսության կառավարման և պլանավորման գործի վերակառուցումը, ընթացիկ և հեռանկարային պլանները որպես կանոն մշակվում և հաստատվում էին նրանց կատարման ընթացքում։ Պլանավորման այդպիսի պրակտիկան հնարավորություն չէր տալիս գործնականորեն հետևելու պլանների կատարման ընթացքին և հայտաբերելու նոր հնարավորություններ, ի սպաս դնելով դրանք հանուն պլանների կատարման։ Պլանավորման այդպիսի կարգը շատ չափով կաշկանդում էր տեղական նախաձեռնությունը և թուլացնում պատասխանատվությունը պլանների կատարման գործում։ Կառավարման և կազմակերպման նոր պայմաններում սահմանված է այնպիսի կարգ, որ արդեն ընթացիկ տարում հայտնի լինեն հետևյալ տարվա պլանի հիմնական նախագծումները, ընթացիկ հնգամյակում հայտնի լինեն հետևյալ հնգամյակի հիմնական նախագծումները։ Պլանավորման նոր կարգը բարձրացնելով միլիոնավոր աշխատավորների նախաձեռնությունն ու եռանդը հանուն պլանների կատարման, պլանավորումը դարձնում է առավել ճկուն, առավել օպերատիվ։

***

Դոգմատիզմը պլանավորման մեջ մեծ վնաս է հասցնում տնտեսական շինարարությանը և սահմանափակում է մարդկանց գործունեությունը։ Պլանավորման լենինյան թեորիան, որը խիստ հակառակ է շաբլոնային կարգով պլանավորմանը, դոգմատիզմին՝ ուսուցանում է, թե ոչ մի հնգամյա կամ մի այլ պլան չի կարող հաշվի առնել այն բոլոր հնարավորությունները, որոնք թաքնված են մեր հասարակության՛ ընդերքում և որոնք դրսևորվում են պլանների կատարման ընթացքում միլիոնավոր մարդկանց ստեղծագործական եռանդը գործադրելու շնորհիվ։ Այդ է ապացուցում սոցիալիստական շինարարության հարուստ պրակտիկան մեր երկրում, այդ է ապացուցում կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովրդի աշխատանքային պայքարը սովետական հնգամյակները կատարելու և գերակատարելու ասպարեզում։ Գրեթե առանց բացառության մեր բոլոր հնգամյա պլաններն էլ իրենց կատարման ընթացքում ենթարկվել են ճշգրտման, լրացման, կյանքի պահանջներին համապատասխան։ Սոցիալիստական շինարարության պրակտիկան վեցերորդ հնգամյակի անցած երկու տարիների ընթացքում շատ ավելի հարուստ, շատ ավելի բեղմնավոր եղավ, քան հնարավոր էր նախագծել պլանավորման միջոցով։ Ժողովրդական տնտեսության պլանի հիմքում միշտ ընկած է դիրեկտիվային — նպատակային դիրքավորումը։ Պլանավորման մեջ մինչև վերջին տարիներս եղած խոշոր թերությունների լիկվիդացումը և պլանավորումն ու կառավարումը նոր ձևով կազմակերպելը հանդիսացան այն կարևորագույն լծակները, որոնք պարտիային և կառավարությանը հնարավորություն տվին առավել հաջող կազմակերպելու միլիոնների ստեղծագործական եռանդը կոմունիստական շինարարությունը իրականացնելու համար։ Իսկապես, պլանի և պլանավորման էֆեկտիվությունը հսկայական չափով որոշվում է պլանի կատարման համար միջոցների հաջող ընտրությամբ։ Պլանի էությունը հենց այն է, որ նա պետք է ցույց տա ոչ միայն այն, թե ինչի պետք է հասնել, այլև այն, թե ինչպես այդ անել, ինչպես կազմակերպել պայքարը պլանը կատարելու համար։ Պարտիայի XX համագումարը դիրեկտիվներ տալով վեցերորդ հնգամյա պլանի մասին, միաժամանակ նշեց այն



ազդակներն ու միջոցները, որոնք գործի դնելով պետք էր կատարել պլանը։
Համագումարից հետո ընկած ժամանակամիջոցում պարտիայի Կենտրոնական
Կոմիտեի պլենումների որոշումներն ավելի ու ավելի կոնկրետացրին համա-
գումարի որոշումը, վեցերորդ հնգամյա պլանի հաջող կենսագործման նպա-
տակով։

Վեցերորդ հնգամյա պլանի կատարման ընթացքում անհրաժեշտություն
առաջացավ ճշգրտելու հնգամյա պլանը, նրա մի քանի գլխավոր ցուցանիշ-
ների գծով, ինչպես և մշակելու նոր հեռանկարային պլան, որը դուրս է գալու
վեցերորդ հնգամյակի շրջանակներից։ 1956 թվականի դեկտեմբերին կայա-
ցած ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումն իր որոշումներում նշեց, թե
վեցերորդ հնգամյա պլանում մտցվելիք փոփոխություններն ու ճշգրտումները
պետք է այն ուղղությամբ կատարել, որպեսզի ապահովվի երկրի բոլոր ռե-
սուրսների առավել արդյունավետ, առավել ռացիոնալ օգտագործումը։

Ժողտնտխորհների կազմակերպման կապակցությամբ անհրաժեշտություն
առաջացավ փոփոխություններ մտցնել պլանի մեջ և նրա առաջադրանքները
համակերպել կառավարման նոր սիստեմին, առաջադրանքներ հասցեագրել
ըստ ժողտնտխորհների։ Անհրաժեշտ է միաժամանակ նշել, որ կառավարման
ու կազմակերպման նոր տերիտորիալ սիստեմը՝ ժողտնտխորհների միջոցով
նոր հեռանկարներ բաց արեց արտադրական ռեզերվները հայտաբերելու և
օգտագործելու ասպարեզում, որպիսին նկատի չէր առնված վեցերորդ հնգամ-
յա պլանի վերաբերյալ պարտիայի XX համագումարի դիրեկտիվներում։

Վեցերորդ հնգամյակի առաջին իսկ տարիներում սովետական երկրաբան-
ների կողմից հայտաբերվեցին օգտակար հանածոների խոշոր հանքավայրեր
և էներգիայի նոր աղբյուրներ։ Այդ հարստությունների արագ յուրացումը պա-
հանջեց ծավալել մեծ մասշտաբի շինարարություն, ստեղծել նոր, խոշոր ձեռ-
նարկություններ, արդյունաբերական կենտրոններ, որոնք չէին նախատեսված
վեցերորդ հնգամյա պլանի մասին պարտիայի XX համագումարի դիրեկտիվ-
ներում։ Նկատի առնելով, որ այդ նոր շինարարությունն իր մասշտաբներով ու
ծավալով այնքան մեծ է, որ հնարավոր չէ տեղավորել վեցերորդ հնգամյակի
սահմաններում, պարտիան և կառավարությունը պլանավորող մարմիններին
հանձնարարեցին կազմել նոր հեռանկարային պլան 1959—1965 թվականների
համար։

Վեցերորդ հնգամյա պլանի նախագծումներում փոփոխություններ մտցը-
նելը և օրգանապես դրա հետ կապված նոր հեռանկարային պլանի մշակումը
նշանավորում է սոցիալիստական պլանավորման նոր և բարձր աստիճան,
ժողովրդական տնտեսության պլանային սկզբունքի հետագա ամրապնդման
նոր ապացույց։

Վերջին տարիներին պարտիայի և կառավարության ձեռնարկած մի շարք
միջոցառումների շնորհիվ արմատապես բարելավվեց հեռանկարային պլանա-
վորման գործը։ Եթե առաջներում հերթական հեռանկարային պլանը մշակ-
վում էր միայն մեկ հնգամյակի համար և այն էլ տվյալ հնգամյակի սկզբում,
ապա այժմ հեռանկարային պլանը մշակվում է հեռանկարային ժամանակա-
միջոցից մեկ-երկու տարի շուտ։ Այդ է ապացուցում ներկա յոթամյա հեռա-
նկարային պլանի նախագծի մշակման համար կառավարության սահմանած
ժամկետը, ըստ որի այն պետք է պատրաստ լինի 1958 թվականի կեսերին և

այդ ժամանակ էլ քննության պետք է ենթարկվի ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի կողմից։

Հեռանկարային պլանավորման գործի բարելավման մյուս պայմանն էլ այն է, որ կամ յոթամյա հեռանկարային պլանի մշակմանը զուգահեռ մշակվում է առավել երկարատև ժամանակաշրջանի համար, 15 տարվա համար հեռանկարային պլան, որ մենք անվանում ենք գլխավոր պլան։

Այսպես, ներկայումս Պետպլանը նախագծում է ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության զարգացման 15-ամյա պլանը։ Այդ նշանակում է, որ եթե նոր հեռանկարային յոթամյա պլանն իր մեջ ներառելով վեցերորդ հնգամյակի վերջին երկու տարին, դրանք կապում է յոթերորդ հնգամյակի հետ, ապա ինքը՝ յոթամյա պլանն էլ իր հերթին ելնում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 15-ամյա պլանի հիմնական խնդիրներից։ ՍՍՌՄ 15-ամյա պլանի հիմնական խնդիրն է՝ հասնել ու անցնել արդյունաբերության արտադրանքի կարևոր տեսակների արտադրության ծավալով, ԱՄՆ-ի այժմյան մակարդակից։ ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության զարգացման գլխավոր պլանի մի քանի ցուցանիշները բերված են ՍՍՌՄ Գերագույն Սովետի հոբելյանական սեսիայում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ 1957 թվականի նոյեմբերի 6-ին։ Ահա այդ ցուցանիշները.

| Արտադրանքի տեսակները | Չափի միավորը | ՍՍՌՄ | | ԱՄՆ |
|---|---|---|---|---|
| | | 1957 թ. | 15 ամյա պլանով | |
| Երկաթհանք . . . | մլն. տոնն. | 84 | 250—300 | 98 |
| Ածուխ . . . | » » | 462 | 650—750 | 479 |
| Նավթ . . . | » » | 98 | 350—400 | 354 |
| Չուգուն . . . | » » | 37 | 75—85 | 69 |
| Պողպատ . . . | » » | 51 | 100—120 | 104,5 |
| Էլեկտրաէներգիա . . . | մլրդ. կվտժ | 210 | 800—900 | 684 |
| Ցեմենտ . . . | մլն. տոնն. | 29 | 90—110 | 54 |
| Բրդյա գործվածքներ . . . | մլն. մետր | 280 | 550—650 | 299 |
| Կաշվի կոշիկներ . . . | մլն. զույգ | 315 | 600—700 | 586 |

Բերված տվյալներից երևում է, որ արդյունաբերության արտադրանքի կարևորագույն տեսակների քանակական աճման հետ միասին նախատեսվում է էական փոփոխություններ մտցնել ծանր արդյունաբերության առաջատար ճյուղերի այժմ գոյություն ունեցող համամասնությունների միջև այն հաշվով, որ ամբողջ ժողովրդական տնտեսությունը փոխադրվի տեխնիկական առավել բարձր մակարդակի վրա։ Այդ փոփոխությունները կատարվելու են մի քանի ուղղություններով։ Նախ, նախատեսվում են սև մետաղաձուլության հումքային բազայի գերազանց տեմպեր։ Եթե չուգունի արտադրությունը 15-ամյա պլանի ժամանակամիջոցում ավելանում է 2 անգամ, ապա երկաթհանքի հանույթն ավելանում է ավելի քան 3 անգամ։ Դրանով իսկ էապես փոխվում է հարաբերակցությունը չուգունի արտադրության և նրա հումքային բազայի միջև, դրա հետևանքով ստեղծվում են հումքի անհրաժեշտ ռեզերվներ, որոնք այնքան կարևոր են ապահովելու սև մետաղաձուլության անընդհատ վերելքը։

Միանգամայն նոր ձևով են սահմանվում համամասնությունները վառելիքի արդյունաբերության գլխավոր ճյուղերի՝ նավթի և ածխի միջև։ Եթե սովե-



տական էկոնոմիկայի զարգացման անցած ողջ ժամանակաշրջանում գերազանց տեմպերով զարգացել է ածխի արտադրությունը համեմատած նավթարդյունաբերության հետ, ապա 15-ամյա պլանով նախատեսվում է հակառակը։ 15-ամյա պլանի ժամանակաշրջանում ածխի հանույթն ավելանալու է 1,5 անգամ, իսկ նավթի հանույթը պետք է ավելանա ավելի քան 4 անգամ։ Դրա հետ միասին նախատեսվում է գազի արտադրությունն ավելացնել 13—15 անգամ։ Այս տվյալներից երևում է, որ պարտիան խնդիր է դրել իր առջև՝ արմատական փոփոխության ենթարկել երկրի վառելիքի հաշվեկշիռը, ժողովրդական տնտեսությունը գերազանցապես կոշտ վառելիք օգտագործելուց փոխադրել հեղուկ և գազային վառելիքի բազայի վրա, որը կնշանակի ամենից առաջ մարդկային աշխատանքի հսկայական չափերով թեթևացումը և նրա լստ ամենայնի խնայումը։ Ընկեր Խրուշչովի բերած տվյալներից երևում է նաև այն, որ խոշորագույն փոփոխությունների պետք է ենթարկվի ՍՍՌՄ-ի ոչ միայն վառելիքի հաշվեկշիռը, այլև երկրի ողջ էներգետիկ հաշվեկշիռը, քանի որ 15-ամյա պլանով միաժամանակ նախատեսվում են էլեկտրաէներգիայի աճման գերազանց տեմպեր։

15-ամյա պլանի նախնական առաջադրանքները ծառայելու են որպես հիմք՝ մշակելու ՍՍՌՄ յոթամյա պլանի հիմնական ցուցանիշները։ Դրան համապատասխան ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման մեջ յոթամյա պլանը մշակելու վերաբերյալ մատնանշվում է, որ հեռանկարային պլանի նախագծում անհրաժեշտ է նախատեսել առավել խոշոր մասշտաբներով յուրացնելու արևելյան շրջանների բնական հարստությունները՝ ապահովել սև և գունավոր մետաղաձուլության, քիմիական արդյունաբերության արագ զարգացումը, հատկապես սինթետիկ պրոդուկտների արտադրությունը, էլեկտրիֆիկացիայի զարգացման բարձր տեմպեր, վառելիքի արդյունաբերության հետագա աճ, հատկապես նավթի և գազի։ Դրան համապատասխան սահմանվում են ծանր արդյունաբերության հիշյալ ճյուղերի զարգացման տեմպերն ու պրոպորցիաները 1959—1965 թվականների համար։ Սև մետաղաձուլության զարգացման յոթամյա պլանի գլխավոր խնդիրն է՝ մետաղների արտադրության ամեն կերպ ընդլայնումը, նոր երկաթհանքերի յուրացման ճանապարհով։ Նման հարցադրումը ելնում է այն ռեալ հնարավորություններից, որոնք գոյություն ունեն այժմ մեր երկրում։ Վերջին շրջանում շնորհիվ լայն չափերով ծավալված երկրաբանական հետախուզական աշխատանքների, հայտաբերված են երկաթհանքերի խոշոր հանքավայրեր։ Հաստատված է, որ երկաթհանքի պաշարները Կուրսկի մագնիտային անոմալիայի շրջանում, Ղազախստանում և Սիբիրում անսպառ են։ Երկաթհանքի հետախուզված պաշարները ՍՍՌՄ-ում կարող են ապահովել սև մետաղաձուլության զարգացումը բարձր տեմպերով շատ երկարատև ժամանակաշրջանում։ Վառելիքային արդյունաբերության զարգացման բնագավառում 1959—1965 թթ. պլանի գլխավոր խնդիրն է՝ ապահովել գազի և նավթի հանույթի գերազանց զարգացում այն հաշվով, որ գազի և նավթի առավելագույն ավելացմամբ, խիստ կերպով ավելանա նրանց տեսակարար կշիռը երկրի վառելիքի հաշվեկշռում։ Երկրի վառելիքային հաշվեկշռում նման փոփոխություններ մտցնելու կուրսը, որ սկսվել է իրականացվել պարտիայի XX համագումարից հետո, մինչև այժմ արդեն տվել է շոշափելի արդյունքներ։ Այսպես, եթե 1955 թվականին նավթի տեսակարար կշիռը երկրի վառելիքային հաշվեկշռում կազմում էր (պայմա-

նական վառելիքի հաշվով) 22,4 տոկոս, գազինը՝ 2,4 տոկոս, իսկ կոշտ վառելիքինը՝ 75,2 տոկոս, ապա 1957 թվականին նավթի և գազի տեսակարար կշիռը բարձրացավ 29,5 տոկոսի և ընդհակառակը, կոշտ վառելիքի բաժինը նույն ժամանակամիջոցում իջավ և կազմեց 71,5 տոկոս: Ըստ նախնական հաշվարկումների յոթամյա հեռանկարային պլանի ժամկետի վերջում նավթի տեսակարար կշիռը երկրի վառելիքային հաշվեկշռում կբարձրանա մինչև 32,3 տոկոսի, գազինը՝ 17,2 տոկոսի, համապատասխանաբար կիջնի կոշտ վառելիքի տեսակարար կշիռը:

Վառելիքի նոր հաշվեկշռի առավելությունն ակնհայտ է, այն հենվում է վառելիքի առավել պրոգրեսիվ տեսակների վրա, որը հնարավորություն կտա տնտեսել մարդկային աշխատանքը ու կխթանի տեխնիկական հետագա առաջադիմությունը:

Նավթի և գազի հանույթի գերազանց զարգացման նշանակությունը սակայն միայն այդ չէ: Պետք է նկատի ունենալ, որ գիտության և տեխնիկայի զարգացման այժմյան մակարդակի պայմաններում գազը և նավթը ժողովրդական տնտեսության մեջ կիրառվում են ոչ միայն որպես վառելիք, այլև ծառայում են ելակետային հումք բազմաթիվ տեսակների սինթետիկ պրոդուկտներ ստանալու համար: Նավթի և գազի արդյունաբերության շատ բարձր տեմպերով զարգացումը իրենով մեծ չափով պետք է պայմանավորի քիմիական արդյունաբերության մի շարք նոր ճյուղերի վերելքը: Դրան համապատասխան քիմիական արդյունաբերության գլխավոր խնդիրը (1959—1965 թվականներին) հանդիսանում է նավթի և գազի որպես ելակետային հումքի լայն չափով օգտագործելու հիման վրա ամեն կերպ զարգացնել պլաստմասսաների, արհեստական և սինթետիկ մանրաթելի, սննդային ճարպերի և գյուղատնտեսական հումքի փոխարինիչների, պարարտանյութերի արտադրությունը: Պլաստմասսաների արտադրության զարգացումը հնարավորություն կտա լուծելու տեխնիկական մի շարք բարդ պրոբլեմներ և հիմք կծառայի ստեղծելու տեխնոլոգիական նոր սխեմաներ արդյունաբերության մի շարք առաջատար ճյուղերում և առաջին հերթին՝ մեքենաշինության մեջ:

Արհեստական և սինթետիկ մանրաթելի արտադրության զարգացումը շատ չափով կլայնացնի թեթև արդյունաբերության հումքային բազան և օրավուր ավելացող գյուղատնտեսական հումքի հետ միասին կապահովի լայն սպառման առարկաների արտադրության նոր և հուժկու վերելք:

Նկատի առնելով քիմիական արդյունաբերության զարգացման նշանակությունը, ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Մայիսյան (1958 թ.) պլենումը քննության առավ բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու հարցը: Հավանություն տալով քիմիական արդյունաբերության արագ զարգացման վերաբերյալ ընկեր Խրուշչովի զեկուցման մեջ շարադրված միջոցառումներին, պլենումը որոշեց սինթետիկ նյութերի արտադրության զարգացման հիման վրա 1965 թվականին ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը հասցնել հետևյալ չափերի՝ բրդի գործվածքներինը հասցնել 500 միլիոն մետրի, մետաքսի գործվածքներինը՝ 1.485 միլիոն մետրի, արհեստական և սինթետիկ թելի հետ խառը բամբակի գործվածքներինը՝ 480 միլիոն մետրի, տրիկոտաժի հագուս-





տինը՝ 940 միլիոն հատի, արհեստական կարակուլինը՝ 5 միլիոն քառակուսի մետրի, կոշկինը՝ 515 միլիոն զույգի:

Եթե վերցնենք միայն սննդամթերքների օգտագործումը կաուչուկի արտադրության համար, կնկատենք, թե տարեկան որքան շատ կարտոֆիլ, գարի, եգիպտացորեն, հաճար և այլ կուլտուրաներ է պահանջում արտադրության այդ ճյուղը: Այսպես, օրինակ, հազար դեկալիտր էթիլային սպիրտ ստանալու համար (որը ելակետային հումք է կաուչուկ ստանալու համար) պահանջվում է վերամշակել մոտավորապես հետևյալ քանակի սննդանյութ. կարտոֆիլ՝ 189 տոննա, վարսակ՝ 51,6 տոննա, գարի՝ 37 տոննա, հաճար՝ 36,5 տոննա, կորեկ՝ 37,3 տոննա, եգիպտացորեն՝ մոտ 35 տոննա: Հիշյալ կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը նկատի առնելով, այդ քանակությունն ստանալու համար պահանջվում է ոչ պակաս քան 170,6 հեկտար տարածություն: Եթե նկատի ունենանք, որ սննդամթերքներից վերամշակման ճանապարհով ՍՍՌՄ-ում տարեկան արտադրվում է հարյուրավոր միլիոն դեկալիտր էթիլային սպիրտ կաուչուկ ստանալու համար, հասկանալի կդառնա, թե դրանց փոխարինումը նավթարդյունաբերությունից ստացվող քիմիական նյութերով, ինչպիսի խոշոր նշանակություն կունենա սննդարդյունաբերության հումքային բազան ընդարձակելու գործում:

Յոթամյա հեռանկարային պլանի մշակման վերաբերյալ դիրեկտիվները խնդիր են դնում քիմիական սինթեզի միջոցով ստեղծել այնպիսի ելակետային նյութեր, որոնք փոխարինեն ճարպերին, բուսական յուղին, որոնք այժմ օգտագործվում են տեխնիկական նպատակներով: Այսպես, օրինակ, Սովետական Միությունում ներկայումս միայն տնտեսական օճառի համար տարեկան օգտագործվում է 300 հազար տոննա բուսական յուղ: Այդքան բուսական յուղ ստանալու համար պահանջվում է 1,5 միլիոն հեկտար արևածաղկի ցանքս կատարել: Խնդիր է դրվում բուսական յուղի փոխարեն օճառի պատրաստման համար օգտագործել նոր սինթետիկ նյութեր, իսկ բուսական յուղն օգտագործել որպես սննդամթերք: Հեռանկարային պլանում նախատեսվում է նաև չօգտագործել բուսական յուղը ներկեր արտադրելու համար և այլն: Գյուղատնտեսական հումքի և բուսական յուղերի նոր փոխարինիչները պետք է ստացվեն նավթի և գազի օգտագործումից՝ որպես ելակետային հումք: Այսպիսով, նավթի և գազի արտադրության արագ զարգացման նշանակությունը լոկ այն չէ, որ մենք դրանով կարգավորում ենք երկրի վառելիքային հաշվեկշիռը, այլև այն, որ դրանով հարստանում է սննդի և թեթև արդյունաբերության հումքային բազան:

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության 1959—1965 թվականների հեռանկարային պլանով նախատեսվում է ապահովել էներգետիկայի այնպիսի զարգացում, որն արդյունաբերության մեջ էներգազինվածությունն արագ բարձրացնելու հետ միասին հնարավորություն տա էլեկտրաէներգիան խոշոր մասշտաբներով կիրառել ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում, մասնավորապես տրանսպորտում և գյուղատնտեսության մեջ:

Գյուղատնտեսության ասպարեզում նոր հեռանկարային պլանի տարիներին շարունակվելու է գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքը այն հաշվով, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալն այնքան մեծանա առաջիկա տարիներին, որպեսզի ՍՍՌՄ-ն անցնի ԱՄՆ-ից մեկ շնչին հասնող կաթի, մսի, յուղի արտադրության չափերով, ինչ-

պես նաև զգալիորեն ընդարձակվի ժողովրդական սպառման մյուս առարկա-
ների արտադրությունը։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության կողմից
վերջին չորս տարիների ընթացքում կիրառած խոշորագույն միջոցառումները
ապահովեցին գյուղատնտեսության շեշտակի վերելքը, որը նոր թափով կշա-
րունակվի մասնավորապես մեքենա-տրակտորային կայանների վերակազման
հիման վրա։

Սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության զարգաց-
ման այդ մասշտաբներին համապատասխան, 1959—1965 թվականներին նոր
խնդիրներ են դրվում ՍՍՌՄ տրանսպորտի և առաջին հերթին՝ երկաթուղային
տրանսպորտի առջև։ Սովետական տրանսպորտն իր զարգացման ընթացքում
հասել է բարձր նվաճումների, սակայն առանց նրա տեխնիկական բազայի
հետագա արմատական վերակառուցման այն չի կարող բեռների և ուղևոր-
ների փոխադրումը անխափան և առավել ռացիոնալ ու էժան կատարել։ Խըն-
դիրն այն է, որ երկաթուղային տրանսպորտի քարշային տնտեսությունը մինչև
վերջին տարիներս գտնվում էր տեխնիկական ցածր մակարդակի վրա, որի
հետևանքով երկաթուղային տրանսպորտի աշխատանքներում ստեղծվել էր
խիստ լարվածություն։ Սովետական էկոնոմիկայի զարգացման ներկա էտա-
պում, երբ արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունն աճում են շատ
բարձր տեմպերով, տրանսպորտի տեխնիկական գոյություն ունեցող բազան
ի վիճակի չի լինի ապահովել ժողովրդական տնտեսության պահանջները և որ
միայն տրանսպորտի վերազինումը, քարշի նոր տեսակների կիրառումն ար-
մատապես կբարելավի տրանսպորտի վիճակը։

Այդ անհրաժեշտությունից ելնելով ՍՄԿՊ Կենտկոմը և Մինիստրների
Սովետը որոշում ընդունեցին երկաթուղային տրանսպորտի էլեկտրիֆիկաց-
ման գլխավոր պլանի մասին, որը հավանություն գտավ պարտիայի XX հա-
մագումարի կողմից։ Այդ պլանով 1965 թվականին պետք է էլեկտրիֆիկացված
լինեն երկաթուղային տրանսպորտի կարևոր և բեռնալարված մագիստրալնե-
րը և լեռնային ծանր պրոֆիլ ունեցող ուղիները։ Ըստ այնմ շոգեքարշերը
պետք է փոխարինվեն էլեկտրաքարշով։ Երկաթուղային ճանապարհների էլեկ-
տրիֆիկացմամբ հնարավորություն կստեղծվի աշխատանքի և նյութական մի-
ջոցների նվազագույն ծախսմամբ մեծ չափերով ավելացնել տրանսպորտի
բեռնաշրջանառությունը, տնտեսել ժամանակը և բարձրացնել տրանսպորտի
կուլտուրան։ Տրանսպորտի էլեկտրիֆիկացումը հնարավորություն է տալիս եր-
կաթգծի փոխադրական կարողությունը ավելացնել 1,5—2 անգամ, վառելիքի
ծախսերը կրճատել 3 անգամ։

Նոր մշակվող հեռանկարային պլանի գլխավոր ուղղություններն արդեն
իրենց արտացոլումն են գտել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման
1958 թվականի պլանում։ Այսպես, քիմիական արդյունաբերության արագ
զարգացման և հատկապես պլաստմասսաների, գործվածքեղենի համար ար-
հեստական թելի և արհեստական կաշվի արտադրությունը զարգացնելու հա-
մար 1958 թվականի կապիտալ ներդրումները քիմիական արդյունաբերության
մեջ 1957 թվականի համեմատությամբ ավելացվում են 53,6 տոկոսով։ Գազի
արտադրությունն ու հանույթը ավելանում է 11 միլիարդ խորանարդ մետրով,
նավթի հանույթը 14 տոկոսով։ Նույն 1958 թվականին շահագործման են
հանձնվելու 1684 կիլոմետր էլեկտրիֆիկացված երկաթուղիներ, կամ 33 տոկո-



սով ավելի, քան 1957 թվականին։ Բարձր զարգացում է նախատեսվում մեքե-
նաշինության այն ճյուղերի համար, որոնք արտադրամիջոցներ են թողարկում
քիմիական արդյունաբերության, նավթի և գազի արդյունաբերության ճյուղե-
րի համար։ Առավել արագ տեմպերով զարգանում է արտադրության ավտոմա-
տացման, տելեմեխանիկայի, չափիչ հարմարանքների, հաշվիչ մեքենաների և
այլ տեսակի նորագույն սարքավորումների արտադրությունը, որոնց ներ-
դրումը ժողովրդական տնտեսության մեջ կապահովի տեխնիկական պրոգրե-
սը և կոմունիզմի նյութա-արտադրական բազայի արագ ձևավորումը։

Այսպիսով, թեպետ նոր յոթամյա հեռանկարային պլանը դեռևս գտնը-
վում է մշակման պրոցեսում, սակայն ինչպես մատնանշվեց ՍՍՌՄ Գերագույն
Սովետի 9-րդ սեսիայում, հեռանկարային պլանի հիմնական ուղղությունները
ելակետ են ծառայելու 1958 թվականի պլանի մշակման համար։

***

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը որոշելով նոր հեռա-
նկարային պլանի հիմնական ուղղությունները, միաժամանակ հանձնարարե-
ցին ՍՍՌՄ Պետպլանին, միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սո-
վետներին, ժողտնտխորհներին, մինիստրություններին և գերատեսչություննե-
րին մշակել ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականնե-
րի պլանի նախագիծ։ Այդ դիրեկտիվներին համապատասխան այժմ տեղերում
մշակվում է հեռանկարային պլանի նախագիծը, հաշվի առնելով յուրաքան-
չյուր ռեսպուբլիկայի նյութական աշխատանքային ռեսուրսները և դրանց
առավել ռացիոնալ օգտագործման հնարավորությունները։ Այդ աշխատանք-
ներն այժմ ծավալվում են Հայկական ՍՍՌ Պետպլանում և ժողտնտխորհում
նույնպես։ Ելնելով պարտիայի և կառավարության հաստատած դիրեկտիվնե-
րից, 1959—1965 թթ. Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերության զարգացման
գլխավոր ուղղություններն են լինելու՝ նախ հանածո հումքի և առաջին հերթին
մետաղային հանածոների արտադրության ընդարձակումն առավել լայն մաս-
շտաբներով, քան նախորդ հնգամյակներում։ Այդ նկատառումով նախատես-
վում է առաջիկա իսկ տարիներին ավելի քան 70 տոկոսով ավելացնել Քա-
ջարանի պղնձա-մոլիբդենային հանույթը։ Արագացնել և մինչև 1961 թվականը
շահագործման հանձնել Ագարակի պղնձա-մոլիբդենի կոմբինատի առաջին
հերթը։ Ընդարձակել Ղափանի այժմ գործող ֆլոտացիոն ֆաբրիկան և ձեռնա-
մուխ լինել նոր ֆլոտացիոն ֆաբրիկայի կառուցմանը Ախթալայում։ Ընդար-
ձակել Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը այն հաշվով, որ նա հնա-
րավորություն ունենա դաստակերտի պղնձա-մոլիբդենի կոմբինատի հետ
միասին լիովին վերամշակել մետաղային հանքաքարը՝ մետաղաձուլման լրիվ
ցիկլով։ Յոթամյա պլանի նախագիծը նկատի ունի գունավոր մետալուրգիայի
գծով ալյումինի արտադրության ընդարձակումը և նրա վերամշակման ապա-
հովումը ռեսպուբլիկայում։

Նոր հեռանկարային պլանով Հայաստանի արդյունաբերական մյուս կա-
րևոր ուղղությունը լինելու է քիմիական արդյունաբերության զարգացումը։
Հեռանկարային ժամանակամիջոցում Հայաստանում ստեղծվելու են քիմիա-
կան արդյունաբերության նոր ճյուղեր, ինչպիսիք են՝ ացետատային մետաք-
սի, կորունդի, կապրոնային կորդի, արհեստական մետաքսի և այլն։ Էապես

փոփոխության են ենթարկվելու գոյություն ունեցող քիմիական արդյունաբերության տեխնոլոգիական սխեմաները և ելակետային հումքի մշակման ու վերամշակման մեթոդները։ Մասնավորապես նախատեսվում է նոր հումքային բազայի՝ բնական գազի հիման վրա ստանալ ացետիլենի և ջրածնի ելակետային հումք, որը հնարավորություն կտա ունենալ էլեկտրաէներգիայի հսկայական տնտեսում և այն օգտագործել ժողովրդական տնտեսության այլ կարիքների համար։ Այդ նպատակով նախատեսվում է ծավալել գազամուղի շինարարությունը Ղարադաղից Երևան, այն հաշվով, որ արդեն 1960 թվականին սկսվի գազի մատակարարումը արդյունաբերությանը և կոմունալ նպատակներով։

Հայկական ՍՍՌ յոթամյա պլանի կարևոր խնդիրը լինելու է էլեկտրաէներգիայի արտադրության ավելացումը։ Այդ նպատակով ամենամոտ ժամանակներում ավարտվելու է Սևան—Զանգու կասկադի բոլոր աստիճանների շինարարությունը և Սևանի ջրերի առավել ռացիոնալ օգտագործման բազայի վրա ժողովրդական տնտեսության էներգետիկ բազայի հետագա ընդարձակումը։ Դրան զուգահեռ հեռանկարային ժամանակամիջոցում ծավալվելու է աշխատանք Որոտան և Դեբետ գետերի կասկադների շինարարության ուղղությամբ։ Ռեսպուբլիկայի էներգետիկ բալանսի աճման նոր աղբյուր հանդիսացող բնական գազի մուտքը լայն հնարավորություն կտա բարձրացնել ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության էլեկտրազինվածությունը, որպես տեխնիկական պրոգրեսի կարևոր ուղղություն և կխթանի աշխատանքի արտադրողականության նոր և հուժկու բարձրացումը։

Նոր հեռանկարային պլանով Հայկական ՍՍՌ ծանր արդյունաբերության զարգացման գլխավոր ուղղությունը լինելու է մեքենաշինությունը, ժողովրդական տնտեսության տեխնիկական պրոգրեսի հիմքերի հիմքը։ Մեքենաշինության գլխավոր ճյուղերից կզարգանան դազգահաշինությունը, գործիքաշինությունը, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, մասնավորապես մեծ զարկ կտրվի էլեկտրաչափիչ հարմարանքների արտադրմանը, ջերմաէներգետիկ պրոցեսները չափելու հարմարանքներին, հաշվիչ մեքենաների արտադրմանը և այլն։ Մեքենաշինության մեջ որպես նոր ճյուղ զարգանալու է ռադիոտեխնիկական արդյունաբերությունը։ Հեռանկարային պլանի արտադրական և շինարարական ծրագրերի հաջող կենսագործման կարևոր պայմաններից է շինանյութերի արտադրության ընդարձակումը։ Գյուղատնտեսության շեշտակի վերելքի հիման վրա գյուղատնտեսական հումքային բազայի ընդարձակումը, ինչպես և քիմիական արդյունաբերության մի շարք նոր ճյուղերի զարգացումը լայն հնարավորություններ կստեղծեն թեթև և սննդի արդյունաբերության զարգացման համար։ Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության սիստեմում նոր առաջընթաց քայլ կկատարի յոթամյա հեռանկարային պլանի ժամանակամիջոցում մեր Հայրենիքի տնտեսական հզորության ամրապնդման և ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը լուծելու ժամկետները կրճատելու ուղղությամբ՝ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ճանապարհին։

---

# ԲԱՐԵԼԱՎԵԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Գ. ՍԱՐԳՍՅԱՆ

Արդյունաբերական և քաղաքացիական կառույցների զարգացման արագ ընթացքը պահանջում է մաքսիմալ ինդուստրացում, հավաքովի կոնստրուկցիաների մեծածավալ կիրառում, որն իր հերթին անհրաժեշտաբար հարուցում է նորանոր մեքենաների ստեղծման պահանջ։

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1954 թվականի օգոստոսի 19-ի «Շինարարության համար հավաքովի երկաթբետոնյա կոնստրուկցիաների և դետալների արտադրության զարգացման մասին» որոշումից հետո անցած ժամանակամիջոցում միանգամայն կերպարանափոխվել է շինարարական հրապարակների տեսքը։ Ներկայումս չկա այնպիսի շինարարական օբյեկտ, որտեղ մուտք գործած չլինեն հավաքովի կոնստրուկցիաները։ Մեր երկիրը, այդ թվում նաև սովետական Հայաստանը ծածկվել է երկաթ-բետոնյա հավաքովի կոնստրուկցիաներ արտադրող ստացիոնար և պոլիգոնային տիպի ձեռնարկություններով, որոնք միջհարկային ծածկերի համար արտադրում են երկաթ-բետոնյա սնամեջ հեծաններ, այսպես կոչված «ֆերմա-նաստիլներ» տանիքային ծածկերի համար, հավաքովի պատշգամբներ և աստիճանավանդակներ, խոշոր արհեստական բետոնաքարեր, միջնորմային պանելներ, վեցմետրանոց կողավոր պանելներ արդյունաբերական կառույցների ծածկերի համար և բազմաթիվ այլ մանր ու մեծ կոնստրուկցիաներ և դետալներ։

Շինարարական տեխնիկայի արագ զարգացման շնորհիվ միայն հնարավոր դարձավ իրացնել կապիտալ ներդրումների այնպիսի ծավալ, ինչպիսին գոյություն ունի ներկայումս։ Եթե առաջին հնգամյակի ընթացքում (1928—33 թթ.) կապիտալ ներդրումների չափը Հայաստանում (1955 թ. հուլիսի 1-ի գներով) կազմում էր 384 մլն. ռուբլի, ապա հինգերորդ հնգամյակում (1951—55 թթ.) այն հասավ 3602 մլն. ռուբլու, իսկ վեցերորդ հնգամյակի միայն առաջին երկու տարում (1956—57 թթ.)՝ 1953 միլիոն ռուբլի։

Նույնպիսի տեմպով աճել է նաև բնակարանային շինարարության ծավալը։ Եթե առաջին հնգամյակում այն կազմում էր 204 հազար քառ. մետր ընդհանուր տարածություն, ապա հինգերորդ հնգամյակում այն հասավ 611 հազ. քառ. մետրի, իսկ վեցերորդ հնգամյակի առաջին երկու տարում շահագործման հանձնվեց 355 հազ. քառ. մետր բնակելի տարածություն։

Շինարարական տեխնիկայի զարգացման հետևանքով կրճատվում են նաև շինարարական ժամկետները։ Եթե առաջին հնգամյակում միջին ծավալի բնա-

կելի չորս հարկանի շենքի շինարարությունը տևում էր երկու երեք տարի, ապա ներկայումս այն կարելի է կառուցել ութ-ինն ամսում։

Մեր երկրում տեխնիկայի զարգացման աչքի ընկնող առանձնահատկություններից է այն, որ այդ գործին լայնորեն մասնակցում են ոչ միայն գիտության աշխատողները, ինժեներներն ու տեխնիկները, այլև բանվորները։

Անցած 1957 թվականին շինարարության տարբեր պրոցեսների ու մեքենաների կատարելագործման վերաբերյալ Շինարարության մինիստրության գծով ստացվեցին ավելի քան 420 առաջարկություն, որոնցից ընդունվել և մասամբ կիրառվել են ավելի քան 300 առաջարկություն։ Ռացիոնալիզատորներին օգնելու նպատակով մինիստրության տեխնիկական վարչությունը 1957 թվականին մշակեց և հրապարակեց «Մասսայական գյուտարարության և ռացիոնալիզացիայի թեմաների հավաքածու», ընդգրկելով շինարարության տարբեր բնագավառներին վերաբերող 225 հարցեր, որոնք ավելի ակտուալ նշանակություն ունեն շինարարության համար։

Շինարարության տեխնիկայի զարգացումը կյանքի է կոչում ոչ միայն առավել կատարյալ նոր կոնստրուկցիաներ, այլև առավել արդյունավետ շինարարական նյութեր ու դետալներ։ Փայտի մնացորդների օգտագործման միջոցով յուրացված է մոզաիկ պարկետի արտադրությունը. թեփից, մագնեզիալ ցեմենտի օգնությամբ, ստացվում են սալեր տաք հատակների համար, որը հավասարապես օգտագործելի է ինչպես օժանդակ, այնպես էլ հիմնական բնակելի սենյակների համար։ Մշակված է եղեգնից և գաջից միջնապատերի սալեր արտադրելու եղանակը, որն իրականացվելու է գործարանային պայմաններում։ Ի դեպ պետք է ասել, որ հիշյալ միջնորմների, մոզաիկ պարկետի, քսիլոլիտյան հատակների արտադրությունն այնքան պարզ են իրենց տեխնոլոգիական բնույթով, որ միանգամայն մատչելի կլինեն նաև կոլտնտեսային և անհատական կառուցումների համար։

Ուշագրավ է Սովետական Էստոնիայի շինարարների փորձն՝ առանց ցեմենտի բարձրորակ շինարարական կոնստրուկցիաներ ստանալու գործում։

Այն նյութը, որից ստացվում են միջնապատերի սալեր, արհեստական քարեր, խողովակներ կոյուղու համար, ծածկի պանելներ և այլն, հանդիսանում է ավազի և կրի որոշակի օրինաչափական խառնուրդ և կոչվում է սիլիկալցիտ։

Սիլիկալցիտի առավելությունը չի սահմանափակվում նրանով, որ այն բացառել է ցեմենտի օգտագործումը նույնիսկ երկաթբետոնային կոնստրուկցիաների մեջ, այլև այն, որ սիլիկալցիտից ստացվում է նաև այսպես կոչված պենոսիլիկալցիտ, որն աչքի է ընկնում իր թեթևությամբ և լայն օգտագործում է ստանում որպես հակաջերմանցիկ և հակաձայնանցիկ նյութ բնակարանային շինարարության մեջ։ Պենոսիլիկալցիտ ստանալու համար էստոնացիները օգտագործում են սոսինձա-կանիֆոլային օճառալուծույթը շաղախի մեջ։ Կան փրփուր առաջացնելու հատկություն ունեցող նաև այլ խառնուրդներ։ Խնդիրն այն է, որպեսզի դրանք օգտագործենք տեղական մեր պայմանների և տնտեսական արդյունավետության հանգամանքներից ելնելով, սակայն որոշ պրոցեսների փոփոխություններով։ Օրինակ, էստոնիայում սիլիկալցիտ ստանալու համար ավազի և կրի խառնուրդը մշակվում է «դեզինտեգրատոր» կոչվող մեքենայով։ Այնուհետև սիլիկալցիտից շինված դետալներն անցնում են նաև ջերմային մշակում՝ խտացրած գոլորշու կաթսաներում։ Մշակման այս մեթո-



դը թանկ է և հազիվ թե իրեն արդարացնի մեր պայմաններում, հաշվի առնելով նաև այն հանգամանքը, որ մեզ մոտ գոյություն ունեն թեթև ու կապակցման ակտիվություն ունեցող այնպիսի շինանյութեր, ինչպիսին են պեմզան, տուֆի ավազները և հրաբխային շլակները։ Ուստի մեր տեղական շինանյութերից թեթև, մեր լեզվով այսպես կոչված «փրփրապեմզաբետոն» կամ «փրփրաշլակբետոն» ստանալու համար կարելի է խուսափել «դեզինտեգրատորային» և ջերմագոլորշային մշակման մեթոդներից, խառնելով շաղախին որոշ քանակությամբ ցեմենտ՝ կոնստրուկցիաներին անհրաժեշտ ամրություն տալու նպատակով։

Շինարարության մինիստրությունը մտադիր է էստոնացիների մեթոդով մոլիբդենի արդյունաբերության մնացորդներից Ղափանի ու Քաջարանի շինարարությունների համար թեթև կոնստրուկցիաներ կիրառել և ապա դրանք կիրառել մնացած շինարարություններում՝ պեմզայի ու հրաբխային շլակների օգտագործմամբ։

Այս կապակցությամբ ցանկալի է, որպեսզի Ժողտնտխորհի քիմիական ինստիտուտը, Շինարարության մինիստրության Կառուցվածքների և շինանյութերի ինստիտուտը լուրջ գիտահետազոտական աշխատանք կատարեն ռեսպուբլիկայի արդյունաբերության մնացորդներից կառույցների տարբեր նպատակների համար անհրաժեշտ բաղադրիչ նյութեր ստանալու, այդ թվում՝ շաղախների մեջ փրփուր առաջացնող խառնուրդներ։

Հայաստանի քիմիական արդյունաբերությունը լայն հնարավորություն ունի շինարարությանը բազմապիսի նյութեր ու դետալներ մատակարարելու համար։ Օրինակ, սինթետիկ կաուչուկի հիման վրա կարելի է ստանալ ռելին՝ բնակելի շենքերի հատակների համար։ Ռետինի մնացորդներից հնարավոր է պատրաստել նաև հատակների սալեր, սիֆոններ ու սանիտարական կահավորումներ, կոյուղում միացնող հատուկ ձևերի խողովակներ և այլն։

Պլաստմասսայի արտադրությունը կարող է շինարարությանը մատակարարել պատրաստի լուսամուտներ, երեսպատման սալիկներ, պոլիքլորվինելյան լինելիում, սանտեխնիկական կահավորում և այլ բազմաթիվ առարկաներ։

Զնայած հավաքովի երկաթբետոնային կոնստրուկցիաների և շինարարական նյութերի արտադրության ու օգտագործման ուղղությամբ վերջին տարիների որոշակի առաջադիմությանը, այնուամենայնիվ, մեր ռեսպուբլիկան որոշ բնագավառներում, շինարարական տեխնիկայի զարգացման առումով, դեռևս ետ է մնում Միության կենտրոնական քաղաքներից ու մի շարք ռեսպուբլիկաներից։ Դեռ մեզ մոտ մուտք չի գործել նախապես լարված երկաթյա ձողերով բետոնյա կոնստրուկցիաների արտադրությունը, որը զգալի չափով կրճատում է մետաղի օգտագործումը և լայնացնում է երկաթբետոնյա կոնստրուկցիաների կիրառման շրջանակները։

Շինարարության մինիստրությունը 1957 թվականից Զարբախում սկսել է կառուցել նոր երկաթբետոնյա կոնստրուկցիաների արտադրության գործարան, որի ավարտումով հնարավորություն կստեղծվի անցնել նախնական լարման կոնստրուկցիաների արտադրությանը։

Երկաթբետոնյա հավաքովի կոնստրուկցիաների օգտագործումն արդյունաբերական ձեռնարկությունների շինարարության մեջ ավելի ետ է, քան բնակարանային շինարարության ասպարեզում։

Արդյունաբերական ձեռնարկությունների շինարարության մեջ առայժմ հավաքովի կոնստրուկցիաների օգտագործումը սահմանափակվում է վեցմետրանոց կողավոր սալերով (միջհարկային և տանիքային ծածկերի համար) և երկաթբետոնյա միջին չափերի սյուների և հեծանների արտադրությամբ՝ ոչ մեքենայացված եղանակով: Մնացած ավելի մեծ չափերի ֆերմաներն ու հեծանները պատրաստվում են տեղում՝ մոնոլիտ եղանակով, կամ ամբողջովին մետաղից: Մինչդեռ 18—30 մետրանոց երկաթբետոնյա ֆերմաների հեծանների արտադրությունը Սովետական Միության շատ շինարարական կազմակերպություններում յուրացված է արհեստական լարման արմատուրայով և հաջողությամբ կիրառվում է շինարարության մեջ:

Հայկական ՍՍՌ-ում էլ մեծ չափսի ֆերմաների ու հեծանների արտադրությունը զարգացնելու նպատակով, ռեսպուբլիկայի Շինարարության մինիստրությունը Լենինգրադի մետաղակոնստրուկցիաների գործարանին պատվեր է տվել պատրաստելու անհրաժեշտ քանակությամբ մետաղյա կաղապարներ, որոնց մի մասն արդեն ստացված է: Մետաղյա ձողերի լարվածություն ստեղծող հիդրավլիկ մամլիչ մեքենաների ստացումով հնարավորություն կստեղծվի ֆերմաների ու հեծանների, ինչպես նաև այլ նախնական լարվածության կոնստրուկցիաների արտադրությունը:

Բնակելի շենքերի ծածկերի կոնստրուկցիոն լուծումը Հայաստանում, մասնավորապես Երևանում, կարևոր նշանակություն ունի: Գոյություն ունեցող ծածկերն իրենց ծավալով վիթխարի են, կլանում են ավելի շատ դեֆիցիտային շինարարական նյութեր և թանկ են:

Երևանի կլիմայական պայմաններում մեծ հաջողությամբ կարելի է անցնել հարթ ծածկերի օգտագործմանը, որոնք, ինչպես տնտեսական տեսակետից, այնպես և իրենց կատարման դյուրին եղանակով աչքի են ընկնում:

Հարթ ծածկերը, ինչպես հայտնի է, շատ հին են: Նրանք լայն կիրառում են ունեցել ոչ միայն Հայաստանում, այլև բազմաթիվ այլ երկրներում: Սակայն շինարարության տեխնիկայի զարգացման ներկա էտապում այն առանց լուրջ փոփոխությունների օգտագործել չի կարելի, որովհետև այն պետք է շաղկապվի ջեռուցման սիստեմի, վերջին հարկերի ջերմաստիճանի կայունացման, մթնոլորտային տեղումներից ծածկը միանգամայն անվտանգ դարձնելու և այլ հարցերի լուծման հետ:

Հարթ ծածկերի նոր կոնստրուկցիաներ մշակելու վրա այժմ աշխատում են Շինարարության մինիստրության և Կառուցվածքների ինստիտուտի մի քանի աշխատողներ: Անհրաժեշտ է որպեսզի նրանք զբաղվեն ոչ միայն բազմահարկ շենքերի ծածկերի հարցով (կապված ջեռուցման և այլ հարցերի լուծման հետ), այլև՝ մեկհարկանի և, մեծ մասամբ կոտեջային սիստեմի շենքերի ծածկերի հարցով, որոնք մասսայական կերպով կառուցվում են գյուղական վայրերում և բանվորական ավաններում: Ըստ երևույթին անհրաժեշտ է հարթ ծածկերի խնդիրը լուծել երկու վարիանտով՝ ավելի ծանր ու համեմատաբար բարդ կոնստրուկցիա ունեցող մեծածավալ շենքերի համար և ավելի թեթև ու պարզեցված կոնստրուկցիա ունեցող կոլտնտեսային ու անհատական շինարարությունների համար: Հարթ սալերի տեղադրումը միհարկանի շենքերի համար կարող են կատարվել ավտովերամբարձ մեքենաներով:

Մյուս կարևոր նախապայմանը, որն անհրաժեշտ է նկատի առնել ծածկերի կոնստրուկցիաները մշակելիս, այն է, որ այդ կոնստրուկցիաները տըն-



տեսապես լինեն առավել մատչելի, քան մինչև այժմ գոյություն ունեցող ծածկերը, մասնավորապես մասսայական շինարարության համար:

Ըստ ամենայնի ինժեներական միտքը պետք է աշխատի այն ուղղությամբ, որպեսզի փայտի օգտագործումը քաղաքացիական և արդյունաբերական շինարարության մեջ հասնի մինիմումի, եթե ոչ ամբողջովին դուրս մղվի շինարարությունից, թողնելով այն միայն օժանդակ նպատակների համար: Այս անհրաժեշտ է նախ այն պատճառով, որ շինափայտն ավելի դժվար է հայթայթվում, իսկ եղածն էլ մեծ մասամբ ցածր որակի է, և երկրորդ, որ փայտի պիտանիությունը կառուցվածքների մեջ ավելի կարճատև է և փայտամասերը հաճախակի ենթակա են վերանորոգումների կամ փոխարինման:

Մեր ռեսպուբլիկայի համար խոշոր կարևորություն ունեցող խնդիր է նաև
տուֆ քարերի մշակման մասնակի մեքենայացումից (որը գոյություն ունի
ներկայումս) անցնել նրա լրիվ մեքենայացման, կապված նոր սահմանված
ստանդարտի հետ, որով վերացվում է գոյություն ունեցող «միդիս» եղանակով
շարը և մտցվում է նոր՝ ուղղանկյուն ձև ունեցող քարերով շարը:

Այս տեսակետից լուրջ ուշադրության է արժանի Կիրովականի քիմկոմբի-
նատի նախկին մեխանիկ, այժմ Թոշակառու ընկ. Ս. Ղարագյոզյանի ստեղծած
մեքենան, որը երկար ժամանակ ծառայեց կոմբինատի շինարարության հա-
մար և ոչ մեծ փոփոխություններով կարող է օգտագործվել ճիշտ ձև ունեցող
քարեր մշակելու համար, ինչպես որ պահանջում է նոր ստանդարտը: Արժե-
քավոր է նաև պոլիտեխնիկ ինստիտուտի դասախոս ընկ. Գ. Մկրտչյանի
առաջարկած քարտաշ մեքենան, որը մինիստրության կողմից ընդունված է և
գտնվում է պատրաստման պրոցեսում:

Առանձնապես կարևոր նշանակություն ունի կարծր քարերի մշակման
համար ընկ. Գ. Շարաֆյանի ստեղծած մեքենան, որը մինչև փորձարկելը մեծ
դժվարությունների հանդիպեց, բայց այնուհետև անուշադրության մատնվեց,
երբ գործը հասավ նրա գործարանային պատրաստմանը: Սիստեմատիկ հար-
վածների սկզբունքը, որը հեղինակը դրել էր իր մեքենայի հիմքում և որը
նրան հաջողվել էր մեծագույն ճշտությամբ, խոսում է այդ մեքենայի բացա-
ռիկ նշանակության մասին: Բայց սպառելով իր հնարավորությունները և չըս-
տանելով անհրաժեշտ օգնություն գյուտարարության պետական կոմիտեի կող-
մից՝ հեղինակը չկարողացավ իր նպատակին հասնել:

Միանգամայն անհետաձգելի և կարևոր պետք է համարել Ս. Ղարագյոզ-
յանի և Գ. Շարաֆյանի մեքենաները շինարարության մեջ ամենուր կիրառելու
հարցը: Քարերի մշակման մեքենայացումը մեր ռեսպուբլիկայում բացառիկ
կարևորություն է ստանում այն պատճառով, որ դրանց ամենահարուստ
պաշարները գտնվում են մեզ մոտ:

Շինարարական ինդուստրիայի զարգացումը միայն հավաքովի կոնստրուկ-
ցիաներ ստեղծելով ու նրանց մեխանիկական մոնտաժով չի սահմանափակ-
վում: Ներկայումս, ավելի քան երբեք, պետք է խստորեն պահանջել՝ բարձրո-
րակ աշխատանք կատարել և բարեխիղճ վերաբերմունք ցուցաբերել հավաքո-
վի կոնստրուկցիաների հանգույցները ապահով դարձնելու գործին, մանավանդ,
երբ այդ կոնստրուկցիաները կիրառվում են սեյսմիկ գոտիներում: Մինչդեռ
պահանջկոտությունը հակաերկրաշարժային միջոցառումների ապահովման
տեսակետից, շինարարական կազմակերպություններում բացակայում է:

Հայտնի է, որ մոնոլիտ կոնստրուկցիաներն ավելի լավ են դիմադրում

երկրաշարժին։ Հավաքովի կոնստրուկցիաները մոնոլիտի աստիճանին հասցնելու համար հարկավոր է միացման հանգույցները ճշտորեն կատարել նախագծմանը համապատասխան այնպես, որ այդ հանգույցներն ընդունակ լինեն դիմադրելու առաջացող լարվածություններին այնպես, ինչպես մոնոլիտ մասերը։

Անցյալ տարվա դեկտեմբեր ամսին, դեռ ծածկի աշխատանքները նույնիսկ չավարտած, փլվեց Լենինականի ապակու գործարանի ցեխերից մեկի տանիքը, որը իրականացված էր երեք մետաղական ֆերմաների վրա։ Շինարարական մինիստրության տեխնիկական հանձնաժողովը պարզեց, որ փլման պատճառը ինչպես մետաղական ֆերմաների հանգույցների բացարձակ անորակ միացումներն էին, այնպես էլ երկաթ-բետոնյա սյուների բոլորովին ցածր որակը։

Անորակ աշխատանքների օրինակներ կան նաև բնակարանային շինարարության մեջ։ Հայտնի է, որ ամենուրեք ընդունված «միդիս» շարերն ինքնըստինքյան դեֆեկտավոր են։ Այդ է պատճառը, որ այն մենք իրականացնում ենք մի շարք նախազգուշական միջոցառումների ճանապարհով, այն է՝ շարը կատարվում է բարդ շաղախով, ստեղծվում են կապեր ընդլայնական քարերի միջոցով, անկյուններում դրվում են մետաղյա ցանցեր, ամբողջ շենքի շրջագծով կիրառվում է երկաթ-բետոնյա գոտի և այլն։ Բայց բավական է անուշադիր վերաբերմունք այս միջոցառումների նկատմամբ (մասնավորապես անփորձ աշխատողների կողմից), որպեսզի այդ ամբողջ կառուցվածքը վտանգավոր դրության մեջ լինի սեյսմիկ ուժերին դիմադրելու տեսակետից։

Այն դեպքում, երբ քարի շարը կատարված է անբավարար շաղախով, հետագա շարերի անհավասար ճնշման տակ քարերը քայքայվում են, թեև մասամբ այդ կարելի է կանխել, ինչպես դա կատարվեց Երևանի Կոմիտասի և Կիևյան փողոցների վրա կառուցված երկու բնակելի շենքերի նկատմամբ։ Իսկ եթե քարերի հաջորդական կապը չի պաշտպանվում, կամ չեն դրվում մետաղյա ցանցերը, այդ արդեն հայտաբերել չի կարելի գործը կատարելուց հետո։ Այս հանգամանքը հավասարապես վերաբերում է նաև երկաթ-բետոնյա հավաքովի կոնստրուկցիաներին, ինչպես բնակարանային, այնպես և արդյունաբերական շինարարության մեջ։

Միջհարկային ծածկերի սնամեջ սալերի միաձույլ աշխատանքի համար նախատեսված է ընդլայնական ու ընդերկայնական միացումներ մետաղյա ձողերի միջոցով ոչ միայն միմյանց, այլև նրանց ու պատերի միջև։ Սակայն այս միջոցառումները ոչ բոլոր դեպքերում և ոչ բոլոր աշխատանքի ղեկավարների կողմից են կատարվում։

Շինարարության մինիստրությունը անհրաժեշտ միջոցներ է ձեռք առել այս լուրջ բացը շինարարության ասպարեզից վերացնելու համար։ Դրա հետ միասին անհրաժեշտ է նաև ուժեղացնել պատվիրատու կազմակերպությունների և առանձնապես հեղինակների հսկողությունը, որոնք նույնքան պատասխանատվություն են կրում շինարարության որակի համար, ինչքան և կառուցող կազմակերպությունները։ Հարկավոր է անթերի կերպով կիրառել թաքնված բոլոր աշխատանքների ժամանակին ակտավորումը, որպես պատասխանատվության բարձրացման լուրջ միջոցառումներից գլխավորը։

Շինարարության մեջ գոյություն ունեցող թերություններից մեկն էլ այն է, որ գոյություն ունեցող մեքենաները ոչ լրիվ և ռացիոնալ կերպով են օգտա-



գործվում։ Արտադրության մեջ աշխատող ճարտարապետ տեխնիկներից ոմանք հուսալով, որ առանց լուրջ դժվարությունների կարող են ստանալ շինարարական մի շարք ավելի տարածված մեքենաներ, խնամքով չեն շահագործում մեքենաներն ու սարքավորումները, որի հետևանքով դրանք ժամանակից շուտ փչանում են։ Բետոնախառնիչ մեքենաները, հորիզոնական տրանսպորտյորները, սվաղի շաղախի տեղափոխման մեքենաները աշխատում են իրենց ունակությունների փոքր մասով միայն։

Ներկա պայմաններում շինարարության համար բախտորոշ նշանակություն ունի աշտարակային վերամբարձ մեքենաների լարված ու անխափան աշխատանքը, մանավանդ, որ դրանց թիվը դեռևս քիչ է շինարարության ծավալի համեմատությամբ։ Սակայն այդ եղած վերամբարձներն էլ օգտագործվում են գերազանցապես մեկ հերթում։ Ավելին, այն շենքերում, որտեղ շինարարության նպատակներով ջուրը կարելի է խողովակներով բարձրացնել վերին հարկերը, հաճախ բարձրացվում են վերամբարձ մեքենաներով, առանց այն էլ դժվարացնելով այդ մեքենաների լարված աշխատանքը։

Շինարարության որակի բարձրացման գործում վճռական նշանակություն ունի աշխատավարձի կարգավորման հարցը։ Որքան ճիշտ որոշվի աշխատանքի միավորի արժեքը և այն խստորեն կիրառվի կարգագրերում, այնքան ռեալ կլինի պայքարը որակի համար։ Խոսքը տվյալ դեպքում վերաբերում է այն աշխատանքներին, որոնք կատարվում են մեր սպեցիֆիկ պայմաններում։ Որպես օրինակ կարելի է վերցնել արթիկ տուֆի մշակման հարցը։ Ինչպես հայտնի է, տեղական տուֆերի կատեգորիան որոշելու համար մինչև այժմ օգտվում են միութենական նորմաներից, որոնք մշակված են մարմարների համար, որն ինքնըստինքյան ճիշտ չէ։ Արթիկ տուֆը հավասարեցնելով մարմարի 5-րդ կարգին, սկսած 1936 թվականից (հաշվի առնելով արթիկ տուֆի ցածր ծավալային կշիռը և մշակման տեսակետից նրա փափկությունը), լրացուցիչ սահմանված է 0,6 գործակից, ըստ որի մեկ բանվորը 8 ժամում պետք է տաշի ավելի քան 5,5 քառ. մետր տուֆ մակերեսի երեսապատման համար։ Իրականում ոչ 1936 թվականին (երբ արթիկ տուֆի հանքերը արտադրում էին իրոք համեմատաբար փափուկ քար) և ոչ էլ այժմ (երբ արթիկ տուֆի շերտերը համատարած կերպով կարծրացել են և ծավալային կշիռը 1100—1250 կիլոգրամից հասել է մինչև 1700—1800 կիլոգրամի մեկ խորանարդ մետրի մեջ), բանվորների արտադրողականությունը (ձեռքով տաշելիս) չի անցել 3—3,5 քառ. մետրից։

Ամենից տարօրինակն այս դեպքում այն է, որ հիշված գործակիցը իր ժամանակին սահմանված է եղել առանց նախնական ուսումնասիրության և բավարար հիմքի, ուստի և այն կիրառվել է ոչ համատարած կերպով, ըստ որում շինարարական կազմակերպությունները, երբ ցանկացել են, կիրառել են այն, իսկ երբ չեն ցանկացել, հանել են կիրառությունից։

Շինարարության մինիստրության տեխնիկական վարչությունը վերջերս մոտիկից զբաղվեց այս կարևոր հարցի քննարկմամբ։ Ապացուցված է գոյություն ունեցող գործակցի անհիմն լինելը և հարց է բարձրացված այն ամենուրեք շտկելու համար։ Սակայն հարցը միայն սրանով չի վերջանում։ Մինիստրների Սովետին կից Շինարարության ու ճարտարապետության գործերի կոմիտեն, Շինարարության մինիստրությունը և Կառուցվածքների ինստիտուտը շտապ կարգով պետք է զբաղվեն Հայաստանի բոլոր տուֆաքարերի (այդ

թվում նաև ֆելզիտային տուֆերի) մշակման ռացիոնալ կատեգորիաներ և նորմաներ սահմանելու հարցով ու այն մտցնեն միութենական նորմատիվների մեջ։

Աշխատավարձի կարգավորման առումով խոշոր նշանակություն ունի նաև գոյություն ունեցող նորմատիվների ճիշտ կիրառումը՝ հավասարապես բոլոր շինարարական կազմակերպություններում։

Բազմաթիվ փաստեր կարելի է բերել, երբ միևնույն արհեստավորը, միևնույն աշխատանքի համար տարբեր չափերով է վարձատրվում տարբեր կազմակերպություններում։ Այս հանգամանքը ավելի ցայտուն կերպով է արտահայտվում մինչև շինարարությունների խոշորացումը և նրանց միավորումը Շինարարության մինիստրության մեջ, թերևս այժմ էլ լրիվ չափով վերացված չէ։ Հաշվի առնելով այս հանգամանքը, Շինարարության մինիստրությունը ձեռնարկել է ընդհանուր կոմպլեքսային կալկուլացիաների ստեղծման գործը։ Կոմպլեքսային կալկուլացիաների իմաստն այն է, որ միևնույն աշխատանքի միավորի համար նույն քաղաքի կամ տերիտորիայի բոլոր շինարարական օբյեկտներում բանվորական բրիգադները վարձատրվում են նախապես հաշված և կայուն սահմանված գներով՝ ելնելով, իհարկե, գոյություն ունեցող և գործող պետական նորմաներից։

Կոմպլեքսային կալկուլացիաների կազմումն այժմ ավարտված է և մինիստրության կոլեգիայի հաստատումից հետո կիրառվելու է ամենուրեք։ Այս մեթոդը կոչված է մեծ չափով խրախուսելու իսկական կոմպլեքսային բրիգադների ստեղծմանը ոչ միայն առանձին կոնստրուկցիաների և աշխատանքի առանձին տեսակների գծով (ինչպիսին գոյություն ունի ներկայումս), այլև այսպես կոչված «վերջնական արդյունքի» կոմպլեքսային բրիգադների կազմակերպմանը, որը կիրառվում է այժմ Մոսկվայում։

Շինարարական աշխատանքների, մասնավորապես բնակարանային շինարարության որակը պետք է գտնվի վստահելի հսկողության տակ։ Լավորակ աշխատանք կատարելու համար ամենից առաջ հարկավոր է, որպեսզի կառուցող ինժեները, տեխնիկը, բանվորը տեխնիկապես լինի գրագետ, հետաքրքրվի շինարարական տեխնիկայի զարգացման նորություններով և որ գլխավորն է՝ գիտենա շինարարական արտադրության տեխնիկական պայմանները և ամենայն ճշտությամբ հաշվի նստի դրանց հետ։

Չի կարելի համաձայնել այն մտքի հետ, որ շինարարության ցածր որակը միշտ անորակ շինանյութի հետևանքն է։ Բոլորին հայտնի է, որ մեր շինանյութերը, հատկապես շինափայտը, պարկետը անհրաժեշտ որակ չունեն և, անկասկած, այդ հանգամանքը լուրջ կերպով ազդում է հատակների, դուռլուսամուտների որակի վրա։ Բայց ստացած անտառանյութը ժամանակին չորացնելու և բարեխիղճ օգտագործելու դեպքում, նրանից կարելի է բավարար որակի դուռ, լուսամուտ և հատակ պատրաստել։ Հաճախ անորակ են նաև ծեփման, ներկման, սանիտարա-տեխնիկական աշխատանքները, որտեղ շինանյութերի անորակությունը այլևս գործ չունի։ Այն պետք է բացատրել միայն աշխատանքի ղեկավարի և բանվորների անբարեխիղճ աշխատանքով։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ շինարարության որակը անհամեմատ կարելի է բարձրացնել տեխնիկական ղեկավարության որակի բարձրացումով։ Նկատի ունենալով այս, Շինարարության մինիստրության կոլեգիան որոշում է ընդունել՝ սկսած 1958 թվականից իրեն ցանցում ամեն տարի



անցկացնել ինժեներա-տեխնիկական աշխատողների պրակտիկ տեխնիկական գիտելիքների ստուգում՝ բրիգադիրներից մինչև շինարարական վարչությունների պետերն ու գլխավոր ճարտարապետները և միջոցներ ձեռք առնել, նրանց տեխնիկական գիտելիքները կատարելագործելու համար։

Այս տարվա ստուգումները, որոնք մոտենում են իրենց վախճանին, ցույց
տվեցին, որ կառուցող աշխղեկ-տասնապետների ու նույնիսկ շինարարական
վարչությունների տեխնիկական ղեկավար աշխատողների մի զգալի մասն
իրոք ետ է մնացել շինարարության տեխնիկայի զարգացման ներկա մակար-
դակից և նույնիսկ մոռացել է շինարարության համար այբուբեն համարվող
տեխնիկական պայմանները։ Այսպես, օրինակ, Արարատի ցեմենտի գործարա-
նի շինարարության վարչության գլխավոր ինժեներ Ա. Մնացականյանը գաղա-
փար չունի ոչ միայն շինարարության նորություններից, այլև գործող տեխնի-
կական պայմանները նա նույնիսկ չի կարդացել, ուստի պատահական չէ, որ
ցեմենտի գործարանի շինարարության մեջ անորակ աշխատանքի բազմաթիվ
փաստեր կան։ Երրորդ տրեստի աշխղեկ Ս. Սիմոնյանը չունի շինարարական
կրթություն, երկար ժամանակ աշխատել է շինարարության հետ ոչ մի առըն-
չություն չունեցող հիմնարկներում (ընդհուպ մինչև կոլտնտեսության նախա-
գահ) և վերջում որոշել է դառնալ շինարար, չմտահոգվելով ձեռք բերելու գոնե
մինիմում գիտելիքներ։ Արդյունքը եղել է այն, որ ոչ թե ընկ. Սիմոնյանն
է տեխնիկական ղեկավարություն ցույց տալիս բանվորներին, այլ՝ վերջին-
ներս նրան։

Նույն տրեստի տասնապետ Ս. Անանյանը ոչ միայն տեխնիկական, այլ
նույնիսկ միջնակարգ կրթություն չունի, ոչինչ չգիտե շինարարական տեխնի-
կայից։ Բնական է, որ որակյալ աշխատանք նրանից սպասել անհնար է,
բայց, դժբախտաբար, նա դեռ շարունակում է աշխատել իրեն ոչ համապա-
տասխան բնագավառում։

Շինարարության տեխնիկական ղեկավար աշխատողների մի մասը, ինչ-
պես ցույց տվին ստուգումները, հույսը դրել էին մասնագետ բանվորների վրա,
և այդ պատճառով հսկողությունը աշխատանքի որակի վրա բացակայել է։

Այսպիսի օրինակները եզակի չեն և գոյություն ունեն գրեթե բոլոր տրեստ-
ներում ու շինարարական վարչություններում։ Բերված փաստերը բավական
են ցույց տալու համար, որ շինարարության որակը բարձրացնելու համար
ամենից առաջ պետք է սկսել կառուցող կադրերից, սիստեմատիկ կերպով
բարձրացնել նրանց գիտելիքների մակարդակը նորագույն տեխնիկայի համե-
մատ։ Իսկ անընդունակ և տեխնիկական մինիմալ գիտելիքներից զուրկ ին-
ժեներա-տեխնիկական աշխատողներից պետք է ազատվել անհապաղ։

Պարտիայի ու կառավարության կողմից մեր շինարարներին առաջադրված
խնդիրների հաջող լուծումը պահանջում է արագ կերպով բարձրացնել տեխնի-
կական ղեկավարության մակարդակը, լայն չափերով ներդնել և մաքսիմալ
չափով օգտագործել նորագույն տեխնիկան, ավելի համարձակ կերպով առաջ
քաշել դեռ չլուծված պրոբլեմները, նորագույն շինանյութեր ու կոնստրուկցիա-
ներ մշակելու և շինարարության մեջ կիրառելու ուղղությամբ։

# ՄՍԵՂԵՆ-ԿԱԹՆԵՂԵՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

Վ. ՂԱԶԱՐՅԱՆ

Համայնացված անասնաբուծությունը մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության հաստատուն բազան է։ Մսեղեն-կաթնեղենի արդյունաբերությունը մեր երկրում զարգանում է արագ տեմպերով։ Մեծ չափով բարձրացել է պանրի, թարմ կաթնամթերքների, կաթի պահածոների արտադրությունը։

Մինչև ռևոլյուցիան մեր երկրում գոյություն չուներ մսեղենի կատարյալ արդյունաբերություն, բացառությամբ մի քանի խոշոր քաղաքների, որտեղ կային քիչ թե շատ կահավորված կոմունալ սպանդանոցներ։

Հնգամյակների տարիներին սովետական մարդիկ կառուցեցին հազարավոր մեքենայացված յուղագործական, մսի վերամշակման, մսեղենի և կաթնային պահածոների գործարաններ և կոմբինատներ, սառցարաններ, որոնք ունեն բարձրորակ կահավորում, բարեկարգված տերիտորիա, բնակելի շենքեր, ակումբներ, մանկապարտեզներ և մսուրներ։ Հարյուրավոր կառույցների թվին են պատկանում Մոսկվայի, Լենինգրադի մսի և կաթի կոմբինատները, Սեմիպալատինսկի, Ուլան-Ուդեի, Բաքվի, Լենինականի կոմբինատները և շատ ուրիշներ։ Մեծ փոփոխություններ են տեղի ունեցել արտադրության մեջ, որը հենվում է գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների վրա։

Սովետական իշխանության տարիներին մեծ թվով որակյալ կադրեր ստեղծվեցին նաև արդյունաբերության այս կարևոր ճյուղի համար, որոնք կատարելագործում են տեխնիկայի և արտադրության տեխնոլոգիան։ Սովետական մասնագետների ուժերով ստեղծված են մի շարք մեքենաներ և ապարատներ, մշակված են մսեղեն-կաթնեղեն մթերքների արտադրության շատ նոր տեսակներ։ Մեծ նվաճում է յուղի մշակման անընդհատ գծե մեքենայի ստեղծումը, ոչխարների և խոզերի մորթման ու մշակման ունիվերսալ կոնվեյերի կոնստրուկցիան։ Բացի այդ, պիլմենի ավտոմատի, կոտլետի ագրեգատի և նորագույն տեխնիկայի այլ տեսակների ներդրումը հիմնովին փոխեց արտադրության պրոցեսը, հեշտացրեց բանվորների աշխատանքը և բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը։ Կաթնեղեն-մսեղենի արդյունաբերության բնագավառում աշխատող բանվորների, մասնագետների և ծառայողների ամենօրյա ջանքերի շնորհիվ կատարելագործվում են արտադրական պրոցեսները, ավելանում է արտադրվող մթերքների ասորտիմենտը և լավանում է որակը։ Այժմ արտադրվող պանրի տեսակները հասնում են 50-ի։ Արտադրվում են բազմատեսակ երշիկներ, կոտլետներ, պիլմեններ։

1913 թվականին Ռուսաստանում ստացված 1042 հազար տոննայի դիմաց, 1957 թվականին ՍՍՌՄ-ում ստացվել է 3,1 միլիոն տոննա միս։ Համապատասխանորեն երշիկեղենի արտադրությունը 60 հազարից հասավ 900 հազար տոննայի։ Եթե 1913 թվականին ցարական Ռուսաստանում արդյունաբերական եղանակով մշակվել է 1,3 միլիոն տոննա կաթ, ապա ՍՍՌՄ-ում 1957 թվականին այն հասավ 20,5 միլիոն տոննայի, տալով 8,9 անգամ ավելի աճ։ Համապատասխանորեն յուղի արտադրությունը 104 հազար տոննայից հասավ 621 հազար տոննայի, կամ աճեց 6 անգամ։

Այս բնագավառում լուրջ նվաճումներ ունի և մեր ռեսպուբլիկան։

Արդեն 1940 թվականին սննդի արդյունաբերության արտադրանքը 8 անգամ գերազանցում էր 1913 թվականի մակարդակը, իսկ 1956 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, այն աճեց 2,3 անգամ։

Հետպատերազմյան տարիներին գործող ձեռնարկությունները ընդլայնելու և դրանք տեխնիկապես վերասարքավորելու հետ միասին գործադրվել են մսի-կաթի մշակման տասնյակ նոր խոշոր ձեռնարկություններ։ Մեքենայացված պանրագործարանների կառուցումը ռեսպուբլիկայում սկսվել է 1926 թվականից, իսկ մսի պահածոների կոմբինատի կառուցումը՝ 1931 թվականից։ Առաջին խոշոր ձեռնարկությունը, որը տարեկան մշակում է ավելի քան 3000 տոննա կաթ, կառուցվել է 1929 թվականին Կալինինոյում։ Դրանից հետո կաթի մշակման գործարաններ կառուցվել են մյուս շրջաններում։ Կաթի և մսի մըշակման մեքենայացված գործարանների և կոմբինատների կառուցումը մեծ թափ ստացավ հետպատերազմյան տարիներին։ Այժմ ռեսպուբլիկայի համարյա բոլոր շրջաններում կան պանրագործարաններ։

Ժամանակակից տեխնիկայով հագեցված է Լենինականի մսի պահածոների կոմբինատը, որը մի հերթափոխում մշակում է 70 տոննա միս և 5,5 տոննա երշիկեղեն, բացի այդ, թողարկվում են կոտլետներ, պիլմեններ, կարկանդակներ և այլ կիսաֆաբրիկատներ։ Կիրովականի մսի կոմբինատը մեկ հերթափոխում արտադրում է 25—30 տոննա միս, ինչպես նաև երշիկեղեն և կարկանդակներ. Ղափանի սառցասպանդանոցը մեկ հերթափոխում արտադրում է 15 տոննա միս, 2,5 տոննա երշիկեղեն, կոտլետներ և այլ սննդամթերքներ։

Ռեսպուբլիկայի մսի կոմբինատները այժմ հնարավորություն ունեն կըրկնապատկելու մսի և կիսաֆաբրիկատների արտադրանքը։ Բավական է ասել, որ երկհերթ աշխատանքի դեպքում կոմբինատները հնարավորություն ունեն թողարկելու 250 տոննա միս, 30 հազար հատ կարկանդակ, 40 հազար հատ կոտլետ, 25-30 տոննա երշիկեղեն, 8 տոննա պիլմենի և ավելի քան 15 հազար պայմանական տուփ պահածո։

Մինչև վերջերս Երևանի մսի կոմբինատն իր հզորություններով չէր բավարարում արտադրության աճող պահանջները։ Դրա համար էլ Երևանում սկսվեց մսի նոր կոմբինատի կառուցումը, որի մի քանի կորպուսների շինարարությունն արդեն ավարտված է. դրանցից են սառցարանը՝ 2100 տոննա տարողությամբ, երշիկի գործարանը՝ օրեկան 15-20 տոննա արտադրական կարողությամբ, որը հնարավորություն կտա բարձրացնելու երշիկի որակը և ավելացնելու ասորտիմենտը։ Կոմբինատն ունի խոհանոցային ցեխ կոտլետի, պիլմենի, կարկանդակի և այլ մսամթերքների արտադրության համար։ Այս տարի շահագործման պետք է հանձնվի նաև մսի և ճարպերի մշակման կորպուսը։ Կոմբինատին կից կառուցված են խոզաքիրացման տիպային գոմեր մոտ 2300 գլխի համար։

Եթե 1940 թվականին Հայաստանի պետական ձեռնարկությունները մշա-

կել են 20129 տոննա կաթ և 8725 տոննա միս, ապա 1957 թվականին՝ 73000 տոննա կաթ, 13300 տոննա միս։

Հայկական ՍՍՌ մսի և կաթնամթերքների մշակության գործարանների քանակական և արտադրական աճը ցույց է տալիս հետևյալ աղյուսակը.

| Ձեռնարկությունները և մթերքների մշակումը | Տարիները | | | | |
|---|---|---|---|---|---|
| | 1928 | 1940 | 1950 | 1953 | 1957 |
| Կաթնարդ. գործարաններ | 76 | 56 | 58 | 61 | 76 |
| Դրանցից մասնագիտացված | 9 | 16 | 33 | 41 | 55 |
| Այդ թվում մեքենայացված են | 1 | 5 | 20 | 28 | 34 |
| Մսի կոմբինատներ՝ մեքենայացված | — | 1 | — | 2 | 4 |
| Պանիր (տոննաներով) | 229 | 850 | 1144 | 1830 | 3492 |
| Այդ թվում սովետական, շվեյցարական (տոննաներով) | — | — | 322 | 441 | 425 |
| Յուղ կենդանական (տոննաներով) | 29 | 414 | 934 | 1026 | 1728 |
| Թարմ կաթնամթերքներ վերածած կաթի (տոննաներով) | — | 1596 | 3183 | 7789 | 15832 |
| Երշիկեղեն (տոննաներով) | — | 877 | 1503 | 2119 | 3502 |
| Միս (տոննաներով) | — | 7037 | 7979 | 13135 | 13300 |

Արտադրվող պանրի, կաթնամթերքների և մսամթերքների պահպանման համար մսի կոմբինատներին կից կառուցվում են սառցարաններ՝ 6051 տոննա տարողությամբ։ Պանրի պահպանման համար, բացի այդ գործարաններում սարքված հարմարություններից, Ստեփանավանի պանրագործարանում, Լենինականի կաթի գործարանում և Երևանի յուղսառցարանում կառուցված են միջշրջանային պահեստներ՝ սառեցման հարմարանքներով՝ մոտ 1500 տոննա ընդհանուր տարողությամբ։ Ազգաբնակչությանը թարմ և բարձրորակ կաթնամթերքներ մատակարարելու համար Լենինականում, Կիրովականում, Հոկտեմբերյանում, Արտաշատում կառուցված են կաթի գործարաններ։ Մի շարք գործարաններում սարքված են թարմ կաթնամթերքների և պաղպաղակի մշակման ցեխեր։

1957 թվականին շահագործման հանձնվեց ռեսպուբլիկայում կաթնարդյունաբերության ամենախոշոր ձեռնարկությունը՝ Երևանի կաթի կոմբինատը, որը օրեկան մեկ հերթափոխում կարող է մշակել մոտ 60 տոննա կաթնամթերք։ Հիմա կոմբինատը կաթ բաց է թողնում շշերում և տափաշշերում, մածուն, կեֆիր, 30 տոկոսանոց հում սեր, 20 տոկոսանոց ավարոգ, 17 տոկոսանոց պանրիկ, ացետոֆիլին, կաթի սեր։ Կոմբինատի դիրեկցիան և ինժեներատեխնիկական աշխատողները պետք է մտածեն ծրարված կամ փաթաթված կաթնամթերքներ շատ թողարկելու, ասորտիմենտը բազմացնելու, ինչպես նաև թարմ վիճակում այն ազգաբնակչությանը հասցնելու մասին։ Այստեղ քիչ գործ չունեն անելու նաև առևտրական կազմակերպությունները։ Արտադրական ձեռնարկությունների և առևտրական կազմակերպությունների ճկուն և համաձայնեցված աշխատանքից է կախված մայրաքաղաքի և մնացած քաղաքների, ինչպես, օրինակ, Լենինականի և մյուս վայրերի ազգաբնակչության նորմալ մատակարարումը կաթնամթերքներով։

Եթե մինչև վերջին տարիները մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության արտադրանքը փաթեթավորման չէր ենթարկվում և մնացորդները չէին օգտագործվում, ապա այժմ մսի կոմբինատում և մի շարք գործարաններում մշակվում են մնացորդներ և որոշ ապրանքներ փաթեթավորվում են։ Այսպես, օրինակ, Ստեփանավանի, Կալինինոյի, Լենինականի, Սիսիանի և այլ գործարաններում խոնավությունը չեզոքացնող 6 վակուում կարողությամբ սարքավորում դնելու շնորհիվ սիջուկից ստացվում է արժեքավոր հումք՝ կաթնաշաքար, մսեղենի արդյունաբերության մնացորդներից՝ ալբումին, ոսկրյա ալյուր և այլ մթերքներ։

Ռեսպուբլիկայի մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության հետագա վերելքն ապահովելու համար հարկավոր է լրջորեն մտածել մի շարք թերությունների, հատկապես արտադրության սեզոնայնության վերացման մասին։ Ինչպես անասունների նորմալ և անկորուստ պահպանման, նույնպես և արտադրության ռիթմիկ աշխատանքի տեսակետից հսկայական նշանակություն ունի անասունների մթերման կազմակերպումը։ Այդ գործում դեռևս նկատվում է խիստ սեզոնայնություն, որը և տեղիք է տալիս մեծ կորուստների, իսկ արտադրության մեջ՝ գրոհայնության, որը բացասաբար է անդրադառնում արտադրանքի քանակի և որակի վրա։ Այդ է վկայում մթերումների պլանի կատարման ընթացքը 1957 թվականին՝

Առաջին կիսամյակ՝ 22,4 տոկոս, սահմանված 35 տոկոսի փոխարեն։

Երրորդ եռամսյակ՝ 58,9 տոկոս, սահմանված 35 տոկոսի փոխարեն։

Չորրորդ եռամսյակ՝ 18,7 տոկոս, սահմանված 30 տոկոսի փոխարեն։

Մոտավորապես նույն պատկերն է ստացվում նաև 1958 թվականի առաջին եռամսյակում։

Արտաքուստ թվում է, թե այնքան էլ մեծ բան չէ պլանավորված և փաստացի թվերի միջև եղած տարբերությունը։ Սակայն այդ «ոչ մեծ» թվացող տարբերությունների տակ դժբախտաբար թաքնված են արտադրության համար շատ մեծ անհարմարություններ ու անախորժություններ։ Մսի կոմբինատների ղեկավարությունը, չստանալով արտադրության փաստացի պահանջներին համապատասխան հումք, ստիպված է լինում կրճատելու շատ բանվորներ և այլ աշխատողներ, որպեսզի պահպանի կառավարության կողմից սահմանված աշխատավարձի նորմաները։ Մյուս կողմից, սեզոնի եռուն ժամանակ ձգտելով արտադրությունը ապահովել բանվորներով, կոմբինատները ստիպված են լինում համալրում կատարել անփորձ, ոչ մասնագետ, գործը վատ իմացող, կամ բոլորովին չիմացող բանվորների հաշվին։ Այս հանգամանքը նույնպես չի կարող բացասական ազդեցություն չունենալ արտադրական պրոցեսների վրա։ Եվ եթե այս բոլորին գումարենք նաև այն, որ որոշ սննդամթերքների ոչ բավարար արտադրության պատճառով վատանում է բնակչության մատակարարման գործը, ապա պարզ կդառնա, թե ինչպիսի դժվարություններ են ծագում մսի արդյունաբերության ասպարեզում։

Հնարավոր է և պետք է վերացնել սեզոնայնությունը։ Տեղական օրգանների անմիջական օգնությամբ պետք է կարգավորել անասունների առաքման գործը, մթերումները կատարել պլանավորված առաջադրանքներին խիստ համապատասխան։ Դրա հետ միասին պետք է ուժեղացնել խոզագիրացման և անասնագիրացման տնտեսությունները, դրանք դարձնել շահավետ և կայուն։ Այս դեպքում միայն հնարավոր կդառնա ապահովել արտադրության անխափան աշխատանքը և ազգաբնակչությանը մատակարարել թարմ կաթնամթերքներ՝ տարվա բոլոր եղանակներին։

Վերջին տարիներում զգալի աշխատանք է կատարվում արտադրության տեխնիկական սարքավորման և կուլտուրայի բարձրացման գործում։ Լենինականի և Երևանի կաթի գործարաններում տեղադրված է շշերի լվացման և լցման սարքավորում։ Երևանի յուղսառցարանը յուրացրել է յուղի ծրարման և հալած պանրի արտադրության պրոցեսը։ Բազմազան է դարձել արտադրանքի, հատկապես կաթնամթերքների ասորտիմենտը։ Զգալի չափով ավելացել է արտադրվող կաթնամթերքների քանակը և բարձրացել դրանց որակը։ Պանրագործները մշակում են սովետական, շվեյցարական, հոլանդական, չանախ և այլ տեսակի պանիրներ։

Մսի կոմբինատները ավելացնում են երշիկեղենի և խոհանոցային մսամթերքների արտադրությունը, առանձին ուշադրություն դարձնելով ծրարման վրա։

Արդյունաբերության զարգացման հետ ավելացել են նաև փոխադրական միջոցները։ Այժմ մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության սիստեմում կա մոտ 300 բեռնատար ավտոմեքենա, որոնց մեջ քիչ չեն կաթնամթերքների տեղափոխման համար հարմարեցված հատուկ մեքենաներ։ Զգալի և արդյունավետ աշխատանք է կատարում «Մյասոմոլտրանս» ավտոպարկը։

Մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության զարգացման հետ միասին ավելացել է նաև արդյունաբերության մեջ որակյալ աշխատողների թիվը։ Այժմ մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության մեջ աշխատում են 4061 մարդ, որից բարձրագույն կրթությամբ՝ 153 մարդ, միջին մասնագիտական կրթությամբ՝ 130 մարդ։

Շատ աշխատողներ դարձել են իրենց գործի իսկական վարպետներ և իրենց բազմաթիվ առաջարկություններով կատարելագործում են տեխնիկան և տեխնոլոգիայի պրոցեսները։ Այդպիսիք են՝ Երևանի մսի կոմբինատի երշիկեղենի արտադրության վարպետ Գ. Այվազյանը, ցեխի բեռնաթափող Խ. Ապոյանը, Լենինականի մսի պահածոների ցեխի մեխանիկ գյուտարար Պ. Ֆելչյանը և ուրիշներ։ Առաջին կարգի պանրագործներ են՝ Նազարյանը, եղբայրներ Արեֆները, Ավագյանը և շատ ուրիշ վարպետներ, որոնց տված արտադրանքը հայտնի է ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։

Բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու մասին պարտիայի առաջադրած խնդիրը լուծելու համար ծավալված համաժողովրդական պայքարում իր ավանդն է մուծում նաև մեր ռեսպուբլիկան։ Վերջին երկու տարում ռեսպուբլիկայում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը աճել է 9,2 տոկոսով, որոնց թվում կովերինը՝ 15,1 տոկոսով, ոչխարներինը՝ 15,8 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվել է 22 ցենտներ միս (սպանդանոցային քաշով), 193 ցենտներ կաթ։

Հայաստանի Կոմպարտիայի XIX համագումարը պարտիական և սովետական կազմակերպություններին առաջարկեց՝ էլ ավելի ուժեղացնել աշխատանքը մսի և կաթի արտադրանքը բարելավելու գործում, ռեսպուբլիկայում 1965 թվականին մսի և կաթի արտադրությունը ավելացնելով 2,5 անգամ։

Նախատեսվում է մեծ աճ կաթնամթերքների ասորտիմենտի թողարկման ուղղությամբ. ավելանալու է ապխտած չոր և մեր ազգային սուջուխ ու պաստուրմա երշիկների թողարկումը։ Ավելանալու է նաև կաթի, մածնի, կեֆիրի, կաթի սերի, հում սերի, պանրի, տվարոգի և այլ մթերքների արտադրությունը։



Լուրջ ուշադրություն է հատկացվելու կաթնամթերքների որակի լավացման, ինչպես նաև կաթի ու մսի արդյունաբերության ամբողջ մնացորդի սիջուկի, արյան, ոսկորների, սմբակների, եղջյուրների մշակման և ժողովրդական տնտեսության համար օգտակար նյութեր պատրաստելու վրա, ինչպես, օրինակ, զանազան տեսակի չոր անասնակեր, սոսինձ, դեղանյութեր, օճառ, կաթնաշաքար, լայն սպառման առարկներ և այլն։

Պարտիան և կառավարությունը նախատեսում են առաջավոր տեխնիկայի սարքավորումներով հագեցնել նոր ձեռնարկությունները։ Ռեսպուբլիկայի մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության գծով 1959-1965 թվականներին նախատեսվում է կապիտալ շինարարության գծով ներդնել մոտ 81 միլիոն ռուբլի, չհաշված բնակելի և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը։

Այդ ժամանակամիջոցում իր բազմաթիվ արտադրական կորպուսներով պետք է լրիվ ավարտվի Երևանի մսի կոմբինատի, ինչպես և դեղորայքի արտադրության Երևանի գործարանի շինարարությունը։ Խոշորացվելու են Լենինականի և Էջմիածնի թռչնաբուծական ֆաբրիկաները, ավելանալու է սառցարանների տարողությունը մսակաթնեղենի արտադրանքի պահպանման համար։ Լրացուցիչ կերպով կառուցվելու են կաթնամթերքների մշակման գործարաններ՝ իրենց բոլոր հարմարություններով, որոնց լրացուցիչ կաթ մշակելու կարողությունը մեկ օրում հասնելու է 236 տոննայի։

Ալավերդում, Ջերմուկում, Քաջարանում, Դիլիջանում խոշոր աշխատանք է տարվելու շինարարության գծով։ Կաթի նախնական վերամշակման կետեր պետք է կառուցվեն Աշտարակում, Սևանում, Կոտայքում և Ախտայում, պանրի նոր գործարաններ՝ Յանխում, Ազիզբեկովում, Կյուլիքենդում, Բասարգեչարում, Ղուկասյանում։

Վերակառուցվելու և լայնացվելու են Կալինինոյի, Ստեփանավանի շրջանների և Բազարչայի պանրի գործարանները։ Երևանի յուղսառցարանին կից կառուցվում է 1000 տոննա տարողությամբ պանրի պահեստ։ Նման կառուցումներ են արվելու նաև մյուս շրջաններում։

Սակայն սխալ կլինի ասել, թե մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկությունների աշխատողներն անթերի կերպով կատարում են մեր պարտիայի պահանջը։ Դեռևս մի շարք թերություններ կան կաթ ընդունող կետերի, մսի կոմբինատների և «Զագոտսկոտ» տրեստի աշխատանքներում։

Հայտնի է, որ եթե նախօրոք չի նախապատրաստվում կովերի կիթը (կրծի մասաժ, պոչի կապում, նախնական մաքրում), բնականաբար ստացվում է կեղտոտված կաթ։ Կամ եթե կովերը չեն կթվում մինչև կաթի վերջին շիթը, ապա կաթը զրկվում է իր լիարժեքությունից, կորցնում յուղայնությունը և շատ կարճ ժամանակամիջոցում թթվում է՝ չհասնելով անգամ գործարան։ Հասկանալի է, որ այդպիսի կաթից ստացվող սննդամթերքները լինում են վատ և անհամ։ Լինում են նաև դեպքեր, երբ խիղճը կորցրած առանձին մարդիկ (սկսած ֆերմաներից մինչև գործարանների լաբորատորիաները և վաճառողները) ամեն տեսակի խարդախություններով արժեքազրկում են կաթնամթերքները։

Գիտությունը ապացուցել է, որ բնական կաթի տեսակարար կշիռը պետք է լինի 1,028-ից մինչև 1,031 և ավելի։ Սակայն մեզ մոտ կան առանձին կոլտնտեսություններ, ինչպես, օրինակ, Բադիկյանի (Նոր Բայազետի շրջան) Ալուչալուի, Ծովինարի (Մարտունու շրջան), «Նոր կյանք» (Վեդու շրջան) և այլն,

որոնք պետությանը հանձնում են նույնիսկ 1,023-1,026 տեսակարար կշռից էլ ցածր կաթ։ Պարզ է, որ այդ կաթը կեղծված է, բայց ընդունող կետերը ընդունում են ստանդարտին չհամապատասխանող նույնիսկ 3 տոկոսից էլ պակաս յուղայնությամբ կաթ։

Կաթնամթերքների անորակ լինելու պատճառներից է նաև այն, որ արդյունաբերության մեջ արտադրական պրոցեսները ռիթմիկ չեն կազմակերպվում և տեխնիկան հմտորեն չի օգտագործվում։ Այստեղ կարևոր նշանակություն ունի հսկողությունը թողարկվող սննդամթերքների վաճառահանման վրա։ Անբավարար է դեռևս դեկուստացիայի և այլ պրոցեսների կատարելագործման ուղղությամբ տարվող աշխատանքը, միշտ չէ, որ հաշվի է առնվում ժողովրդի քննադատական խոսքը այս կամ այն սննդամթերքների որակի և համի մասին։ Միանգամայն թույլ է նաև պետական տեսչության հսկողությունը, որը երբեմն կրում է ոչ օբյեկտիվ բնույթ։

Մեծ և պատասխանատու խնդիրներ են դրված մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության առաջ։ Տարակույս չի կարող լինել, որ մսեղեն-կաթնեղենի արդյունաբերության սիստեմի բոլոր աշխատողները, ղեկավարվելով ՍՄԿՊ XX և ՀԿՊ XIX համագումարների որոշումներով, կանեն ամեն բան՝ վճռականորեն առաջ մղելու մսեղեն-կաթնեղենի արտադրությունը, մատակարարելով ազգաբնակչությանը բարձրորակ, համեղ սննդամթերքներ։

---



## ԱՌԱՋԻՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ստեփանավանի շրջանում լուրջ թերություններ գոյություն ունեին անասնաբուծության բնագավառում. ամեն տարի կովերի 35—37 տոկոսը, իսկ
առանձին կոլտնտեսություններում (Կաթնաղբյուրի, Յաղդանի, Կուրթանի,
Ստեփանավանի)՝ 40—45 տոկոսը մնում էին ստերջ։ Ցածր էր կովերի կաթ-
նատվությունը, ոչխարների բրդատվությունը, անբավարար ուշադրություն էր
դարձվում մսի արտադրության ավելացման վրա, անուշադրության էր մատնը-
ված խոզաբուծությունը։ Նշված թերությունները վերացնելու և մեկ շնչին ընկ-
նող մսի, կաթի, յուղի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հաս-
նելու մասին պարտիայի կոչը կյանքում կենսագործելու համար շրջանի պար-
տիական և սովետական կազմակերպությունները իրագործեցին մի շարք
կոնկրետ միջոցառումներ, որոնց շնորհիվ հասան լուրջ հաջողությունների։

Ամենից առաջ զգալի աշխատանք տարվեց անասնապահական ֆերմանե-
րը լավագույն և գործիմաց աշխատողներով ապահովելու ուղղությամբ. անց-
յալ տարի անասնաբուծության բնագավառում աշխատանքի ուղարկվեցին ավե-
լի քան 123 կոմունիստ, 210 կոմերիտական և արտամիութենական երիտա-
սարդ, համալրվեց մասնագետների կազմը։ Ներկայումս կոլտնտեսություննե-
րում աշխատում են բարձրագույն կրթությամբ 39 և միջնակարգ կրթությամբ
32 անասնաբուծության մասնագետներ։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման կարևոր պայ-
մաններից մեկը՝ կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության բարձ-
րացումն է, անասնապահության աշխատողների խրախուսումը։ Այդ նպա-
տակով էլ պարտշրջկոմի և շրջսովետի գործկոմի օգնությամբ կոլտնտեսու-
թյուններում վերանայվեցին վարձատրման նախկին նորմանեոը և ճշտորեն
կիրառվեցին խրախուսանքի միջոցները։ Այսպես, սահմանվեց, որ անասնա-
պահական ֆերմաների ղեկավար աշխատողների համար վարձատրության չա-
փանիշն արտադրանքն է, նախկինում եղած կայուն վարձատրության փոխա-
րեն։ Օրինակ, եթե անցյալում Կույբիշև գյուղի կոլտնտեսության ֆերմայի
վարիչի համար ամսական սահմանված էր 50 աշխօր, անկախ այն բանից, թե
ֆերման որքան կաթ էր տալիս, ապա ներկայումս արտադրված յուրաքան-
չյուր 1,5 տոննա կաթի համար սահմանված է մեկ աշխօր։ Մի շարք կոլտնտե-
սություններում (Ստեփանավանի, Պուշկինոյի, Արմանիսի, Գյուլագարակի)
սահմանվեց, որ կաթի արտադրության առաջադրանքի գերակատարման դեպ-
քում, բացի լրացուցիչ վարձատրությունից, գերակատարած յուրաքանչյուր
տոկոսի դիմաց տրվում է նաև դրամական պարգև։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացմանը մեծապես
նպաստեց այն, որ արմատապես բարելավվեց անասունների, առանձնապես
կովերի բուժումն ու խնամքը։ Բացի այդ միջկոլտնտեսային փոխանակման

միջոցով բարելավվեց անասունների մայրական կազմը, ձեռք բերվեցին պտղաբերության և կաթնատվության տեսակետից ավելի լավ կովեր։ Օրինակ, Սվերդլով գյուղի կոլտնտեսությունը Ստեփանավանի և Կույբիշև գյուղի կոլտնտեսություններից ձեռք բերեց 10 կով, Լոռի Բերդ գյուղի կոլտնտեսությունը Ագարակի, Պուշկինոյի կոլտնտեսություններից գնեց 16 երինջ, իսկ Հոբարձի կոլտնտեսությունը՝ 10 կով։

Շրջանում անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման վրա բացասաբար են ազդում արոտավայրերի վատ մշակումը և բազմաթիվ կոլտնտեսությունների կողմից դրանց ոչ ռացիոնալ օգտագործումը։ Արոտավայրերը բարելավելու, դրանք ռացիոնալ կերպով օգտագործելու և անասունների խնամքը արոտային շրջանում լավ կազմակերպելու համար պարտիական և սովետական կազմակերպություններն ու կոլտնտեսությունների վարչությունները կոնկրետ գործ ձեռնարկեցին։ Կույբիշևի, Սվերդլովի, Վարդաբլուրի, Ուռուտի և այլ կոլտնտեսություններ ցանովի խոտաբույսերի հնձված տարածությունները ջրելու միջոցով աշնան ամիսներին անասուններին ապահովեցին լրացուցիչ արոտով։ Անցյալ տարի շրջանում 485 հեկտար արոտավայր ենթարկվեց մասնակի բարելավման։

Շրջանի կոլտնտեսություններն անասունների 1957—1958 թվականների մսուրային շրջանի խնամքի նախապատրաստման ուղղությամբ կատարեցին լուրջ աշխատանք։ Շրջանում կուտակվեց 16.000 տոննա խոտ, մոտ 20.000 տոննա սիլոս (որից 3865 տոննան՝ եգիպտացորենի), պահանջված չափի հյութալի և խտացրած կեր։ Ժամանակին կատարվեց անասնաշենքերի նորոգումը։ Կոլտնտեսություններն անասունների մսուրային շրջանն սկսեցին կազմ ու պատրաստ։ Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ հաջողությամբ է անցնում կովերի ծինը, լավ են խնամվում և անկորուստ պահվում մատղաշները։

Անասնաբուծության զարգացման հարցերը հաջողությամբ լուծելու համար պարտիայի շրջանային կոմիտեն սկզբնական կազմակերպությունների ուշադրությունն ուղղեց անասնապահ կոլտնտեսականների մեջ տարվող քաղաքական-կազմակերպական աշխատանքի վրա։ Անասնապահ կոլտնտեսականներին խրախուսելու, նրանց ուժերը մոբիլիզացնելու նպատակով անցյալ գյուղատնտեսական տարում կաթի արտադրության ավելացման գործում առաջնություն շահած կոլտնտեսությունների համար սահմանվեց պարտշրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշ։ Բացի դրանից, տնտեսական տարվա սկզբին անցկացվեց անասնապահների շրջանային հավաք, որտեղ քննության առնվեց առաջավորների փորձի տարածման, նկատվող թերությունների վերացման և եղած հնարավորությունների ճիշտ և ռացիոնալ օգտագործման հարցերը։ Այդ հավաքում շրջանի անասնապահները ստանձնեցին կոնկրետ պարտավորություններ և մրցման հրավիրեցին Կալինինոյի շրջանի անասնապահներին։

Մրցությամբ ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար սկզբնական պարտիական կազմակերպությունները սիստեմատիկ կերպով հետևում էին մրցության ընթացքին, կազմակերպում արտադրական խորհրդակցություններ և իրենց ժողովներում քննության առնում վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը, ամփոփում էին առաջավոր փորձը, կատարում փորձի փոխանակում և այդ արդյունքները լուսաբանում շրջանային թերթում։



Շրջկենտրոնի Ստալինի անվան կոլտնտեսությունը, որն ունի անասնա-
բուծական տոհմային ֆերմա, անցյալ տարվա երկրորդ եռամսյակի կաթի
արտադրության առաջադրանքը կատարեց միայն 96 տոկոսով։ Կաթի ար-
տադրության պլանի թերակատարման հիմնական պատճառը աշխատանքա-
յին ցածր կարգապահությունն էր։ Աշխատանքային կարգապահությունն ամրա-
պնդելու, կաթի արտադրության առաջադրանքները կատարելու նպատակով
սկզբնական պարտիական կազմակերպությունը հրավիրեց ֆերմայի աշխա-
տողների խորհրդակցություն, որտեղ ելույթ ունեցողները նշեցին, որ շատ
կթվորուհիներ լավ չեն աշխատում, հաճախակի խախտում են կթի ժամերը,
շատ դեպքերում էլ նրանց փոխարինում են կողմնակի, կթի տեխնիկան չտի-
րապետող մարդիկ։ Խորհրդակցությունում նշվեց, որ կոլտնտեսության վար-
չությունն անասնապահների համար չի ստեղծել աշխատանքի նորմալ պայ-
մաններ։ Անասնապահների քննադատական դիտողությունները և առաջարկ-
ները քննության առնվեցին սկզբնական պարտիական կազմակերպության
ժողովում և կոլտնտեսության վարչության նիստում։

Պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության որոշ-
մամբ մասնագիտական հարցերի վերաբերյալ անասնապահների համար կազ-
մակերպվեցին զեկուցումներ ու զրույցներ։ Կոլտնտեսության զոոտեխնիկ
Գ. Բուդաղյանը մի քանի անգամ զրույցներ ունեցավ անասունների խնամքի,
կթի տեխնիկայի և մյուս հարցերի մասին, անասնապահների համար ստեղծ-
վեցին աշխատանքային նորմալ պայմաններ և այլն։ Այս բոլորի շնորհիվ
կարճ ժամանակամիջոցում վիճակը փոխվեց և արդեն օգոստոս ամսին ֆեր-
ման ոչ միայն ապահովեց կաթի արտադրության առաջադրանքի կատարումը,
այլև լրացրեց նախորդ ամիսների պակասը։ Մինչև տարվա վերջը կոլտնտե-
սությունը կաթի արտադրության պլանը կատարեց 105 տոկոսով։

Շրջանի պարտիական կազմակերպությունները լայն աշխատանք ծավա-
լեցին անասունների գլխաքանակն ավելացնելու ուղղությամբ։ Սեփական հո-
տի վերարտադրության հաշվին 1957 թվականին գերակատարվեց բոլոր տե-
սակի անասունների գլխաքանակի ավելացման տարեկան պլանը։ Այսպես,
օրինակ, շրջանի կոլտնտեսությունները պարտավորվել էին յուրաքանչյուր 100
հեկտար հողատարածության հաշվով ունենալ 32 գլուխ խոշոր եղջերավոր
անասուն (այդ թվում 11,3 կով), 67 գլուխ մանր եղջերավոր անասուն, 23
գլուխ խոզ և 155 թռչուն։ Դրա դիմաց ներկայումս կոլտնտեսությունները
ունեն 39,4 գլուխ խոշոր եղջերավոր անասուն (այդ թվում 12 կով), 68 գլուխ
մանր եղջերավոր անասուն և այլն։

Լուրջ հաջողություններ ձեռք բերվեցին կաթի արտադրության ավելացման
ուղղությամբ։ Անցյալ տարի կովերի կաթնատվության համախառն արտա-
դրանքը կազմեց 7238 տոննա, կամ պլանը գերակատարվեց 1043 տոննայով,
յուրաքանչյուր կովից ստացվեց 1687 կիլոգրամ կաթ, պլանով նախատեսված
1360 կիլոգրամի դիմաց, յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության
հաշվով ապահովվեց 204 ցենտներ կաթ, որը 4 ցենտներով գերազանցում էր
ստանձնած պարտավորությանը։ Կաթի արտադրության ավելացման բնագա-
վառում առանձնապես մեծ հաջողություններ ունեցան Վարդաբլուրի, Հոբար-
ձի, Արմանիսի, Ուռուտի, Կաթնաղբյուրի կոլտնտեսությունները, որոնք ամեն
մի կովից ստացան 1890—2500 կիլոգրամ կաթ. նրանք յուրաքանչյուր 100
հեկտար հողատարածության դիմաց արտադրեցին 210—276 ցենտներ կաթ։

Անցյալ տնտեսական տարում զգալի էին հաջողությունները նաև ոչխարաբուծության զարգացման բնագավառում: Շրջանում լուրջ աշխատանք տարվեց ոչխարների ցեղայնությունը բարելավելու, նրանց խնամքը և կերակրման գործը լավ կազմակերպելու ուղղությամբ: Վարդաբլուրի կոլտնտեսությունը ձեռք բերեց «Պերեկոս» ցեղի խոյեր և մաքիների բեղմնավորումը կատարեց արհեստական ձևով, ըստ որում, եթե անցյալներում բեղմնավորման կամպանյան սկսում էին հոկտեմբերի 20-ին, ապա այժմ՝ հոկտեմբերի 1-ին, որը մատղաշների աճը արագացնելու լավագույն պայման է: Նշանակալի կերպով բարելավվել է ոչխարների կերակրումը: Այժմ նրանց կերաբաժնի մեջ կա սիլոս, կարտոֆիլ, վարսակ: Գոմերի մոտ պատրաստվել է ոչխարները ջրելու հարմարություն: Այս միջոցառումների շնորհիվ Վարդաբլուրի կոլտնտեսությունում արդեն բարձրացել է ոչխարաբուծության արտադրանքը: Այսպես, անցյալ տարի յուրաքանչյուր 100 մաքիից ստացվեց և պահպանվեց 96,7 գառ, յուրաքանչյուր ոչխարից՝ 3,34 կիլոգրամ բուրդ: Կոլտնտեսության ստացած բրդի 45 տոկոսը նուրբ և կիսանուրբ է:

Շրջանն ամբողջությամբ վերցրած, բրդի ստացման տարեկան պլանը կատարեց 118,7 տոկոսով՝ պլանից դուրս տալով 9610 կիլոգրամ բուրդ: Կոլտնտեսություններում բրդից ստացված դրամական եկամուտը կրկնապատկվեց՝ կազմելով մեկ միլիոն 680 հազար ռուբլի:

Որոշ աշխատանք կատարվեց մսի արտադրության ավելացման ուղղությամբ: Շրջանում մսի հանձնման պլանը թեև կատարվեց, սակայն թերակատարվեց 100 հեկտար հողատարածության հաշվով մսի արտադրության ստանձնած պարտավորությունը: Այդ ամենից առաջ հետևանք էր նրան, որ առանձին կոլտնտեսություններ (Լոռի, Բերդի, Գյուլագարակի, Մաքսիմ Գորկու, Կողեսի) քիչ ուշադրություն դարձրին խոզերի բտման, խոշոր եղջերավոր անասունների ամառային գիրացման վրա:

Շրջանում անասնաբուծական մթերքների արտադրության բնագավառում ավելի մեծ հաջողություններ ձեռք կբերվեին, եթե օգտագործվեին եղած բոլոր հնարավորությունները: Ագարակի, Գյառգյառի, Գյուլագարակի, Կողեսի կոլտնտեսություններում գյուղամերձ արոտավայրերը բավարար չափով չօգտագործելու, կովերին լրացուցիչ կերով չապահովելու հետևանքով աշնան ամիսներին խիստ իջավ կովերի կաթնատվությունը: Մի շարք գյուղերի (Կողես, Հոբարձի, Գյուլագարակ) կոլտնտեսությունների յայլաղներում հնարավոր էր պատրաստել սիլոս՝ աշնան ամիսներին կովերին կերակրելու համար, բայց այդ հնարավորությունը չօգտագործվեց:

Շրջանի անասնապահների մեջ աշխատանքային խանդավառություն առաջ բերեց ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի դիմումը՝ ուղղված գյուղատնտեսության բնագավառի աշխատողներին: Արձագանքելով այդ դիմումին՝ ընթացիկ տնտեսական տարում շրջանը վերցրեց ավելի բարձր պարտավորություններ: Յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով այս տարի շրջանում պետք է արտադրվի 245 ցենտներ կաթ, անցյալ տարվա 204-ի դիմաց և 36,44 ցենտներ միս, անցյալ տարվա 30 ցենտների դիմաց: Ավելի բարձր պարտավորություններ ստանձնվեցին նաև անասունների գլխաքանակի ավելացման ուղղությամբ: Պարտիական կազմակերպությունները գլխավորում են անասնապահների սոցիալիստական մրցությունը, քաղաքական-բացատրական աշխատանքն ուղղելով ստանձնած պարտավորությունների կատարմանը:



Այդ տեսակետից ուսանելի է Կուրթանի կոլտնտեսության պարտիական
կազմակերպության աշխատանքի փորձը: Այստեղ կոլտնտեսականների շրջա-
նում ագիտատորները սիստեմատիկաբար մասսայականացնում են պարտիա-
յի և կառավարության որոշումները, մեր երկրի ներքին և արտաքին քաղաքա-
կանության հարցերը, մեծ ուշադրություն են դարձնում սոցիալիստական մըր-
ցության ծավալմանը: Դիագրամաների, պլակատների, լոզունգների միջոցով
գյուղում լայնորեն ցուցադրված են ինչպես շրջանի, այնպես էլ կոլտնտեսու-
թյան ընթացիկ տնտեսական տարվա պարտավորությունները, սիստեմատիկ
կերպով ամփոփվում են կաթի արտադրության օրվա արդյունքները: Պար-
տիական կազմակերպությունը լուրջ ուշադրություն է դարձնում առաջավոր
փորձի մասսայականացման և արմատավորման վրա: Այդ նպատակով էլ
անասնապահների խորհրդակցություններում հաճախակի կազմակերպվում են
առաջավոր անասնապահների ելույթներ իրենց աշխատանքի փորձի մասին:
Այսպես, օրինակ, այս տարվա հրավիրված խորհրդակցությունում իրենց
փորձի մասին պատմեցին հովիվ Հ. Մակթաղյանը և կթվորուհի Հ. Գևորգյանը:
Խորհրդակցությունից հետո կազմակերպվեց էքսկուրսիա շրջանի Արմանիս
գյուղի կոլտնտեսության ֆերման, որտեղ նրանք ծանոթացան անասունների
խնամքի, կերակրման, կիթը կազմակերպելու արմանիսցիների փորձի հետ:
Ընթացիկ տարվա անցած ամիսների արդյունքները ցույց են տալիս, որ
շրջանի անասնապահներն իրենց խոսքը գործի են վերածում: Այսպես, օրի-
շրջանի անասնապահներն իրենց խոսքը գործի են վերածում: Այսպես, օրի-
նակ, անցած երեք ամսում կաթի արտադրության պլանը շրջանի կոլտնտե-
սություններում գերակատարվել է ավելի քան 96 տոննայով, կազմելով՝ 1825
տոննա, կամ 455 տոննա ավելի կաթ է ստացվել, քան անցյալ տարվա նույն
ժամանակամիջոցում: Կաթի արտադրության բնագավառում առանձնապես
բարձր ցուցանիշների են հասել Լոռի Բերդի, Արմանիսի, Կիրովյի, Ուռուտի
կոլտնտեսությունները, որոնք այս տարվա առաջին եռամսյակի պլանը կա-
տարեցին 114-142 տոկոսով:

Ընթացիկ տնտեսական տարում 12 տոկոսով ընդարձակվելու են միամյա
և բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունները, որոնք կազմելու են
2928 հեկտար. 1220 հեկտար բնական խոտհարքների վրա կատարվելու է մա-
նակի և արմատական բարելավում, 500 հեկտար արոտավայր վերածվելու է
խոտհարքի: Ագրոմիջոցառումների ճիշտ կիրառման, խոտաբույսերի բերքա-
տվության բարձրացման շնորհիվ շրջանում յուրաքանչյուր կովի համար կա-
պահովվի 15 ցենտներ խոտի, 60 ցենտներ սիլոսի (որից 30 ցենտները եգիպ-
տացորենի) և պահանջված չափով խտացրած կերի կուտակումը: Անասուննե-
րի կերաբաժինը արմատապտուղներով հարստացնելու համար նախատեսվում
է կուտակել 2000 տոննա կարտոֆիլ և 2000 տոննա կերի ճակնդեղ:

Անասնաբուծության զարգացման և մթերքների արտադրության ավելաց-
ման գործում կարևոր միջոց է աշխատատար պրոցեսների մեքենայացումը:
Այս ուղղությամբ շրջանում որոշ աշխատանք կատարված է. Կույբիշև և Լոռի
Բերդ գյուղերի կոլտնտեսությունների ֆերմաներում տեղադրվել են ավտոմատ
խմոցներ, մի շարք կոլտնտեսություններում մեքենայացված է կերի և գոմաղբի
փոխադրումը, ինչպես նաև ձեռք են բերված կերը խաշելու և մանրացնելու
մեքենաներ: Սակայն այս բոլորը շատ հեռու է բավարար լինելուց: Այժմ
տարվա ընթացքում երկու կոլ-
տնտեսությունների ֆերմաներում ևս ավտոմատ խմոցներ տեղադրելու, իսկ
շրջանում գործնական քայլեր են կատարվում

*չորս կոլտնտեսությունների ֆերմաներում՝ կերի ու աղբի փոխադրումը մեքենայացման ենթարկելու համար։*

*Շրջանում կան բոլոր հնարավորություններն ավելի քան բարձրացնելու ոչխարաբուծության եկամտաբերությունը։ Հիմնականը, որով պայմանավորվում է ոչխարաբուծության եկամտաբերությունը, կերի հարցն է։ Անցյալ տարի շրջանի կոլտնտեսություններում յուրաքանչյուր ոչխարի համար միջին հաշվով կուտակվեց կոշտ կեր 1,2 ցենտներ, սիլոս՝ մեկ ցենտներ, խտացրած կեր՝ 0,1 ցենտներ. այդ բոլորը կազմում են սահմանված նորմայի 45—50 տոկոսը։ Սակայն խոտհարքների բարելավման, արոտավայրերի հաշվին խոտհարքների ավելացման և յայլաղներում լրացուցիչ սիլոս պատրաստելու միջոցով հնարավոր կլինի լրացնելու կոշտ և հյութալի կերի պակասը։ Շրջանում դեռևս քիչ ուշադրություն են դարձնում ոչխարանոցների շինարարության վրա։ Այդ է պատճառը, որ ներկա վիճակով շատ կոլտնտեսություններում (Լեջան, Կողես, Յաղդան, Կուսթան) յուրաքանչյուր ոչխարին միջին հաշվով ընկնում է 0,4-0,6 քառ. մետր գոմային տարածություն, մեկ քառ. մետրի փոխարեն։*

*Պարտիական կազմակերպությունները և կոլտնտեսությունների վարչությունները մեծ աշխատանք են սկսել ոչխարներին ջրելու հարմարություններ ստեղծելու, արոտավայրերը մացառներից մաքրելու և բրդի կորուստը կանխելու, ոչխարների գիշերային արոտը կանոնավոր կազմակերպելու, արոտավայրերը ռացիոնալ կերպով օգտագործելու ուղղությամբ։ Այս բոլորն արվում է, որպեսզի կոլտնտեսություններում յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվի 188 ցենտներ բուրդ և ամեն մի ոչխարից ստացվի 3 կիլոգրամից ոչ պակաս բուրդ։*

*Շրջանի պարտիական կազմակերպությունները ղեկավարվելով ՀԿՊ XIX համագումարի որոշումներով, մոբիլիզացնում են կոլտնտեսային աշխատողների ուժերը՝ անասնաբուծության մթերքների արտադրության ընթացիկ տարվա առաջադրանքները պատվով կատարելու համար։*

Գ. ՀՈՒՆԱՆՅԱՆ

## ԶԱՐԳԱՑՆԵՆՔ ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

*Այգեգործությունն Իջևանի շրջանում գյուղատնտեսության հիմնական ճյուղերից մեկն է։ Տեղի բնակլիմայական պայմանները հնարավորություն են տալիս աճեցնելու ոչ միայն խաղող և հնդավոր մրգեր, այլև արևելյան խուրմա, նուռ, թուզ, սերկևիլ, ընկույզ. իսկ Ուզունթալայի պետական տնկարանի փորձը ցույց է տալիս, որ կարելի է աճեցնել նաև նուշ, դափնու տերև, ձիթապտուղ և մերձարևադարձային այլ կուլտուրաներ։ Ուզունթալա, Սևքար, Աչաջուր, Ներքին Աղդան, Գետաշեն, Ռևազլու, Խաշթառակ, Լալի, Թալա, Իջևան գյուղերում լայնորեն տարածված են խաղողագործությունը և պտղաբուծությունը, իսկ Դիլիջանի շրջակա վայրերում՝ անտոնովկա, ռանետ, բելֆլոր և այլ տեսակի խնձորի, ինչպես նաև այլ պտղատու այգիներ։*

*Խաղողագործության զարգացմանը հատկապես նպաստում է նաև այն, որ մեղմ կլիմայի շնորհիվ շրջանում այգեթաղ չի լինում և խնայվում է մեծ չափով աշխատանք։*



*Իջևանի շրջանի կոլտնտեսություններում ներկայումս մշակվում են 184 հեկտար խաղողի և 368 հեկտար պտղատու այգիներ։ Չնայած այգիների այս սահմանափակ տարածությանը, այնուամենայնիվ այգեգործությունից ստացված եկամուտն իր տեսակարար կշռով զգալի տեղ է գրավում կոլտնտեսությունների ստացած ընդհանուր եկամուտների մեջ։ Եթե 1957 թվականին շրջանում հացահատիկային և բանջարաբոստանային ցանքատարածությունների յուրքանչյուր հեկտարից (մանրածախ գներով հաշված) ստացվել է 4199 ռուբլու եկամուտ, ապա այգեգործությունից և պտղաբուծությունից ստացվել է 15.923 ռուբլու։*

*Առանձին հետաքրքրություն է ներկայացնում տարբեր կուլտուրաների արտադրության վրա ծախսված մեկ աշխօրի դիմաց ստացված եկամտի չափը։ Եթե հացահատիկի արտադրության վրա ծախսված մեկ աշխօրի դիմաց 1957 թվականին ստացվել է 43 ռ. 25 կ., կարտոֆիլի՝ 50 ռ. 39 կ., ծխախոտի՝ 37 ռ. 70 կ., բանջարաբոստանային կուլտուրաների՝ 46 ռ. 10 կ., ապա խաղողի արտադրության վրա ծախսված մեկ աշխօրի դիմաց ստացվել է 56 ռ. 30 կ. եկամուտ։*

*Շրջանի կոլտնտեսություններում ծխախոտը համարվում է հիմնական և բարձր եկամտաբեր կուլտուրա։ Բայց երբ ծխախոտագործությունը համեմատում ենք այգեգործության հետ, պարզվում է, որ այգեգործությունից ստացված եկամուտը ավելի բարձր է, քան ծխախոտագործությունից ստացածը։*

*Սակայն սրանից չի հետևում, թե պետք է թերագնահատել ծխախոտը և գյուղատնտեսական մյուս կուլտուրաները։ Ընդհակառակն, այգեգործությունը արագ տեմպով պետք է զարգանա ի հաշիվ թեք, մինչև այժմ չօգտագործվող հողերի և ոչ թե ի հաշիվ մյուս կուլտուրաների ցանքատարածությունների։ Միաժամանակ անհրաժեշտ է մոտակա տարիներին ծխախոտագործության աշխատատար պրոցեսների մեքենայացման միջոցով խոշոր չափով կրճատել ծխախոտի մեկ միավոր արտադրանքի վրա թափված աշխատանքը, որը էլ ավելի կբարձրացնի ծխախոտի եկամտաբերությունը։*

*Այգեգործության զարգացման գործում վերջին մի քանի տարիների ընթացքում լուրջ հաջողությունների են հասել Ուզունթալայի, Աչաջրի, Սարիգյուղի, Խաշթառակի, Ռևազլուի և այլ կոլտնտեսություններ։ Օրինակ, Ուզունթալայի կոլտնտեսությունը ներկայումս մշակում է 80,3 հեկտար խաղողի և պտղատու այգիներ։ Այստեղ Երևանի այգեգործական և պտղաբուծական ինստիտուտի կողմից հիմնած այգին խաղողի առատ բերք է տալիս։*

*Սարիգյուղի Շահումյանի անվան կոլտնտեսությունն աշխատանքի լավ կազմակերպման շնորհիվ 1957 թվականին անջրդի պայմաններում հեկտարից ստացավ 83,4 ցենտներ խաղող, պլանով նախատեսված 45 ցենտների դիմաց։ Թալայի կոլտնտեսությունում պտղատու այգիների յուրաքանչյուր հեկտարից նախատեսված 45 ցենտների դիմաց ստացվել է 73 ցենտներ բերք և յուրաքանչյուր ցենտների վրա ծախսվել է 9 աշխօր, 15 ռ. դրամ։ Սարիգյուղի կոլտնտեսության այգեգործական բրիգադայի բրիգադավար Ա. Ասատրյանը, այգեգործ Բ. Աղասարյանը, Խաշթառակի կոլտնտեսությունից՝ այգեգործներ Մ. Մխիթարյանը, Ա. Հակոբջանյանը, Աչաջրից՝ այգեգործական բրիգադայի բրիգադավար Վ. Եգանյանը, այգեգործ Լ. Քոբելյանը և շատ ուրիշներ ունեն այգեգործական աշխատանքի լավագույն փորձ, մասնակցել են Համա-*

միութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին, իրենց կատարած ազնիվ աշխատանքի համար բազմիցս պարգևատրվել և խրախուսվել են։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի XVIII համագումարը և ՀԿՊ Կենտկոմի 1955 թվականի Նոյեմբերյան պլենումը լուրջ ուշադրություն դարձրին մեր ռեսպուբլիկայում խաղողագործության և պտղաբուծության զարգացմանը։ ՀԿՊ Կենտկոմը խնդիր դրեց հյուսիս-արևելյան շրջաններում զգալի չափով ընդարձակել այգիների տարածությունը, այն հաշվով, որ դրանք դառնան մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական այգեգործության երկրորդ բազան։ Այդ հիման վրա Իջևանի շրջանի պարտիական ու սովետական կազմակերպությունները մի շարք գործնական միջոցառումներ իրականացրին խաղողի և պտղատու այգիների ընդլայնման և բերքատվության բարձրացման ուղղությամբ։

Հաշվի առնելով այգեգործության զարգացման հեռանկարները և ռեալ հնարավորությունները, Իջևանի շրջանում մինչև 1965 թվականն այգիների տարածությունն ըստ պլանի պետք է հասցվի առնվազն 1050 հեկտարի, որից խաղողինը՝ 536 հեկտարի, պտղատու այգիներինը՝ 414 հեկտարի։ Դա հնարավորություն կտա տարեկան ստանալու առնվազն 26.230 ցենտներ խաղող և 18.972 ցենտներ պտուղ։ Նշանակում է առաջիկա մի քանի տարվա ընթացքում այգեգործությունը շրջանի էկոնոմիկայում կունենա առաջնակարգ նշանակություն ու լուրջ դեր կխաղա աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման գործում։

Այգեգործության զարգացման և նրա բերքատվության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի տեղի բնակլիմայական պայմաններին համարված լավագույն սորտերի ընտրությունը։ Երևանի Այգեգործական և պտղաբուծական ինստիտուտի կողմից Սարիգյուղի և Ուզունթալայի կոլտնտեսություններում կատարվող փորձերը ցույց են տալիս, որ խաղողի տարբեր տեսակների միջին բերքատվությունը մի քանի տարիներում տատանվել է 80-ից մինչև 272 ցենտների միջև։ Այդ է ցույց տալիս հետևյալ աղյուսակը.

Խաղողի տարբեր տեսակներից ստացված բերքը ցենտներով.

| Խաղողի տեսակը | 1953 թ. | 1954 թ. | 1955 թ. | 1956 թ. |
|---|---|---|---|---|
| Լալվարի | 103 | 272 | 181 | 227 |
| Ալիգոտե | 215 | 147 | 132 | 153 |
| Պինո սև | 100 | 145 | 97 | 161 |
| Զեյբուկ | 129 | 163 | 89 | 155 |
| Կաբեռնե | 127 | 174 | 114 | 112 |
| Սապերավի | 167 | 207 | 160 | 200 |

Այստեղից պարզ երևում է, որ Իջևանի շրջանում ամենից ավելի բարձր բերք են տալիս Լալվարին, Սապերավին, Ալիգոտեն և Կաբեռնեն, որոնցից պատրաստում են շամպան և սեղանի թեթև լավորակ գինիներ։ Ահա թե ինչու այժմ շրջանի պարտիական, սովետական կազմակերպություններն ու կոլտնտեսությունների վարչությունները, որոնք մտահոգված են սեփական տնկիների տնտեսություններ ստեղծելու հարցով, մեծ ուշադրություն են դարձնում



ավելի բերքատու սորտեր աճեցնելու վրա, որովհետև առանց այդ տնտեսության ստեղծման այգեգործությունն արագ չի զարգանա։

Ընթացիկ տարում կոլտնտեսությունները պետք է տնկեն 100 հեկտար պտղատու և 63 հեկտար խաղողի այգի։ Դրա համար պահանջվում է մոտ 400.000 խաղողի պատվաստի արմատակալ և մեծ քանակությամբ տանձի, խնձորի, ընկույզի տնկիներ։ Ներկայումս շրջանի կոլտնտեսություններն ունեն 718.000 հատ ֆիլոքսերադիմացկուն կտրոններ և արդեն ավարտվել են պատվաստի գործնական աշխատանքները։ Չնայած դրան, որոշ կոլտնտեսություններ (Լալի, Ն. Աղդան, Ջողազ, Ծաղկավան, Սևքար, Գետաշեն) անբավարար ուշադրություն են դարձնում սեփական տնկարաններ հիմնելու վրա և յուրաքանչյուր տարի հսկայական միջոցներ են ծախսում խաղողի արմատակալներ ձեռք բերելու համար։

Կոլտնտեսություններին խաղողի և պտղատու այգիների համար անհրաժեշտ քանակությամբ տնկիներ հայթայթելու գործում լուրջ խնդիրներ ունի Ուզունթալայի պետական տնկարանը։ Յուրաքանչյուր տարի տնկարանը Իջևանի, Շամշադինի և այլ շրջանների կոլտնտեսություններին, ինչպես նաև կոլտնտեսականներին, բանվորներին ու ծառայողներին մատակարարում է տանձի, խնձորի, կեռասի և այլ տեսակի տնկիներ։ Սակայն անհասկանալի պատճառով Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը տնկարանին խաղողի արմատակալների պատվաստման չնչին պլան է իջեցնում։

Իջևանի շրջանում այգեգործության բնագավառի լուրջ թերություններից մեկն էլ այն է, որ Աչաջրի, Ռևազլուի, Գետաշենի, Ջողազի, Կույբիշևի և այլ կոլտնտեսությունների այգիները լիարժեք չեն, որը խիստ բացասաբար է անդրադառնում բերքատվության վրա։ Այդ բացը վերացնելու համար կոլտնտեսությունները մեծ աշխատանք պետք է կատարեն խաղողի այգիները լիարժեք դարձնելու ուղղությամբ։

Այգեգործության զարգացման գործում վճռական նշանակություն ունի ոռոգելի տարածությունների ընդարձակումը և եղած ջրային հնարավորությունների լրիվ օգտագործումը։ Պետք է նշել, որ կոլտնտեսությունները շատ քիչ են կարողանում օգտվել շրջանի տերիտորիայով անցնող Աղստեֆ գետից։ Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրությունը սկսած 1934 թվականից կառուցում է խաշթառակից Լալի տանող ջրանցքը (44 կիլոմետր երկարությամբ), որը պետք է ոռոգի 1052 հեկտար տարածություն։ Սակայն մինչև այժմ աշխատանք է կատարված միայն 18 կիլոմետրի վրա և ընդամենը ոռոգվում է 180 հեկտար տարածություն։

ՀԿՊ Իջևանի շրջանային կոմիտեն և շրջանային Սովետի գործկոմը մի քանի անգամ հարց են հարուցել ռեսպուբլիկայի Ջրային տնտեսության մինիստրության առաջ՝ Աղստեֆ գետի վրա Ծուռ կամուրջի և Ուզունթալայի փոտի մոտ կառուցել ջրհան կայաններ, որոնցով հնարավորություն կստեղծվի ոռոգելի դարձնել Աչաջրի, Ուզունթալայի, Սևքարի, Սարիգյուղի կոլտնտեսությունների հողային մեծ տարածություններ և դրանք օգտագործել այգեգործության համար։ Սակայն մինիստրության ղեկավար ընկերները միշտ պատճառաբանում էին, որ տեղի էլեկտրաէներգիայի պակասության պատճառով հնարավոր չէ ձեռնարկել ջրհան կայանների կառուցումը։ Բարեբախտաբար այժմ սկսված են Մինգեչաուրգէսից Աղստաֆա—Իջևան էլեկտրական բարձր լարման գծի անցկացման գործնական աշխատանքները։ Մնում է հուսալ, որ

*Ջրային տնտեսության մինիստրությունը միջոցներ կձեռնարկի արագացնելու Խաշթառակ—Լալի ջրանցքի և ջրհան կայանների կառուցման աշխատանքները։*

*Պետք է նշել նաև այն, որ շատ կոլտնտեսություններում անբավարար են օգտագործվում եղած ջրային հնարավորությունները, ժամանակին կարգի չեն բերվում ջրատար առուները, չեն կուտակվում փարնանային անձրևաջրերը։*

*Այգիների ընդարձակման և բերքատվության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի ճիշտ կազմակերպումը։ Մինչդեռ առանձին կոլտնտեսությունների ղեկավարներ այգեգործությունը համարելով շատ թեթև գործ, այգեգործության բրիգադները համալրում են ծեր, հաշմանդամ մարդկանցով, որի հետևանքով էլ ստացվում է պակաս արդյունք։ Հենց այդ է պատճառներից մեկը, որ Գետաշենի կոլտնտեսությունը խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից 1957 թվականին նախատեսված 35 ցենտների դիմաց ստացավ 4,3 ցենտներ բերք և յուրաքանչյուր ցենտների վրա ծախսեց 42 աշխօր, 82 ռ. դրամ։ Նույն կոլտնտեսությունը պտղատու այգիների յուրաքանչյուր հեկտարի մշակության վրա ծախսել է 121 աշխօր և 150 ռ. դրամ, բայց գրեթե ոչ մի արդյունք չի ստացել։ Դրությունը բարվոք չէ նաև Ջողազի, Ներքին Աղդանի, Լալիի կոլտնտեսություններում, թեև դրանք ավելի լայն հնարավորություններ ունեն այգեգործությունը զարգացնելու և բարձր բերքատվության հասնելու։*

*Նոր տնկվող այգու համար կարևոր նշանակություն ունի հողի ընտրությունը։ Պետք է աշխատել ընտրել հումուսով հարուստ հողեր և ամեն կերպ խուսափել փոքր կտորներով այգուց։ Պետք է հաշվի առնել այգու հետագա ոռոգման հնարավորությունները։ Անհրաժեշտ է վաղօրոք կատարել խոր վար, իսկ անջրդի պայմաններում՝ 70 սմ խորությամբ հողը շուռ տալ, որպեսզի ավելի շատ խոնավություն կուտակվի։*

*Ներկայումս, երբ ավելի լայն հնարավորություններ են ստեղծված այգեգործության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու համար, կարելի է ու պետք է վճռական քայլեր կատարել իջեցնելու խաղողի ու մրգի ինքնարժեքը։ Այսպես, օրինակ, նախկինում մեկ հեկտար այգի տնկելու համար հողի հիմնաշրջում կատարելու համար պահանջվում էր 400—500 մարդ-օր, իսկ ներկայումս «Ս—80» տրակտորով մեկ օրում կատարվում է այգու տակ դրվող 1,5—2 հեկտար հողի հիմնաշրջում։ Անցյալում խաղողի վազերը բարձրացվում էին փայտե ցցերի վրա, որը տնտեսությանը մեծ ծախսեր էր պատճառում, խիստ դժվարություններ էր ստեղծում մեքենաների օգտագործման համար ու մեծ չափով իջեցնում էր բերքատվությունը։ Այժմ լարային սիստեմի կիրառման շնորհիվ «ԿԴ—35» տրակտորով հնարավոր է մեկ օրում փխրեցնել 3 հեկտար խաղողի այգու միջշարային տարածություն։*

*Հանրային այգեգործությունը զարգացնելու հետ միասին պետք է կոլտնտեսականներին և բանվոր ծառայողներին խորհուրդ տալ, որ իրենց տնամերձ հողերում տնկեն խաղողի որթեր ու պտղատու ծառեր, որն ավելի եկամտաբեր է։ Այս ուղղությամբ մեծ անելիքներ ունեն տեղական Սովետները։*

*Խոսելով այգեգործության զարգացման մասին, անհրաժեշտ է կանգ առնել նաև մի հարցի վրա։ Շրջանում ամեն տարի ստացվում է մեծ քանակությամբ միրգ, սակայն տեղում վերամշակող գործարան չունենալու պատճառով դրա մի զգալի մասը կորուստի է մատնվում։ Վերադաս օրգանները պետք է մտածեն Իջևանում պահածոների գործարան կառուցելու մասին։*



*Կարևոր նշանակություն ունի բնակչության մեջ գիտության և այգեգործության առաջավոր փորձի պրոպագանդումը։ Այդ ուղղությամբ խրախուսելի աշխատանք է կատարում Հայկական ՍՍՌ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը։ Անցյալ տարի Երևանի Գյուղատնտեսական և այգեգործական — պտղաբուծական ինստիտուտների դասախոսների ուժերով ընկերության վարչությունը երկու անգամ կազմակերպել է գիտական կոնֆերանս, որին մասնակցում էին կոլտնտեսությունների նախագահները, պարտիական կազմակերպությունների քարտուղարները, գյուղատնտեսության մասնագետները և շրջանի մյուս ղեկավար աշխատողները։ Վերջերս տեղի ունեցավ այդպիսի գիտաարտադրական կոնֆերանս, որտեղ զեկուցումներ լսվեցին «Այգեգործության ագրոտեխնիկան», «Այգիների վնասատուները և պայքար նրանց դեմ», «Պտղատու այգիների բերքատվության բարձրացման ուղիները» թեմաների շուրջը։ Զեկուցումներով հանդես եկան բիոլոգիական գիտությունների թեկնածուներ Ռ. Երգեսյանը, Ց. Պետրոսյանը և Գ. Եսայանը։*

*Կոլտնտեսությունների շատ ղեկավարների մոտ մինչև վերջերս էլ կար այն կարծիքը, որ եթե պտղատու այգին մի տարի բերք է տալիս, ապա անպայման մյուս տարին չի պտղաբերում։ Գիտաարտադրական կոնֆերանսում Ռ. Երգեսյանը և Գ. Եսայանը համոզիչ փաստերով ապացուցեցին, որ ագրոտեխնիկայի լավագույն կիրառման շնորհիվ հնարավոր է յուրաքանչյուր տարի հասնել բարձր բերքատվության։*

*Իջևանի շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունները, կոլտնտեսությունների վարչությունները և սովետական տնտեսությունների ղեկավարները մոբիլիզացնելով բոլոր աշխատավորների եռանդն ու կարողությունը, կյանքում կկենսագործեն պարտիայի ու կառավարության առաջադրանքներն այգեգործությունը զարգացնելու վերաբերյալ։*

Ս. ՃԱՂԱՐՅԱՆ

*Իրոք, միայն Սովետական կառավարությունն էր, որ իր հուժկու ձայնը բարձրացրեց ընդդեմ թուրքական բարբարոսության, պաշտպանեց հազարավոր հայ գաղթականների: Հայ ժողովրդի բախտի նկատմամբ, նրա ազգային իսկական վերածննդի համար Ռուսաստանի Սովետական կառավարության հոգատարության վառ արտահայտությունն է հանդիսանում Մեծ Հոկտեմբերի մեծագույն փաստաթղթերից մեկը՝ «Թուրքահայաստանի» մասին դեկրետը:*

*Վերլուծելով Սովետական Ռուսաստանի կողմից Հայաստանի բանվորներին ու գյուղացիներին ցույց տրված անշահախնդիր օգնության բազմաթիվ փաստերը, հեղինակը հանգել է միանգամայն ճիշտ եզրակացության. «Առանց ռուս մեծ ժողովրդի, քաջարի Կարմիր Բանակի և Սովետական կառավարության օգնության անհնարին կլիներ դաշնակների լծից ու օտարերկրյա հարստահարումից հայ ժողովրդի ազատագրումը: Հենց ռուս բանվորներն ու գյուղացիները փառապանծ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ազատություն ու խաղաղություն բերեցին Հայաստանին, բազմաչարչար հայ ժողովրդին փրկելով ֆիզիկական բնաջնջումից» (էջ 227):*

*Լինելով հաջողված ուսումնասիրություն, Գ. Գալոյանի գիրքն ունի և թերի կողմեր:*

*Ինչպես հայտնի է, Անդրկովկասի բանվորների ու գյուղացիների ռևոլյուցիոն ընդվզումները, Սովետական իշխանության հաղթանակի համար նրանց պայքարը անխզելիորեն կապված են միմյանց հետ: Այդ հատկապես ակնառու է դառնում Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո, 1917-1921 թվականներին, երբ հայ, վրացի և ադրբեջանցի աշխատավորները միահամուռ ուժերով ջանում էին իրենց ուսերից թոթափել օտարերկրյա իմպերիալիզմի և սեփական ազգային կոնտրռևոլյուցիոն բուրժուազիայի արդահատելի լուծը: Ճիշտ է վարվել հեղինակը, երբ հայ ժողովրդի պայքարի դրվագները տվել է այդ միասնության մեջ: Սակայն, մեր կարծիքով, աշխատության մեջ պահանջվածից ավելի են անդրկովկասյան աշխատավորների համատեղ պայքարի մանրամասները, այն նյութերը, որոնք անմիջականորեն քիչ են առնչվում մեր ժողովրդի պատմության հետ:*

*Գրքում ընդամենը կես էջ է հատկացված «Թուրքահայաստանի» մասին Սովետական Ռուսաստանի կառավարության 1917 թվականի դեկտեմբերի 31-ի դեկրետին, այնինչ անհրաժեշտ էր հանգամանորեն բնորոշել այդ դեկրետի էությունն ու պատմական նշանակությունը, կատարել անհրաժեշտ վերլուծություններ ու հետևություններ, ցույց տալ այն պատճառները, որոնք հնարավորություն չտվեցին իրականացնելու այդ դեկրետը:*

*Աշխատության մեջ նկատվում են շարադրանքի որոշ ձգձգվածություն, կրկնություններ, կան և առանձին անհաջող ձևակերպումներ. այսպես, օրինակ, 14-րդ էջում, ուր խոսվում է ցարական կառավարության 1912 թվականի դեկտեմբերի 20-ի ագրարային օրենքի մասին, կարդում ենք, որ այդ օրենքը «չլուծեց հողային հարցը Հայաստանում»: Այդ ձևակերպումից ընթերցողը կարող է ստանալ այն սխալ տպավորությունը, որ ինքնակալության պայմաններում, ցարական օրենքով հնարավոր էր լուծել հողային հարցը: Ահա մի այլ օրինակ. 13-րդ էջում ասված է. «որքան էլ դաշնակները ձգտում էին Հայաստանի աշխատավորների գիտակցությունը թունավորել բուրժուական շովինիզմի թույնով, հասարակության զարգացման տնտեսական օրենքները դաշնակցական ամենատեսակ պրոպագանդայից ուժեղ գտնվեցին»: Անհաջող ձևակերպման հետևանքով այստեղ չի տրված բոլշևիկների կողմից մղվող ինտերնացիոնալիզմի պրոպագանդայի կարևորությունը, որը բուրժուական նացիոնալիզմի դեմ մղվող պայքարում եղել է և մնում է ամենահատու զենքը:*

*Չնայած վերոհիշյալ և մի շարք այլ թերությունների, ինչպես նշեցինք, Գ. Գալոյանի «Պայքար Սովետական իշխանության համար Հայաստանում» աշխատությունը արժեքավոր ուսումնասիրություն է: Հեղինակը հեշտությամբ կարող է շտկել նշված թերությունները: Ցանկալի է, որ այդ աշխատությունը հրատարակվի նաև հայերեն:*

*Ս. ՀԱԿՈԲՅԱՆ*

## ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

### ՀԱՐՑ

*Գյուղում կա միայն արտադրական պարտիական կազմակերպություն, որի մեջ են մտնում նաև դպրոցում աշխատող կոմունիստ ուսուցիչները: Դպրոցի ուսուցիչներից մեկը ցանկություն ունի ընդունվել ՍՄԿՊ շարքերը: Բայց*



*նրան երաշխավորելու համար դպրոցում չկան համապատասխան պարտիական ստաժ ունեցող կոմունիստներ: Կարո՞ղ են արդյոք կոլտնտեսությունում աշխատող կոմունիստները այդ ուսուցչին երաշխավորել պարտիայի մեջ ընդունվելու համար:*

Ա. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
ՀԿՊ Թալինի շրջկոմի հրահանգիչ

### ՊԱՏԱՍԽԱՆ

*ՍՄԿՊ Կանոնադրության համաձայն պարտիայի մեջ ընդունվողները ներկայացնում են պարտիայի 3 անդամների երաշխավորություն, որոնք ունեն առնվազն 3 տարվա պարտիական ստաժ և նրանց ճանաչում են ոչ պակաս քան մեկ տարվա համատեղ աշխատանքում: Եթե ուսուցիչը տվյալ գյուղում աշխատում է մեկ տարուց ոչ պակաս և պարտիական կազմակերպության հանձնարարությամբ ակտիվորեն մասնակցում է գյուղի քաղաքական և հասարակական կյանքին, իր մանկավարժական աշխատանքի բնույթով ամենօրյա շփման մեջ է գտնվում գյուղի աշխատավորների հետ, ապա նրան լավ են ճանաչում: Հետևաբար, կոլտնտեսությունում աշխատող կոմունիստներին իրավունք է վերապահվում երաշխավորելու պարտիայի մեջ ընդունվելու համար դիմում տվող ուսուցչին:*

### ՀԱՐՑ

*Նոր-Բայազետի շրջանի Հացառատ գյուղի կոլտնտեսության բազայի վրա 1956 թվականից կազմակերպվել է կարտոֆիլի էլիտային (սերմնաբուծական) տնտեսություն: Կարտոֆիլի սերմն արտադրում և պետությանն է հանձնում կոլտնտեսությունը: Տնտեսության վարիչը նշանակված է Լենինականի սելեկցիոն կայանի կողմից և աշխատավարձ է ստանում այնտեղից, սակայն իր ամբողջ աշխատանքով կապված է կոլտնտեսության արտադրության հետ: Նա դիմել է կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությանը՝ ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունվելու համար: Խնդրում ենք պատասխանել՝ կարելի՞ է ընկերոջ դիմումը քննել մեր պարտիական կազմակերպության ժողովում:*

Ե. ԴԱԲԱՂՅԱՆ
Հացառատ գյուղի կոլտնտեսության սկզբնական
պարտիական կազմակերպության քարտուղար

### ՊԱՏԱՍԽԱՆ

*ՍՄԿՊ շարքերն ընդունվելու համար դիմողի հարցը քննելիս պետք է հաշվի առնել կոնկրետ պայմանները: Կարտոֆիլի էլիտային տնտեսության վարիչն իր գործունեությամբ առավելապես կապված է Հացառատի կոլտընտեսության արտադրության հետ: Այդ գյուղի կոմունիստները աշխատանքում նրան ավելի լավ են ճանաչում, քան Լենինականի սելեկցիոն կայանի կոմունիստները: Ուստի նպատակահարմար է, որ ՍՄԿՊ շարքերն ընդունվելու մասին նրա դիմումը քննվի տվյալ կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության ժողովում: Աշխատավարձի ստացումը տվյալ դեպքում կապ չունի պարտիայի մեջ նրա ընդունելության հարցի հետ:*

### ՀԱՐՑ

*Ես ՍՄԿՊ անդամության թեկնածու եմ ընդունվել Սովետական Բանակում: Երբ լրացավ իմ թեկնածուական ստաժի ժամանակը, բոլոր փաստա-*

*թղթերը նախապատրաստեցի ՍՄԿՊ անդամ ընդունվելու համար։ Իմ դիմումը քննվեց զորամասի պարտիական կազմակերպության բյուրոյում, որը որոշեց հարցը տեղափոխել պարտիական կազմակերպության ընդհանուր ժողով, տալով դրական կարծիք։ Սակայն, մինչև դիմումիս քննելը ես զորացրվեցի։ Միավորման քաղբաժինը հաստատեց ինձ երաշխավորած բոլոր կոմունիստների երաշխավորագրերը, որոնք մյուս փաստաթղթերի հետ միասին զորացրվելուց հետո ներկայացրի Ստեփանավանի շրջանի Գյուլագարակ գյուղի մեր կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությանը։ Սակայն պարտիական ժողովը ՍՄԿՊ անդամ ընդունվելու իմ դիմումի քննարկումը մեկ տարով հետաձգեց, պատճառաբանելով, որ այդ ժամանակն անհրաժեշտ է ինձ ճանաչելու համար։ Խնդրում եմ պատասխանել, որքանո՞վ ճիշտ է այդ պատճառաբանությունը։*

ՍՄԿՊ անդամության թեկնածու Վ. ԹՈՐՈՍՅԱՆ

ՊԱՏԱՍԽԱՆ

*Գյուլագարակի պարտկազմակերպության որոշումը՝ հետաձգել ընկ. Վ. Թորոսյանին պարտիայի անդամ ընդունելը, զուրկ է լուրջ հիմքից, որովհետև ընկ. Թորոսյանը մինչև բանակ կանչվելը ապրել և աշխատել է նույն գյուղում, հետևաբար գյուղի ընկերները լավ գիտեն նրան։ Բանակից բերված փաստաթղթերը խոսում են նրա դրական վարքի և գործունեության օգտին։ Ուստի այդ պատճառաբանությամբ նրա դիմումի քննարկման հետաձգումը հիմնավոր չէ։*

---

ՀԱՐԳԵԼԻ ԲԱԺԱՆՈՐԴ

*Եթե Դուք մեր ամսագրին բաժանորդագրված եք վեց ամսով, հիշեցնք, որ անհրաժեշտ է մինչև հունիսի 20-ը վերականգնել Ձեր բաժանորդագրությունը՝ գալիք կիսամյակի համար։*

---

Ի ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ ԵՎ ԹՂԹԱԿԻՑՆԵՐԻՆ

*Խնդրվում է այսուհետև հոդվածները խմբագրություն ուղարկել մեքենագրված։ Շրջաններից թղթակցությունները ու նամակները կարելի է ուղարկել նաև ձեռագիր։*

*Հոդվածների, թղթակցությունների և նամակների հեղինակները պետք է գրեն իրենց անունը, հայրանունը, ազգանունը և ճիշտ հասցեն։*

*Որպես կանոն՝ ստացված հոդվածներն ու թղթակցությունները հեղինակներին չեն վերադարձվում։*

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրություն

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՀՈՎՀ. Մ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ԱՐ. Ն., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Վ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.:

*ՎՖ 01889* *Պատվեր 1369* *Տիրաժ 6360*

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: *Ստորագրված է տպագրության 16/V 1958 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։*

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՀԱՅԳՐՔԻ ՈՒ ՀԱՅԿՈՈՊԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԳՐՔԵՐԸ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—«Պարտիական կազմակերպություն և պարտիական գրականություն», *Հայպետհրատ, 12 էջ, գինը 30 կոպ.։*

Ի. ՍՏԱԼԻՆ—«Պարտիան», *Հայպետհրատ, 20 էջ, գինը 20 կոպ.։*

«ՀԻՆ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ»—*Ժողովածու, գիրք առաջին, Հայպետհրատ, 640 էջ, գինը 9 ռ.։*

«ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ՀՈՒՇԱՏԵՏՐ. 1958 Թ.»—*Հայպետհրատ, 376 էջ, գինը 3 ռ. 15 կոպ.։*

Վ. Պ. ՄԱՐՏԻՆՈՎ—«Սովետական Հայաստանի էներգետիկայի զարգացման ուղիները», *Հայպետհրատ, 88 էջ, գինը 1 ռ. 40 կոպ.։*

Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ—«Հայաստանի տեխնիկ արդյունաբերության ներարտադրական ռեզերվների օգտագործումը», *Հայպետհրատ, 100 էջ, գինը 1 ռ.։*

Վ. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ, Ս. ԹԱՄԱԶՅԱՆ—«Աշխատանքի արտադրողականության բարձրացման ռեզերվները Երևանի ձեռնարկություններում», *Հայպետհրատ, 112 էջ, գինը 1 ռ. 15 կոպ.։*

Ս. ԿԱՐԱԳՅՈԶՅԱՆ—«Բամբակագործություն», *Հայպետհրատ, 136 էջ, գինը 3 ռ. 30 կոպ.։*

Ն. ՄԱԼԱԹՅԱՆ—«Գյուղատնտեսական կենդանիների կերակրումը», *396 էջ, գինը 7 ռ. 65 կոպ.։*

Ս. ՄԱՏՈՅԱՆ—«Կարտոֆիլի մշակության մեքենայացումը Կալինինոյի շրջանում», *Հայպետհրատ, 36 էջ, գինը 35 կոպ.։*

Վ. ԿԻՍԵԼՅՈՎԱ—«Մանկական խոհանոց», *Հայպետհրատ, 200 էջ, գինը 3 ռ. 80 կոպ.։*

Մ. ՄԿՐՅԱՆ—«Էջեր հայ փիլիսոփայության պատմությունից», *Հայպետհրատ, 240 էջ, գինը 6 ռ. 30 կոպ.։*

Հ. ՄԱՂԱՔՅԱՆ—«Մետաղային հանքավայրեր», *Գիտ. ակադ. հրատ., 598 էջ, գինը 11 ռ. 50 կոպ.։*

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ—«Երևանի խանությունը 18-րդ դարի վերջում (1780—1800)», *Գիտ. ակադ. հրատ., գինը 7 ռ. 20 կոպ.։*

Մ. ՄԱՐԳԱՐՅԱՆ—«Լիրիկական լուսաբաց», *Հայպետհրատ, 332 էջ, գինը 5 ռ. 20 կոպ.։*

Դ. ԳՐԱՆԻՆ—«Որոնողներ», *Հայպետհրատ, 576 էջ, գինը 9 ռ. 55 կոպ.։*

Բ. ՎԵՐԴՅԱՆ—«Ինչպես է գալիս երջանկությունը», *Հայպետհրատ, 420 էջ, գինը 7 ռ. 80 կոպ.։*

Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆ—«Հովհաննես Հովհաննիսյան», *Հայպետհրատ, 296 էջ, գինը 6 ռ. 85 կոպ.։*

Վ. ԹՈԹՈՎԵՆՑ—«Երկեր», *Հայպետհրատ, 680 էջ, գինը 11 ռ. 35 կոպ.։*